

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

# *Содержание*







# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՏԱԳԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՄԱՐ

Մեր հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները և շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսները, որոնք անցան քաղաքական-գաղափարական բարձր մակարդակով, հանրագումարի բերին հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի արդյունքները և նշեցին առաջիկա անելիքները:

Հաշվետու ժամանակաշրջանում կգալիորեն բարելավվել է կուսկազմակերպությունների գործունեությունը, ամրապնդվել է նրանց գործարար կապը լայն մասսաների հետ, աշխուժացել է ներկուսակցական աշխատանքը: Կուսկազմակերպություններն իրենց ուշադրությունը հիմնականում կենտրոնացրել են պետական և տնտեսական կարևորագույն խնդիրների լուծման վրա:

Հաշվետու-ընտրական ժողովները և կուսակցական կոնֆերանսները զուգադիպեցին մեր ժողովրդի կյանքում նշանավոր իրադարձությունների հետ: Սովետական բազմազգ ժողովուրդը, մեր կուսակցությունը մեծ շուքով նախապատրաստեցին ու անցկացրին կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակը: Հայ ժողովուրդը մեծ հանդիսավորությամբ տոնեց նաև իր սոցիալիստական վերածննդի և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակը: 1970 թվականը կրկնակի հոբելյանական տարի էր հայ ժողովրդի կյանքում և նա աշխատանքային խիզախումներով նշանավորեց այդ տարին:

Հայաստանի կուսակցական կազմակերպություններն իրենց գործունեության ընթացքում ուղեցույց են ունեցել ՍՄԿԿ XXIII համագումարի և կուսակցության Կենտկոմի՝ դրան հաջորդած պլենումների պատմական որոշումները: Հետևողականորեն կենսագործելով այդ որոշումները՝ նրանք լուրջ հաջողությունների են հասել ինչպես արդյունաբերության և գյուղատնտեսության, այնպես էլ գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարեզներում:

Սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և կուսակցական շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում ելույթ ունեցող բոլոր կոմունիստները բարձր գնահատեցին այն հսկայական ջանքերը, որոնք Հայաստանի կուսակցական կազմակերպությունները գործադրել են ժողովրդական տնտեսության ութերորդ հնգամյա պլանի կատարումն ու գերակատարումն ապահովելու համար: Հնգամյակի տարիներին հանրապետությունում արդյունաբերական արտադրության ծավալն աճեց 1,8 անգամ: Հատ-

կապես ուժեղ թափով վարգացան արդյունաբերության այնպիսի կարևոր ճյու-
ղեր, ինչպիսիք են՝ մետալուրգիական և քիմիական արդյունաբերությունը, մե-
քենաշինությունը, էլեկտրոնիկան և ռադիոտեխնիկան, լայն սպառման առար-
կաների արտադրությունը:

Հանրապետության գյուղատնտեսության բնագավառի աշխատողները
պատվով լուծեցին իրենց առջև ծառացած բարդ խնդիրները: Կոլտնտեսու-
թյունները տնտեսապես և կազմակերպչորեն է՛լ ավելի ամրապնդվեցին. ըն-
դարձակեցին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները,
մշակության ագրոտեխնիկայի բարելավմամբ բարձրացրին հեկտարի միջին
բերքատվությունը: Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների
աշխատավորները հնգամյակի ավարտական տարում աճեցրին հացահատիկի,
խաղողի, պտուղների, կարտոֆիլի, բանջարեղենի և բոստանային կուլտուրա-
ների ամենաբարձր բերքը: Նրանք որոշ հաջողության հասան նաև անասնա-
բուծական մթերքների արտադրության ավելացման գործում: Արտադրության
աճին համապատասխան կգալիորեն բարձրացավ գյուղի աշխատավորների
բարեկեցությունը:

Սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովնե-
րը և շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսները զուգադիպե-
ցին ՍՄԿԿ XXIV համագումարի նախապատրաստման շրջանի հետ: Ինչպես
ՍՍՀ Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում ամենուրեք լայն մրր-
ցություն է ծավալվել կուսակցության ու ժողովրդի կյանքի այդ կարևոր իրա-
դարձությունն արժանավայել գործերով դիմավորելու համար: Գործարաննե-
րում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում քաղա-
քական ու աշխատանքային մեծ վերելք է տիրում: Աճում է մասսաների ակ-
տիվությունը, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ նրանք պայքա-
րում են ՍՄԿԿ XXIV համագումարի պատվին ստանձնած պարտավորություննե-
րը բարձր ցուցանիշներով կատարելու համար: Կուսկազմակերպությունների
հաշվետու-ընտրական ժողովները և շրջանային ու քաղաքային կոնֆերանսնե-
րը հանրագումարի բերեցին այդ մրցության նախնական արդյունքները:

Կամոյի, Վարդենիսի, Ղափանի, Արարատի շրջանային կուսակցական
կոնֆերանսներում պեկուցողները և մտքերի փոխանակությանը մասնակցած
պատգամավորները նշում էին, որ անցած ժամանակաշրջանում կուսկազ-
մակերպությունները դարձել են առավել մարտունակ, մշտապես խորամուխ
են լինում արտադրական հարցերի մեջ, օգնում կոմունիստների նախաձեռնու-
թյան կարգացմանն ու ակտիվության բարձրացմանը: Այդ ամենի շնորհիվ
ինչպես կոմունիստները, այնպես էլ անկուսակցականները մեծ պատասխա-
նատվությամբ են վերաբերվում կուսակցության դիրեկտիվների ու որոշումների
կատարմանը: Տնտեսական կյանքի բոլոր ոլորտներում կուսակցական կազմա-
կերպությունների ազդեցության ուժեղացմամբ շրջանային ու քաղաքային կո-
միտեներն ապահովել են հանրային արտադրության աննախընթաց աճը,
հնգամյակի պլանային առաջադրանքների պատվով կատարումը:

Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Թալինի շրջանների կոլտնտեսային և սով-
խոզային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում
գործնական խոսակցություն ծավալվեց կադրերի ճիշտ ընտրության ու դաս-
տիարակության, կոմունիստների ակտիվության ու ավանգարդային դերի



բարձրացման, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի, ներ-
կուսակցական կյանքի աշխուժացման շուրջ:

Երևանի, Լենինականի և մի շարք շրջանների արտադրական սկզբնական
կուսկազմակերպություններում մտքերի փոխանակությանը մասնակցած ըն-
կերներն առաջարկեցին բարձրացնել պահանջկոտությունը հատկապես այն
կոմունիստների նկատմամբ, որոնք արտադրության մեջ չեն ապահովում ի-
րենց ավանգարդային դերը, հաճախ փորձում են խույս տալ կուսակցության
կանոնադրական պահանջների կատարումից, թույլ են տալիս կոմունիստին ոչ
վայել արարքներ:

Առանձին արտադրական կուսակցական կազմակերպությունների հաշ-
վետու-ընտրական ժողովներում քննադատական խոսք ասվեց կուսբյուրոների
ու կուսկոմիտեների հասցեին այն կապակցությամբ, որ նրանք անբավարար
են զբաղվում որոշումների կատարման ստուգմամբ, թույլ են վերահսկում ադ-
մինիստրացիայի գործունեությանը: Ստուգումը վերևից, երբ ղեկավարներն են
ստուգում ենթականերին, վերահսկողության փորձված մեթոդ է, կուսակցու-
թյան ու կառավարության որոշումների կատարումն ապահովելու անհրաժեշտ
միջոց: Սակայն ներկուսակցական կյանքում դրան պետք է զուգակցվի նաև
ներքևից կատարվող ստուգումը, երբ մասսաներն են վերահսկում ղեկավար-
ներին: Հենց այստեղ խոշոր դեր ունեն կատարելու կուսկազմակերպություն-
ների ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովները և
ժողովրդական վերահսկողության խմբերն ու կետերը:

Սկզբնական կուսկազմակերպություններն իրենց ուշադրության կենտրո-
նում պետք է պահեն որոշումների կատարման ստուգումը: Ընդունված ամեն
մի որոշման կատարման ընթացքի ու արդյունքների մասին պետք է տեղյակ
պահել տվյալ որոշման օգտին քվեարկած կոմունիստներին:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային ու քա-
ղաքային կոնֆերանսներում կոմունիստները, պատգամավորները մի շարք
կուսբյուրոների ու շրջկոմների քննադատեցին այն բանի համար, որ նրանք
պահանջկոտություն չեն ցուցաբերում գործարար ու քաղաքական հատկանիշ-
ներից զուրկ ղեկավար կադրերի նկատմամբ, հաշտվում են նրանց ղեկավա-
րած օբյեկտներում գործերի ձախողման հետ, հանդես բերում ավելորդ ներո-
ղամտություն: Մեր կուսակցությունը դատապարտել ու դատապարտում է աշ-
խատանքի նման արատավոր ոճը, որից որքան շուտ ազատվեն, այնքան շատ
կշահի ընդհանուր գործը, կադրերը կդաստիարակվեն բարձր պատասխանա-
տվության ոգով:

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում նշված է, որ կոմունիստական
շինարարության հետագա հաջողությունները մեծապես կախված են աշխա-
տավորության շրջանում կուսկազմակերպությունների ծավալած գաղափարա-
կան ու քաղաքական աշխատանքի թափից ու մակարդակից: Կուսկազմակերպու-
թյունների հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային ու քաղաքային
կոնֆերանսներում զեկուցողները և մտքերի փոխանակությանը մասնակցած
ընկերները նշեցին, որ հաշվետու ժամանակաշրջանում շոշափելի աշխատանք
է կատարվել կոմունիստների գաղափարական պատրաստականության բարձ-
րացման, նրանց մարքս-լենինյան տեսությամբ զինելու ասպարեզում: Ներկա
պայմաններում գաղափարական աշխատանքը կազմակերպվում է ավելի ար-
դյունավետ, նոր ձևերով ու մեթոդներով: Կուսկազմակերպություններն առանձ-
նակի ուշադրություն են նվիրում մասսաների շրջանում տարվող գաղափա-

րական-դաստիարակչական աշխատանքին: Նշանակալիորեն բարելավվել է քաղաքական ինֆորմացիայի բովանդակությունը: Աշխատավորների գաղափարական դաստիարակության գործում ներգրավվել են մեծ թվով պատրաստված ու կարող կոմունիստներ: Կուսկազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել ագիտկոլեկտիվների գործունեությամբ:

Սկզբնական կուսկազմակերպությունները և շրջկոմ-քաղկոմները հաճախակի են անդրադառնում գաղափարական հարցերին, ակտիվ միջամտում այդ բնագավառում տեղ գտած թերությունների բացահայտմանն ու վերացմանը:

Շրջանային կուսակցական կոնֆերանսներում իրավացիորեն քննադատվեցին առանձին կուսկազմակերպություններ, որոնք տնտեսական ու սովետական պատասխանատու աշխատողների մի մասին չեն ընդգրկում քաղաքական ուսուցման ցանցում, վատ են օգտագործում նրանց ուժերը պրոպագանդիստական աշխատանքում: Կոմունիստներն իրենց ելույթներում կուսակցական ղեկավար մարմիններից պահանջում էին առավել ուշադրություն նվիրել գաղափարական աշխատանքի հարցերին, կոմունիստների և անկուսակցականների դաստիարակությունը մշտապես պահել ուշադրության կենտրոնում:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում կոմունիստները մտքեր փոխանակեցին ՍՄԿԿ շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի շուրջ: Հաշվետու ժամանակաշրջանում զգալի դրական գործ է կատարվել կուսակցության շարքերն առաջավոր մարդկանցով համալրելու ասպարեզում: ՍՄԿԿ նոր անդամ-թեկնածուներն ընդգրկված են արդյունաբերության, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության ոլորտում և անմիջականորեն զբաղվում են նյութական բարիքների ու արժեքների ստեղծմամբ: Կուսկազմակերպությունները պլանավորված քաղաքական և մասսայական աշխատանք են տանում առաջավոր բանվորների և կոլտնտեսականների հետ, նրանց հաշվին համալրում ՍՄԿԿ շարքերը: 1970 թ. հանրապետությունում կուսշարքերն ընդունված թեկնածուների գերակշռող մեծամասնությունը բանվորներ և կոլտնտեսականներ են: Նրանք կազմում են բոլոր ընդունվածների 62,2 տոկոսը: Երիտասարդ կոմունիստները մեծ բարեխղճությամբ են մասնակցում կուսակցական որոշումների կենսագործմանը, արդարացնում այն մեծ վստահությունը, որ ցուցաբերում են կուսկազմակերպությունները նրանց նկատմամբ:

Հարկ է, սակայն, ընդունել, որ այդ կարևոր աշխատանքում կան և լուրջ թերություններ, որոնք հետևանք են առանձին սկզբնական կուսկազմակերպությունների կողմից ցուցաբերվող ոչ պատասխանատու վերաբերմունքի: Բիչ չեն դեպքերը, երբ նոր ընդունված կուսակցության անդամության թեկնածուին, դեռ թեկնածուական ստաժի ժամկետը չլրացած, կանայան հանցանքի կամ կուսակցության կանոնադրական պահանջների խախտման պատճառով հեռացնում են կուսշարքերից: Կուսկազմակերպությունների որոշ մասն անբավարար աշխատանք է տանում երիտասարդ կոմունիստների և ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ: Դրա հետևանքով կուսակցության շարքերը համալրած թեկնածուների մի զգալի մասի ստաժի ժամկետն անցել է: 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ ժամկետանց թեկնածուների թիվը հասնում է 674 մարդու կամ 17,5 տոկոսի: Այս փաստը ցույց է տալիս, որ հանրապետության առանձին սկզբնական կուսկազմակերպություններում անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ներկուսակցական կյանքի այդ կարևոր բնագավառին, իսկ առանձին կազմակերպություններում պարզապես աչքաթող է արված կուսակցության ան-



դամության թեկնածուների գաղափարական-քաղաքական դաստիարակությունը, նրանք ընդգրկված չեն կուսակցական-հասարակական ակտիվ գործունեության մեջ:

Երիտասարդ կոմունիստների, կուսակցության անդամության թեկնածուների դաստիարակությունը կարևորագույն տեղ պետք է գրավի սկզբնական կուսկազմակերպությունների ամբողջ գործունեության մեջ, կազմի ներկուսակցական աշխատանքի անբաժանելի մասը: Այդ գործում մեծ անելիքներ ունեն կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեները: Նրանց խնդիրն է՝ անհրաժեշտ վերահսկողություն սահմանել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության նկատմամբ, օգնել նրանց՝ պատշաճ բարձրության վրա դնելու ներկուսակցական աշխատանքը, բարելավելու երիտասարդ կոմունիստների գաղափարական դաստիարակությունը:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում զեկուցողները և ելույթ ունեցողներն ընդգծում էին, որ վերջին տարիներին կուսկազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմները բարելավել են կոմերիտական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը, նպաստել նրանց գործունեության աշխուժացմանը, կոմերիտականների ու արտամիութենական երիտասարդության ակտիվության բարձրացմանը:

Կուսակցական ժողովներում կոմունիստները վարչական մարմիններին քննադատել են սոցիալիստական կարգերին միանգամայն խորթ բարքերի դեմ հարկ եղած պայքար չմղելու համար: Այդ պատճառով մի շարք օղակներում առանձին մարդկանց հաջողվում է անարգել հափշտակել սոցիալիստական սեփականությունը: Նման երևույթները խոշոր վնաս են հասցնում հատկապես մեր երիտասարդության դաստիարակության գործին: Նորընտիր կուսակցական մարմինների պարտքն է՝ ուժեղացնել պայքարը սոցիալիստական սեփականության պահպանման համար, վճռական պայքար մղել հանրային ունեցվածքին ձեռք մեկնողների դեմ, հանցագործին պատժել տալ սովետական օրենքի ուժով:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների և շրջկոմ-քաղկոմների կոնֆերանսների կարևոր խնդիրներից մեկը ղեկավար մարմինների՝ կուսբյուրոյի, կուսկոմիտեի, շրջանային ու քաղաքային կոմիտեի և նրանց քարտուղարների հաջող կազմի ընտրությունն է: Դրանով էլ պայմանավորված է կուսկազմակերպության և նրա ընտրովի մարմնի գործունեության արդյունավետությունը: Պետք է ասել, որ նկատելիորեն լավացել է կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմը: 4.589 քարտուղարներից 2.202-ը ունեն բարձրագույն, 1.797-ը՝ միջնակարգ կրթություն: Նրանց զգալի մասն ընտրվել է առաջին անգամ, ունի քաղաքական-գաղափարական բարձր պատրաստականություն:

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման շահերը հրամայաբար պահանջում են առավել մեծ ուշադրություն նվիրել քարտուղարների, նրանց տեղակալների ուսուցմանն ու դաստիարակությանը: Կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները պարտավոր են համբերատարությամբ և պլանավորված կարգով նրանց ուսուցանել կուսակցական ղեկավարման արվեստը, օգնել խորությամբ տիրապետելու հեղափոխական տեսությանը: Կուսակցական յուրաքանչյուր օղակի աշխատող պետք է լավ հասկանա իր գործի էությունն ու կարևորությունը, կարողանա զարգացնել կոմունիստների և աշխատավորության ակտիվությունն ու նախաձեռնությունը՝

կուսակցության ու կառավարության դիրեկտիվները և իրենց սեփական որոշումները հաջողությամբ կենսագործելու համար:

Կուսկազմակերպություններն ուժեղ են յուրաքանչյուր կոմունիստի ցուցաբերած գործարար ակտիվությամբ. ներկուսակցական կյանքում այդ ձեռք է բերվում կոմունիստներին կուսկազմակերպության գործունեությանը լայնորեն մասնակից դարձնելու, անցկացվող միջոցառումներին ներգրավելու միջոցով: Այդ բանն ավելի ցայտուն է արտահայտվում կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում, որտեղ կոմունիստները լսում են ընտրովի մարմնի հաշվետվությունը, գործարար կերպով մասնակցում դրա քննարկմանը, հանդես գալիս կոնկրետ առաջարկություններով ու դիտողություններով, նպաստում նորընտիր կուսակցական մարմնի գործունեության արդյունավետությանը: Կուսակցական կոմիտեները և նրանց քարտուղարները պետք է իրենց պրակտիկ աշխատանքում հաշվի առնեն այդ արժեքավոր առաջարկություններն ու քննադատական դիտողությունները, դրանք ուղղեն կոմունիստների ակտիվության բարձրացմանը, կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բարելավմանը: Հարկավոր է առանձնակի ուշադրություն նվիրել կուսակցական ժողովների ու կոնֆերանսների որոշումների կատարման ստուգմանը, օրըստօրե բարձրացնել կուսկազմակերպությունների ղեկավարման մակարդակը, նրանց ուժերը նպատակամղել ժողովրդական տնտեսության իններորդ հնգամյա պլանի առաջադրանքների կատարմանը:

Հայաստանի կոմկուսակցությունն իր հերթական և մեր փառապանծ լենինյան կուսակցության XXIV համագումարները նշանավորում է կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած նորանոր նվաճումներով, իր շարքերի սերտ միասնությամբ, կուսակցական կազմակերպական-քաղաքական աշխատանքի առավել բարձր մակարդակով:

Ինչպես Միության, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, սոցիալիստական գործարար մրցություն են ծավալել ՍՄԿԿ XXIV համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար: Գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում քաղաքական ու աշխատանքային մեծ վերելք է տիրում, աճում է մասսաների ակտիվությունը: Ամենուրեք նրանք տոգորված են նախահամագումարյան մրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարելու պատրաստակամությամբ: Կուսկազմակերպությունների խնդիրն է՝ հմտորեն գլխավորել աշխատավորների հայրենասիրական խանդավառությունը, ապահովել պլանային առաջադրանքների և ստանձնած պարտավորությունների ժամկետից շուտ կատարումն ու գերակատարումը:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Խ. Հ. ԵՐԻՑՅԱՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Աշխարհի հեղափոխական նորացումը մարդկության զարգացման մայրուղին է: Գալով այդ եզրակացության՝ մարքսիզմի կլասիկները գիտականորեն հիմնավորեցին կապիտալիզմի ոչնչացման և սոցիալիստական հասարակարգի ստեղծման օբյեկտիվ անխուսափելիությունը, կապիտալիզմից սոցիալիզմին անցման անհրաժեշտությունը, որն արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունն է:*

* * *

*Ուսումնասիրելով արտադրության կապիտալիստական եղանակը, գիտական կոմունիզմի հիմնադիրները եկան այն եզրակացության, որ կապիտալիզմի ներքին հակասությունները տանում են դեպի նրա կործանումը: Սոցիալիստական հեղափոխության սոցիալ-տնտեսական հիմքը արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև եղած կոնֆլիկտն է: Կապիտալիզմի զարգացման որոշակի փուլում արտադրահարաբերությունները խոչընդոտում են արտադրաուժերի զարգացմանը, արգելակում հասարակական առաջընթացը: Զարգացող արտադրաուժերի և հնացած մասնավոր սեփականատիրական արտադրահարաբերությունների միջև եղած հակասությունը կապիտալիստական հասարակարգը դնում է այնպիսի փակուղու մեջ, որից դուրս գալու միակ ելքը սոցիալիստական հեղափոխությունն է:*

*Կապիտալիզմն ինքն է ստեղծում իր գերեզմանափորին՝ պրոլետարիատին, որը պատմականորեն կոչված է ոչնչացնելու արդեն իր դարն ապրած հասարակարգը և ուղի հարթելու դեպի սոցիալիզմ և կոմունիզմ:*

*Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը առաջ քաշեցին ու հիմնավորեցին այն գաղափարը, որ առանց պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման անհնար է նոր հասարակարգի կառուցումը, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ է բանվոր դասակարգի, գյուղի ու քաղաքի կիսապրոլետարական մասսաների ամուր դաշինք: Նրանք ապացուցեցին, որ*

սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ է զինված ապստամբություն, չբացառելով նաև հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունն այս կամ այն կոնկրետ պատմական պայմաններում։

Ուսումնասիրելով մինչմոնոպոլիստական կապիտալիզմը, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հանգեցին այն հետևության, որ սոցիալիստական հեղափոխությունը կհաղթանակի միաժամանակ բոլոր խոշոր կապիտալիստական երկրներում, որ մեկ առանձին վերցրած երկրում նրա հաղթանակը հնարավոր չէ։ Կոմունիզմի հիմունքները աշխատության մեջ Ֆ. Էնգելսը գրում էր. «Կոմունիստական հեղափոխությունը կլինի ոչ միայն ազգային, այլև տեղի կունենա բոլոր քաղաքակրթված երկրներում, այսինքն, առնվազն Անգլիայում, Ամերիկայում, Ֆրանսիայում և Գերմանիայում» (К. Маркс и Ф. Энгельс, т. 4, стр. 334)։

Այդ դրույթը ճիշտ էր իր ժամանակի համար, երբ կապիտալիստական երկրների միջև գոյություն ունեցող հակասությունները դեռևս չէին սրվել, իսկ դա հնարավորություն էր ընձեռում նրանց համեմատաբար հեշտությամբ միասնական ճակատ ստեղծել սոցիալիստական հեղափոխության դեմ, եթե այն արդեն հաղթանակել էր մեկ առանձին վերցրած երկրում։

Միանգամայն այլ ժամանակաշրջան էր XX դարի սկիզբը, երբ հասարակական կյանքում առաջացան սոցիալ-տնտեսական և քաղաքական նոր երևույթներ, որոնք պահանջում էին գիտական նոր մեկնաբանում։

Ելնելով Ռուսաստանում ստեղծված կոնկրետ պատմական իրադրությունից, Վ. Ի. Լենինը գիտական խորաթափանցությամբ լուսաբանեց պրոլետարական հեղափոխության հարցը, ցույց տվեց նրա ստրատեգիական և տակտիկական խնդիրները, հիմնավորեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի անհրաժեշտությունը։ Ցարիզմը տապալելու համար հեղափոխության բուրժուա-դեմոկրատական էտապում, որպես հեգեմոն ուժ, բանվոր դասակարգը պետք է անպայման դաշնակցի ամբողջ գյուղացիության հետ։ Սոցիալիստական էտապում բանվոր դասակարգի միակ հավատարիմ դաշնակիցը չքավոր գյուղացիությունն է, որն իր տնտեսական ու քաղաքական կացությամբ շահագրգռված է հեղափոխության վերջնական հաղթանակով։ Առաջ քաշելով այս ստրատեգիական լոզունգները, Վ. Ի. Լենինը զարգացրեց, ավելի կոնկրետացրեց մարքսյան ընդհանուր դրույթները բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ։ Նա միաժամանակ գտնում էր, որ այդ դաշինքը ղեկավարող ուժը մարքսիստական կուսակցությունն է, առանց որի հնարավոր չէ հեղափոխության հաղթանակը։ Լենինյան այս դրույթները բխում էին ռուսական հեղափոխության վերլուծությունից, նոր լույս սփռում սոցիալիստական հեղափոխության մարքսիստական տեսության վրա։

Սոցիալիստական հեղափոխության մարքսյան ուսմունքը Լենինն այնուհետև զարգացրեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Նա խորագնին ուսումնասիրեց կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական փուլը, բացահայտեց նրա զարգացման օրինաչափությունները։ Իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմը զարգանում է անհամաչափ, որը ծայրաստիճան սրում է իմպերիալիստական երկրների միջև եղած հակասությունները, ռեալ դարձնում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը նույնիսկ մեկ առանձին վերցրած կապիտալիստական երկրում։

Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այս հետևությունը Լենինը վերջնականապես ձևակերպեց 1915 թվականին գրված՝ Եվ-



րոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին և 1916 թվականին գրված՝ Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը հոդվածներում։ «Կապիտալիզմի զարգացումը տարբեր երկրներում վերին աստիճանի անհամաչափ է կատարվում։ Այլ կերպ չի կարող լինել ապրանքային արտադրության պայմաններում։ Այստեղից բխում է այն անխախտ եզրակացությունը, որ սոցիալիզմը չի կարող հաղթել բոլոր երկրներում միաժամանակ։ Նա կհաղթանակի սկզբում մեկ կամ մի քանի երկրներում...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 94)։

Քանի որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի քաղաքական նախադրյալները բոլոր երկրներում միաժամանակ չեն հասունանում, սոցիալիստական հեղափոխությունը տեղի է ունենում ամենից առաջ այն երկրում, որտեղ հակասություններն ավելի են սրված։ Հենց այդ երկիրն էլ իմպերիալիզմի շղթայի թույլ օղակն է, որը բնորոշվում է արդյունաբերության զարգացման առնվազն միջակ մակարդակով, արդյունաբերական պրոլետարիատի առկայությամբ, նրա հեղափոխական կոփվածությամբ, հասունությամբ և ոչ պրոլետարական խավերի և, առաջին հերթին, գյուղացիության վրա նրա ազդեցության աստիճանով և, որ ամենից կարևոր է, պրոլետարիատը պետք է ունենա մարքսիստական կուսակցություն, ունակ գլխավորելու մասսաների հեղափոխական ելույթները, կազմակերպելու նրանց հաղթանակը։

Իմպերիալիզմի շղթայի թույլ օղակի լենինյան ուսմունքը համոզիչ հերքում էր կաուցկիական-մենշևիկյան այն կոնցեպցիան թե, իբր, սոցիալիստական հեղափոխությունը կսկսվի միայն այն երկրում, որտեղ գոյություն ունեն զարգացած արտադրաուժեր, որտեղ պրոլետարիատը բնակչության մեծամասնությունն է։

Իրավամբ, ամենևին պարտադիր չէ, որ հեղափոխական ուժերի հասունության աստիճանը համապատասխանի երկրի տնտեսական զարգացման մակարդակին։ Ռուսաստանը զարգացման բարձր մակարդակի վրա չէր գտնվում, բայց պրոլետարիատի քաղաքական հասունությունը և կազմակերպվածությունը շատ ավելի բարձր էր, քան Արևմտյան Եվրոպայում և Ամերիկայում։

Սակայն մարքսիզմ-լենինիզմի կոպիտ խախտում կլիներ հաստատել, թե սոցիալիստական հեղափոխությունը կարող է հաղթանակել միայն հետամնաց երկրներում։ Նման հայացքներով են հանդես գալիս արդի բուրժուական գաղափարախոսներից շատերը, որոնք, առանց որևէ հիմնավորման, հայտարարում են, թե սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը չի կարելի կիրառել զարգացած կապիտալիստական երկրներում. Նրանք հաշվի չեն առնում, որ սոցիալիստական հեղափոխությունը անխուսափելի է նաև այդ երկրներում, քանի որ հասունանում են կոնկրետ պատմական պայմաններ, հեղափոխական շարժման օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններ։

Դժվար չէ կռահել, որ հետամնաց կապիտալիստական երկրներում գոյություն չունի զարգացած բանվոր դասակարգ, որպեսզի կարողանա իր ետևից տանել մնացած աշխատավորական մասսաներին՝ հեղափոխության հաղթանակըն ապահովելու համար։ Բացի այդ, եթե նույնիսկ հեղափոխությունն սկսվի հետամնաց երկրում, նա չի կարող հաղթահարել իմպերիալիզմի գրոհները։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը խոսում էր իմպերիալիզմի ամենաթույլ օղակի՝ միջին մակարդակի զարգացած կապիտալիստական երկրների մասին. այդպիսի երկիր XX դարի առաջին քառորդում, հատկապես առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակաշրջանում, հանդիսանում էր Ռուսաստանը։

Սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին լենինյան տեսությունն ամենայն պարզությամբ դրեց համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ուղիների հարցը. Լենինը նշում էր, որ սոցիալիզմը սկզբում կհաղթանակի մեկ կամ մի քանի երկրներում, իսկ մյուսները որոշ ժամանակամիջոցում կմնան որպես բուրժուական կամ մինչբուրժուական երկրներ։ Այստեղից էլ բխում է լենինյան այն դրույթը, որ առաջին սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և կապիտալիզմի ողջ սիստեմի վերջնական կործանման միջև ընկած է անցման մի ժամանակաշրջան՝ կապիտալիզմի հեղափոխական կործանման ժամանակաշրջանը, երբ անջատվելով կապիտալիզմի սիստեմից, սոցիալիզմի զարգացման ուղին կանցնեն նորանոր երկրներ։

Սոցիալիստական հեղափոխությունները, որոնք տեղի են ունենում տարբեր երկրներում, ունեն ինչպես ընդհանուր օրինաչափություններ, այնպես էլ իրենց առանձնահատկությունները, որոնք կապված են երկրի ուրույն զարգացման հետ։ Օրինակ, Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետությունն ունի շատ էական տարբերություններ ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների համեմատությամբ. հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական հեղափոխությունից հետո Մոնղոլիան բռնեց զարգացման ոչ կապիտալիստական ուղին և ֆեոդալիզմից անցավ սոցիալիզմի, շրջանցելով հասարակական զարգացման կապիտալիստական ստադիան։

Տարբեր երկրներում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունները պայմանավորված են սոցիալական միատարրությամբ, այսինքն՝ այդ երկրների տնտեսական ու քաղաքական կարգերը նույնն են, և սոցիալիստական հեղափոխությունը կոչված է լուծելու այն հիմնական հակասությունները, որոնք գոյություն ունեն կապիտալի և աշխատանքի միջև։

Ստեղծագործաբար զարգացնելով սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը, ՍՄԿԿ և եղբայրական կոմունիստական կուսակցությունները գիտականորեն վերլուծեցին կապիտալիզմից սոցիալիզմին անցնող երկրներում սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունները, որոնք հիմնականում հետևյալն են. բանվոր դասակարգի և նրա կուսակցության ղեկավարությունը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար մղվող պայքարում, բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքը, արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության ստեղծումը, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, սոցիալիստական էկոնոմիկայի արագ և պլանաչափ զարգացումը, գաղափարական և կուլտուրական հեղափոխությունը, ազգային հարցի մարքս-լենինյան լուծումը՝ ժողովուրդների իրավահավասարությունը, ներքին և արտաքին հակահեղափոխական ուժերի հաղթահարումը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետևողական կիրառումը հաղթանակած պրոլետարիատի կողմից, սոցիալիստական երկրների անխախտելի միասնության ստեղծումը։

Ընդունելով այդ սկզբունքների ընդհանուր բնույթը, կոմունիստական և բանվորական կուսակցությունները դրանք ստեղծագործաբար կիրառում են, ելնում լենինյան այն պահանջից, որ սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության ընթացքում պետք է իրականացնել այնպիսի միջոցառումներ, որոնք լիովին համապատասխանեն երկրի առանձնահատկություններին։ Դրանք բխում են տվյալ երկրի տնտեսական և քաղաքական զարգացման մակարդակից, պետական իշխանության բնույթից, դասակարգային հարաբերություններից, ժողովրդական մասսաների պատմական տրադիցիաներից,



ազգային առանձնահատուկ պայմաններից, ռեակցիոն ուժերի դիմադրության չափից, միջազգային իրադրությունից և այլ գործոններից։ Այս ամենը չեն կարող չազդել սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական վերափոխումների իրագործման ձևերի ու մեթոդների, դրանց տեմպերի վրա։

Կոմունիստական և բանվորական կուսակցություններն իրենց գործունեության ընթացքում չեն ընդունում ինչպես ազգային առանձնահատկությունների գերագնահատումը, այնպես և դրանց թերագնահատումը։ Եթե վերջինս հանգում է մասսաներից կտրվելու աղանդավորական ուղուն, ապա գերագնահատումը տանում է պրոլետարական հեղափոխության ընդհանուր սկզբունքներից հրաժարվելու, ազգային սահմանափակության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ճիշտ զուգակցման գծից շեղվելու, ազգայնական թեքումների, օպորտունիստական-ռևիզիոնիստական ուղիով։

ՍՄԿԿ վերջին համագումարների որոշումներում, նրա ծրագրում, ինչպես նաև կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունների փաստաթղթերում մշակված է տեսական և քաղաքական վիթխարի նշանակություն ունեցող այնպիսի հարց, ինչպիսին է արդի էտապում սոցիալիզմի համար մղվող պայքարի հարցը։ Մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն դրույթներից է ժողովրդական մասսաների՝ որպես պատմության իսկական կերտողների դերի հարցը։ Կոմունիստական կուսակցություններն իրենց հիմնական խնդիրն են համարում արթնացնել ժողովրդական մասսաների հեղափոխական ուժերը, նպաստել, որպեսզի աշխատավորական մասսաները դուրս գան ազատագրական պայքարի լայն ճանապարհ։ Հեղափոխական պայքարի հաջողությունը, առաջին հերթին, պայմանավորված է ժողովրդական լայն մասսաների մասնակցությամբ։ Ուստի, արդի ժամանակաշրջանում սոցիալիզմի համար մղվող պայքարում սոցիալական բազայի հարցը ստանում է առաջնակարգ նշանակություն։

Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման փորձի գիտական ամփոփումը մարքս-լենինյան կուսակցություններին հանգեցրեց այն եզրակացության, որ հեղափոխական պայքարի սոցիալական բազան անհամեմատ ընդլայնվել է, որ այժմ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում բանվոր դասակարգը կարող է առաջնորդել բնակչության ավելի լայն խավերի, քան երբևէ։

Ընդգծելով հեղափոխական պայքարի սոցիալական բազայի ընդլայնման անհրաժեշտությունը, իհարկե, այն նկատի է առնվում ոչ միայն նեղ ազգային, այլև միջազգային, լայն առումով։ Արդի հեղափոխական շարժման լայն թափը, սոցիալիզմի համաշխարհային պատմական հաջողությունները, նրա տնտեսական և քաղաքական հզորությունը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և գաղութային լուծը թոթափած ժողովուրդների ակտիվ մասնակցությունը համաշխարհային հեղափոխական պայքարին, բանվոր դասակարգի հեղափոխական կոփվածության բարձրացումը, դեմոկրատիայի համար մղվող պայքարի զգալի մերձեցումը հանուն սոցիալիզմի մղվող պայքարին, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, պատմական այդ վիթխարի երևույթները մեծ չափով փոխում են պրոլետարիատի հեղափոխական պայքարի պայմանները ինչպես ողջ աշխարհում, այնպես և առանձին երկրներում։ Ակտիվ քաղաքական պայքարի մեջ են ընդգրկվում պրոլետարիատի նորանոր շերտեր, գյուղացիական, մանր-բուրժուական և ինտելիգենցիայի միլիոնավոր զանգվածներ, որոնք շահագրգռված են իմպերիալիստական մոնոպոլիաների լծի

թոթափմամբ։ «Բանվոր դասակարգի շահերի հետ,— ասված է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. հունիսին կայացած միջազգային խորհրդակցության փաստաթղթում,— գյուղացիության, քաղաքային միջակ խավերի և մտավորականության շահերի մերձեցումը, նրանց հարաճուն համագործակցությունը տանում են դեպի մոնոպոլիաների իշխանության սոցիալական բազայի նեղացում, սրում նրա ներքին հակասությունները և նպաստում ժողովրդական լայն զանգվածների մոբիլիզացմանը՝ պայքարելու մոնոպոլիաների, իմպերիալիզմի դեմ»։

Դասակարգային հարաբերությունների արդի իրավիճակը նպաստում է սոցիալիզմի ձգողական ուժին, մասսաների շրջանում կոմունիստների ազդեցության ուժեղացմանը, սոցիալիզմի համար պայքարող մասսայական-քաղաքական բանակի հաջող ձևավորմանը։

Դրա հետ մեկտեղ տեղի է ունենում բուրժուազիայի չեզոքացում, նրա ազդեցության ոլորտի նեղացում։ Հանդես գալով դեմոկրատիայի սկզբունքների, խաղաղության և ազգային սուվերենության դեմ, իմպերիալիստական բուրժուազիան խարխլում է իր սոցիալական դիրքերը, դրանով իսկ նպաստում բանվոր դասակարգի հաղթանակին։

Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության զարգացման արտահայտությունն է արդի պայմաններում սոցիալիստական հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորության և սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում պառլամենտի օգտագործման հարցը։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները միշտ գերադասել են պրոլետարական հեղափոխության խաղաղ զարգացման ճանապարհը, որը բացառում է քաղաքացիական պատերազմների և արյունահեղ զինված ընդհարումների անհրաժեշտությունը. ընդ որում, նրանք միաժամանակ նշում էին, որ հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունը եզակի երևույթ է պատմության մեջ, դրա համար էլ պրոլետարիատին նախազգուշացնում էին՝ բոլոր դեպքերում պատրաստ լինել ամեն մի զինված փորձության։

Խաղաղ ճանապարհով սոցիալիստական հեղափոխության իրագործման հնարավորությունը մինչև համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումը քիչ հավանական էր, քանի որ պրոլետարիատը պետք է պայքարեր և՛ արտաքին, և՛ ներքին հակահեղափոխության դեմ։ Սակայն մեր օրերում ներքին և արտաքին հակահեղափոխության հնարավորությունները խիստ նեղացել են։ Կապիտալիստական աշխարհի յուրաքանչյուր երկրում տեղի է ունենում ռեակցիոն ուժերի կրճատման և թուլացման պրոցես և, ընդհակառակը, ազատագրական-դեմոկրատական ուժերի աննախընթաց վերելք։ Միջազգային ասպարեզում ուժերի հարաբերությունն այժմ այնպիսին է, որ սոցիալիզմի լագերը կարող է անմիջապես կանխել հակահեղափոխության արտահանումը։ Համաշխարհային սոցիալիստական ուժերի հետագա ամրապնդումը հնարավորություն է ստեղծում հեղափոխական պրոցեսի հետագա ծավալման համար։

Չնայած ստեղծված բարենպաստ պայմաններին, աշխարհում գոյություն ունեն ուժեր, որոնք խանգարում են սոցիալական առաջընթացը։ Մեր օրերում կապիտալիստական այն երկրներում, որտեղ կապիտալիզմը դեռևս ուժեղ է և իր ձեռքում է պահում վիթխարի ռազմա-ժանդարմական ապարատ, սուր դասակարգային պայքարն անխուսափելի է։

Սոցիալիզմի համար մղվող պայքարում այս կամ այն երկրում զենքի օգտագործելը կամ չօգտագործելը կախված է բանվոր դասակարգի կազմա-



կերպական և քաղաքական հասունությունից, նրա ավանգարդի հեղինակությունից, շահագործող դասակարգերի դիմադրության աստիճանից, միջազգային իրադրությունից։ Բայց ինքնըստինքյան հասկանալի է, որ հեղափոխական պայքարի խաղաղ և ոչ խաղաղ զարգացումը մեծ չափով կախված է ոչ թե պրոլետարիատից, այլ բուրժուազիայի դիմադրությունից։ Ինչ վերաբերում է բանվոր դասակարգին, ապա նա գործադրում է ամեն միջոց, որպեսզի հեղափոխությունն ընթանա խաղաղ ճանապարհով, առանց արյունահեղության, որքան կարելի է քիչ զոհերով հաղթանակ ձեռք բերվի բուրժուազիայի նկատմամբ։ Եթե պրոլետարիատը դիմում է զինված ապստամբության, դա նշանակում է խաղաղ ճանապարհով հնարավոր չէ սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Դժվար թե հաղթանակեր հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը, եթե բոլշևիկների կուսակցությունը ճիշտ չկողմնորոշեր պրոլետարիատին, միաժամանակ հեղափոխության զինված ուժերը չնախապատրաստեր կանխելու ամեն վտանգ։ Փետրվարյան հեղափոխությունից հետո հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունն իրականություն դարձնելու լավագույն երաշխիքը հեղափոխական ուժերի գերակշռությունն էր հակահեղափոխության նկատմամբ։

Լենինը, բոլշևիկների կուսակցությունը սովորեցրին բանվոր դասակարգին և չքավոր գյուղացիությանը տիրապետել հեղափոխական պայքարի բոլոր ձևերին։ Պատմությունը ցույց տվեց, որ պայքարի նույնիսկ խաղաղ ձևը հստակ հանդես չի գալիս, այն հաճախ զուգակցվում է զինված պայքարին։ Այդպես էր մեր երկրում 1917 թվականին, երբ երկու անգամ հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունը փոխարինվեց զինված պայքարի անհրաժեշտությամբ։ Այդպես էր 1919 թ. Հունգարիայում, ուր խաղաղ ճանապարհով սկսված հեափոխությունը հետագայում վերաճեց զինված պայքարի։ Այդպես էր նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, ինչպես և Կուբայում, երբ առաջին էտապում հեղափոխությունն ընթացավ զինված պայքարի, այնուհետև՝ խաղաղ պայմաններում։ Այս հանգամանքը մի անգամ ևս հաստատում է լենինյան այն հայտնի դրույթը, որ բնության և հասարակության մեջ հստակ երևույթներ գոյություն չունեն։

Կոմունիստները երբեք կողմնակից չեն արյունահեղ պատերազմների, որոնք իբրև թե անհրաժեշտ են համաշխարհային հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար։ ՍՄԿԿ և միջազգային կոմունիստական շարժումը վճռականորեն հերքում են իմպերիալիստական պրոպագանդայի այդ զրպարտությունը։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի հունիսին Մոսկվայում կայացած միջազգային խորհրդակցության ընդունած հիմնական փաստաթղթում ուղղակի ասված է, որ կոմունիստները համաշխարհային սոցիալիստական հեղափոխության վերջնական հաղթանակը չեն կապում նոր համաշխարհային պատերազմի հետ։ Բանվոր դասակարգի նպատակները կարող են իրագործվել նաև առանց համաշխարհային պատերազմի, որի մասին բազմիցս նշել է Լենինը։ Նա ընդգծում էր, որ չի կարելի նախօրոք ասել, թե հանգամանքների ինչպիսի ընթացքը կարող է արթնացնել պրոլետարական մասսաներին և նրանց ընդհուպ մոտեցնել հեղափոխության. իրերի տրամաբանությունն անհամեմատ ուժեղ է, քան նախօրոք նշված ամեն մի սխեմա։ Պատմական իրադրությունը կարող է ավելի արագ փոխվել, քան կարող է երևակայել ամենավառ հեղափոխական միտքը։ Որպեսզի կոմունիստա-

կան կուսակցությունը չկորցնի հեղափոխական մասսաների ղեկավարության
հեռանկարը, նա պետք է միշտ պատրաստ լինի ճիշտ կողմնորոշվելու յուրա-
քանչյուր բարդ իրադրության մեջ, հաշվի առնի երկրի ներքին և արտաքին
զարգացման առանձնահատկությունները: Ամենևին պարտադիր չէ հետաձգել
հեղափոխությունը, մինչև իմպերիալիստների հերթական ռազմական ընդհա-
րումները. էական է մոմենտի ճիշտ օգտագործումը: Երկու սիստեմների խա-
ղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը լիովին համապատասխա-
նում է համաշխարհային սոցիալիստական հեղափոխության շահերին: ՍՄԿԿ
և եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները պայ-
քարում են համաշխարհային պատերազմը կանխելու համար. ընդ որում,
նրանք ելնում են այն բանից, որ խաղաղ պայքարը մեր օրերում նշանակում
է՝ պայքար պատերազմներ ծնող բոլոր պատճառների իսպառ ոչնչացման, աշ-
խարհում հավերժ խաղաղություն հաստատելու համար:
Արդի աշխարհում մարդկության զարգացման մայրուղին որոշում են
համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակար-
գը, մոլորակի բոլոր հեղափոխական ուժերը:
Կապիտալիզմի համաշխարհային ճգնաժամի ներկա էտապում սրվում են
հակասությունները աշխարհի հեղափոխական ուժերի և պետական-մոնոպո-
լիստական կապիտալի միջև, ավելի ուժեղ է դառնում սոցիալիստական հեղա-
փոխությունների հաղթանակի հնարավորությունը կապիտալի երկրներում:
Կյանքին հակառակ, բուրժուական գաղափարախոսները ճգնում են ապա-
ցուցել, թե իբր արդի պայմաններում բացառված է սոցիալիստական հեղա-
փոխությունների հնարավորությունը, քանի որ կապիտալիզմը այն չէ, ինչ
նախկինում էր, և իբր թե այն վերածվել է «ժողովրդական կապիտալիզմի», ուր
ձեռնարկատերերը և բանվորները հավասարապես կիսում են եկամուտները,
որի հետևանքով չնչվում է կապիտալի և աշխատանքի միջև եղած հիմնական
հակասությունը:
Իմպերիալիզմի վարձու գրչակները դիմում են ամեն միջոցի՝ գունազար-
դելու կապիտալիստական աշխարհի սոցիալական կառուցվածքը: Սակայն ինչ-
պես կարելի է անտեսել փաստերը: Հենց իրենց՝ բուրժուական հետազոտող-
ների տվյալներով այժմ ԱՄՆ-ում բոլոր ակցիաների 65—70 տոկոսը պատկա-
նում է հարուստ ընտանիքներին: Վերջին 40 տարվա ընթացքում, օրինակ,
Ռոկֆելլերների հարստությունն ավելացել է 8 անգամ, Մորգաններինը՝ 3, Ֆոր-
դերինը՝ 7, Մելոններինը՝ 8, Դյուպոններինը՝ 15 անգամ: ԱՄՆ-ի էկոնոմիկա-
յում վճռական տեղ են գրավում մի քանի հարյուր մոնոպոլիստական ընտա-
նիքներ, որոնց հարստությունը աստղաբաշխական թվերի է հասնում:
Նման փաստերի առկայությունը ապարդյուն են դարձնում կապիտալի
երդվյալ պաշտպանների և ռևիզիոնիստների ճիգերը՝ երկարացնելու կապի-
տալիզմի գոյությունը, քողարկելու կապիտալիստական շահագործման էությու-
նը, հեռու պահելու կապիտալիստական երկրների աշխատավորներին դասա-
կարգային պայքարից, սոցիալիստական հեղափոխության միջոցով քաղաքա-
կան իշխանությունն նվաճելու նպատակից:
Իմպերիալիզմի գաղափարական ստնձգությունները անուժ են բացասելու
մարքս-լենինյան դրույթը, որ սոցիալիզմի հաղթանակն ամբողջ աշխարհում
մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է,
չկան աշխարհում այնպիսի ուժեր, որ կարողանան կասեցնել համաշխարհային
սոցիալիստական հեղափոխության հաղթարշավը:

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ



# ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾ ԱՇԽԱՐՀԻ ՀՈԳԵՎԱՐՔԸ

Մեր դարաշրջանում իմպերիալիզմի քաղաքականությունն ու գաղափարախոսությունը ամբողջապես ներծծված են հակակոմունիզմով: Իմպերիալիզմը դրանով ձգտում է ներքուստ խարխլել համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնությունը, պրոպագանդայի միջոցներով գաղափարապես քայքայել սոցիալիստական երկրները, բացահայտ սուտ կամ շինծու ինֆորմացիայով, սոցիալական դեմագոգիայի ամեն հնարավոր մեթոդներով, հակագիտական տեսական կոնցեպցիաներով կազմալուծել ժողովրդական մասսաներին, նրանց սոցիալական պատրանքներ ներշնչել, զրպարտել մարքսիզմ-լենինիզմը, սոցիալիզմը և դրանով իսկ ամրապնդել կապիտալիզմի դիրքերը:

Պատմական փորձը համոզիչ վկայում է, որ հակակոմունիզմի դեմ տարվող հաջող պայքարը վճռական չափով կախված է այն բանից, թե կոմունիստական և բանվորական կուսակցություններն իրենց գործունեության մեջ որքանով են հետևողականորեն ղեկավարվում մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, խոր ու ժամանակին մերկացնում բուրժուական գաղափարախոսությունը, ռևիզիոնիզմը և ընդհանրապես օպորտունիզմը: Այսօր առանձնապես հրատապ են Լենինի հետևյալ խոսքերը՝ Սոցիալիստական գաղափարախոսության ամեն մի նվաստացում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում (Երկեր, հ. 5, էջ 707):

Հակակոմունիզմը թե՛ իմպերիալիստական տերությունների, բուրժուական կուսակցությունների քաղաքականության գործնական ուղղությունն է, թե՛ բուրժուական գաղափարախոսության՝ փիլիսոփայության, սոցիոլոգիայի, քաղաքատնտեսության, իրավունքի և այլնի տեսական նպատակադրումը՝ ընդդեմ մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիզմի և կոմունիզմի:

Քաղաքականության բնագավառում հակակոմունիզմը, փաստորեն, սոցիալիզմի, պրոլետարիատի դասակարգային պայքարի, ազգային-ազատագրական շարժման օրինաչափությունը չճանաչելն է, քաղաքական գործողությունների, քայքայիչ գործունեության կազմակերպումը սոցիալիզմի երկրների, միջազգային կոմունիստական շարժման դեմ: Գաղափարախոսության բնագավառում հակակոմունիզմն առաջ է քաշում ավելի ու ավելի

նուրբ կոնցեպցիաներ, որոնք, ի վերջո, կոչված են հիմնավորելու ու արդարացնելու իմպերիալիստական քաղաքականությունը։ Պատահական չէ, որ հակակոմունիստական պրոպագանդայի բոլոր գլխավոր ուղղությունները, նրա բոլոր կենտրոնները, սկսած բազմաթիվ, այսպես կոչված՝ «հետազոտական» ինստիտուտներից և վերջացրած «Ազատ Եվրոպա», «Գերմանական ալիք» և այլ տիպի ռադիոկայաններով, գործի են դրվում ու ֆինանսավորվում են իմպերիալիստական տերությունների, հետազոտական կենտրոնների, մոնոպոլիաների, վատ համբավ ունեցող այլ «ֆոնդերի» կողմից։

Հակակոմունիզմը հանդես է գալիս տարբեր ձևերով։ Նախ՝ մարտական, զինված ուժը, տեռորը և այլն բացահայտ գործադրելու միջոցով քաղաքական գործողությունների դիմելով։ Այդ հակակոմունիզմը (որ բնորոշ է ֆաշիստական, ռևանշիստական կազմակերպությունների համար) սովորաբար միացվում է մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիզմի պրիմիտիվ, բացահայտ և կոպիտ զրպարտության հետ։ Երկրորդ, բուրժուա-լիբերալ, որ հանդես է գալիս «օբյեկտիվիզմի» դրոշի ներքո գաղափարախոսության ոլորտում, իսկ քաղաքականության բնագավառում՝ «կամուրջներ գցելու» դոկտրինայով քողարկված։ Երրորդ, դեմագոգիական, որն իրեն քողարկում է «ստեղծագործական մարքսիզմով», իբր, սոցիալիզմի «բարելավման» համար հոգ տանելով, իսկ իրականում նպատակ է հետապնդում բուրժուական գաղափարներ արմատավորել կոմունիստական շարժման մեջ, ներքուստ քայքայել սոցիալիստական երկրների միասնությունը։ Եվ դա հանճարեղորեն նկատել է Վ. Ի. Լենինը դեռևս առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, գրելով, որ բուրժուազիայի տեսաբանները ձգտում են մարքսիզմը սպանել «մեղմության միջոցով», խեղդել նրան գրկախառնումով և որ պատմության դիալեկտիկան, մարքսիզմի գաղափարների, սոցիալիզմի ազդեցության աճը մեր թշնամիներին ստիպում են վերազգեստավորվել մարքսիզմով։

Հակակոմունիզմը սերտորեն կապված է սոցիալ-դեմոկրատական ռեֆորմիզմի, նացիոնալիզմի և «ձախ» ու աջ ռևիզիոնիզմի գաղափարախոսության հետ։ Ահա թե ինչու Լենինը նշում էր, որ պայքարը իմպերիալիզմի դեմ, եթե այն անխզելիորեն կապված չէ օպորտունիզմի դեմ մղվող պայքարին, դատարկ և սուտ բան է։ Չէ որ օպորտունիզմի և ռևիզիոնիզմի օգնությամբ հակակոմունիզմը փորձում է, ինչպես դա վկայում են ոչ հեռու անցյալում Չեխոսլովակիայում կատարված իրադարձությունները, թափանցել սոցիալիզմի երկրները։

Հակակոմունիզմը արդի իմպերիալիստական բուրժուազիայի զինանոցում գտնվող բոլոր ռեակցիոն գաղափարական տարրերի մի էկլեկտիկ խառնուրդ է։ Ահա թե ինչու հակակոմունիզմի դեմ մղվող պայքարը սոցիալիզմի և կոմունիզմի հետագա հաջողությունների, ողջ մարդկության առաջընթացի անհրաժեշտ պայմանն է։

Արդի բուրժուական պրոպագանդան զինված է միասնական ինդուստրիալ հասարակության, զուգամերձության, ապագաղափարայնացման, մարքսիզմի «պլյուրալիզմի» և այլ թեորիաներով, որոնք մի շարք ընդհանուր գծեր ունեն։ Դրանք ժխտում են հասարակական զարգացման՝ մարքսիզմ-լենինիզմի հայտնագործած ընդհանուր օբյեկտիվ օրինաչափությունները, կապիտալիզմը հեղափոխական ճանապարհով սոցիալիզմի վերափոխելու պատմական անհրաժեշտությունը, կեղծում արդի կապիտալիստական հասարակարգի էությունը, որն, իբր, հաղթահարում է սեփական հակասու-



թյունները և դառնում անդասակարգ հասարակարգ, աղճատում են սոցիալիզմի բնույթն ու նպատակները։ Այդ կոնցեպցիաների, հատկապես ինդուստրիալ հասարակության և «զուգամերձության» տեսությունների համար ընդհանուրը սպեկուլյացիան՝ արդի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և դրա սոցիալական հետևանքների խեղաթյուրումն է։

Բացարձակացվում է տեխնիկայի նշանակությունը, որը, իբր, թե՛ կապիտալիզմի, թե՛ սոցիալիզմի ժամանակ ինքնաբերաբար հանգեցնում է միատեսակ սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր հետևանքների։ Ընդ որում, դրանով անտեսվում է այն դրույթի սկզբունքային կարևորությունը, որ արդի գիտատեխնիկական հեղափոխության արդյունքները կապիտալիզմի ու սոցիալիզմի ժամանակ արմատապես հակադիր են։ Պատմության օրինաչափությունների և մարդկության ապագայի նման կեղծարարության օրինակ է ամերիկյան տնտեսագետ և սոցիոլոգ Ռոստոուի տնտեսական աճման ստադիաների թեորիան։ Իր նույնանուն գրքում, որ լայնորեն տարփողվում է Արևմուտքում, նա ժխտում է մարքսիզմի այն արմատական դրույթը, ըստ որի մարդկությունն իր զարգացման ընթացքում անցնում է որոշակի հասարակական-տնտեսական ֆորմացիաներ, և առաջարկում պատմության կամայական բաժանում զանազան էտապների։ Ընդ որում նա գտնում է, թե կապիտալիզմին անմիջականորեն սոցիալիզմը չի հետևում։ Մարդկությունը, ըստ Ռոստոուի, ներկայումս թևակոխում է իր նախավերջին՝ միասնական ինդուստրիալ հասարակության ստադիան, որին հետևում է բարգավաճման և համընդհանուր սպառման դարագլուխը։ Այդ դրախտային վիճակին, սոցիոլոգի կարծիքով, ամենից ավելի մոտ է գտնվում ԱՄՆ, բայց Սովետական Միությունը ևս կարող է բարձրանալ մինչև այդ մակարդակը, եթե իր քաղաքականության և գաղափարախոսության մեջ ղեկավարվի ոչ թե դասակարգային շահերով, այլ տեխնիկայի զարգացմամբ թելադրված առաջընթացի «տրամաբանությամբ» և սովորի ԱՄՆ-ից։ Ինչպես տեսնում ենք, թեև այդ սոցիոլոգը այնպես է ձևացնում, թե ինքը անտեսում է սոցիալ-տնտեսական, դասակարգային գործոնը, սակայն ամենևին չի մոռանում մյուս երկրների համար որպես նմուշ հրամցնել հատկապես իմպերիալիստական Ամերիկան։ Եվ մի՞թե պատահական է, որ պրեզիդենտ Ջոնսոնի օրոք այդ հայացքները տարածողն զբաղեցնում էր ստրատեգիական պլանավորման գծով խորհրդականի բարձր պաշտոնը։

Բուրժուական սոցիոլոգները բանն այնպես են պատկերացնում, թե իբր սոցիալիստական հեղափոխությունը արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական երկրների համար դադարել է անհրաժեշտություն լինելուց, իսկ արդի գիտատեխնիկական հեղափոխությունը տանում է դեպի «զուգամերձություն», այսինքն՝ կապիտալիզմի և սոցիալիզմի փոխադարձ նմանեցում, բուրժուական հասարակության դասակարգային կառուցվածքի արմատական փոփոխություն և այլն։ Նման մերձեցման հիման վրա էլ, իբր, կառաջանա այնպիսի հասարակություն, որտեղ չեն լինի սոցիալական հակասություններ, դասակարգեր, դասակարգային պայքար։ Այդ հասարակությունը կլինի ոչ կապիտալիստական և ոչ էլ կոմունիստական, այլ պոստինդուստրիալ (ետինդուստրիալ), տեխնիկագահակալական հասարակություն, որին կղեկավարի գերազանցապես տեխնիկական ինտելիգենցիայից սերված խավը։

Մինչդեռ ակնհայտ է, որ կապիտալիզմը մեր ժամանակում ևս չի փո-

խում իր սոցիալ-դասակարգային էությունը, չնայած այն բանին, որ իմպերիալիզմի էվոլյուցիայի ընթացքում որոշակի փոփոխություններ են տեղի ունենում, մասնավորապես, այն ուղղությամբ, որ մոնոպոլիաները ավելի մեծ չափերով են սերտաճում պետության հետ, փորձեր են կատարվում պետության կողմից կարգավորել էկոնոմիկան և այլն։ Ինչ վերաբերում է գիտատեխնիկական հեղափոխությանը, այն ավելի է սրում կապիտալիզմի հակասությունները, բևեռացնում գիտությունը և աշխատանքը, ուժեղացնում մասսաների ընչազրկությունը, ավելացնում գործազրկությունն ու ավելի անվստահելի դարձնում վաղվա օրը, ի հաշիվ աշխատավորների շահագործման բարձրացնում մոնոպոլիաների շահույթները։

Միայն սոցիալիզմի պայմաններում, արտադրամիջոցների հասարակական սեփականությամբ է գիտատեխնիկական հեղափոխությունը ծառայում աշխատանքի հեշտացմանը, աշխատավորների նյութական բարեկեցության աճին, նպաստում ֆիզիկական և մտավոր աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև էական տարբերությունների վերացմանը։ Սակայն բուրժուական գաղափարախոսները ոչ միայն աչք են փակում այդ իրական պրոցեսների հանդեպ, այլև փորձում պատկերել բաղձալի հեռանկարներ, որոնց, իբր, սպասում է կապիտալիզմը։ Եվ պատահական չէ, որ վերջին երկու տասնամյակում աճում են ամենահնարավոր ֆուտուրոլոգիական տեսությունները։ Ահա թե ինչ է հայտարարում մարտնչող հակակոմունիստ Մեյերը իր Ապագա սոցիալիստական հասարակությունը գրքում, որը մի քանի տարի առաջ հրատարակվել է Նյու-Յորքում. «Կապիտալիզմը, եթե նրան հանգիստ թողնենք, էվոլյուցիոն զարգացման ճանապարհով, առանց սոցիալիզմի և պրոլետարական հեղափոխության, ինքնաբերաբար կվերաճի ինչ-որ առավել կատարյալ բանի, քան կոմունիզմը»։ Նկատենք միայն, որ կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը հազիվ թե լսի մարգարե Մեյերի խորհուրդը և հանգիստ թողնի այդ հակամարդասիրական հասարակարգը, որին պատմությունը կործանման է դատապարտել։

Նույն ոգով է սուրճի մրուրում գուշակություններ անում ամերիկյան մի այլ հակակոմունիստ՝ Հայլբրոները, որն իր Ամերիկյան կապիտալիզմի սահմանները գրքում գոռոզաբար գրում է, թե «ընթացիկ և հետագա հարյուրամյակներում կապիտալիզմը արևմտյան աշխարհում կմնա որպես տիրապետող սիստեմ»։ Ընթերցողը գրքում զուր կորոնի փաստարկներ հօգուտ այսքան համարձակ կանխատեսության։ Այդպիսիք պարզապես չկան։ Եվ ում են պետք փաստարկները, երբ Հայլբրոներին ու նրա նմաններին թվում է, թե որքան ավելի վճռական են ու արկածախնդրական իրենց գուշակությունները, այնքան ավելի շատ կգտնվեն իրենց խոսքերին հավատացող պարզամիտներ։ Անտեսելով պատմական փաստերը, վերդասակարգային, վերսոցիալական դիրքերից բնութագրելով հասարակական կյանքի, ինչպես և գիտատեխնիկական հեղափոխության ընթացքն ու հեռանկարները, ամերիկյան սոցիոլոգներ Դունլոպը, Խարիբսոնը, Քերրը և ուրիշներ գրում են, թե որոշ ժամանակ անց աշխարհը կապշի կապիտալիզմը սոցիալիզմին մերձեցնող համանման պրոցեսների ուժից։ Ընդ որում, ինչպես գրում են նրանք, «Գաղափարական կոնֆլիկտները կորցնում են իրենց սրությունը և վերանում են... բանվորական ուժը ներքաշվում է արդյունաբերական ապրելակերպի մեջ և հաշտվում դրա հետ»։ Ամեն կերպ ձգտելով սոցիալիզմի և կապիտալիզմի օրոք «գտնել» ինչ-որ նման պրոցեսներ, որ «պետք է» ուժեղանան և այդ հակադիր սիստեմները հասցնեն փոխադարձ «նմանության», բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները, ինչպես նաև դրանց ձայնակցող ռևիզիոնիստները, կեղծում են մի շարք պրոցեսների սոցիալ-դասակարգային հիմքերն ու հետևանքները։



Նրանք պնդում են, թե սոցիալիզմը, իբր, կապիտալիզմից ընդօրինակում է մրցակցության մեթոդներ, ասպարեզ բացում շուկայական տարերքի համար, հաղթահարելով «չափից դուրս» կենտրոնացումը էկոնոմիկայի ղեկավարության «խիստ» պլանային սկզբունքի մեջ։ Վերջիններս, որպես փաստարկ, վկայակոչում են սոցիալիզմի երկրներում կենսագործվող տնտեսական ռեֆորմը։ Այնուհետև, իբր, կապիտալիզմը, իր հերթին, սոցիալիզմից վերցնում է պլանային սկզբունքը, դրանով իսկ հաղթահարում սեփական զարգացման չափից ավելի տարերայնությունը։ Կամ, ասենք, պնդում են, թե իբր, տեխնիկայի զարգացմամբ, թե՛ սոցիալիզմի, թե՛ կապիտալիզմի օրոք գոյանում են հասարակության նույնատիպ սոցիալական կառուցվածք, ղեկավարություն և այլն։ Այդպիսի կեղծումները, որոնք հարկավոր են մակերեսային համեմատությունների համար, խարսխվում են հասարակության և նրա զարգացման օրենքների հակագիտական ուսումնասիրման, սեփականության ձևերի, կապիտալիզմի և սոցիալիզմի արտադրահարաբերությունների հակասությունների անտեսման վրա։ Ընդ որում, կեղծ գիտնականները համարձակվում են հայտարարել, թե իրենք, իբր, մարքսիզմն են մուծում իրենց մեթոդոլոգիան, քանի որ ընդունում են տեխնիկայի դերը առաջընթացի ասպարեզում։

Նման մեքենայություններով հիշյալ «հետազոտողները» եզրահանգում են՝ «Ապագան, որը, ինչպես թվում է, ընտրում է մարդկությունը և որի համար պայքարում է, այն սիստեմն է, որը կարելի կլինի անվանել պլյուրալիստական ինդուստրիալիզմ»։ Այդ տեսակետին համամիտ էր նաև Պիտիրիմ Սորոկինը, որին ժամանակին քննադատել է Լենինը։ Հասարակության և կուլտուրայի զարգացումը, ըստ նրա, ուղղված է համախմբող մեկ տիպի, այսպես կոչված՝ սինթետիկ հասարակության, որը սոցիալիզմի և կապիտալիզմի ինչ-որ մի միջինը կլինի։

Միասնական ինդուստրիալ հասարակության, զուգամերձության և նման այլ տեսությունների կողմնակիցներից են նրանք, որոնք տեսությունը սերտորեն կապում են սոցիալիզմի երկրների դեմ քայքայիչ հակահեղափոխական գործունեության անմիջական պրակտիկայի հետ։ Այդպիսին է Զբիգնև Բժեզինսկին՝ ԱՄՆ-ում Կոլումբիայի համալսարանին առընթեր «կոմունիզմի պրոբլեմների» (ավելի ճիշտ՝ հակակոմունիզմի) ինստիտուտի դիրեկտորը։ Տեխնիկագաճակալական դարի Ամերիկան գրքի այդ հեղինակը միաժամանակ «խաղաղ հակահեղափոխություն» տեսության ստեղծողներից է, որը ժամանակին կոնկրետ հանձնարարություններ էր տալիս Չեխոսլովակիայի հակասոցիալիստական ուժերին...

Զուգամերձության տեսության ստեղծողներից, ֆրանսիական փիլիսոփա և սոցիոլոգ Ռայմոն Արոնը և այդ տեսության ամերիկյան հայտնի ներկայացուցիչ Պարսոնսը իրենց բացահայտորեն անվանում են հակամարքսիստներ, իսկ արդի մարքսիզմը գնահատում որպես անախրոնիզմ։ Նրանք պնդում են, թե մարդկության անցումը կապիտալիզմից սոցիալիզմին՝ ուտոպիա է։ Կույր ձևանալով, նրանք այնպիսի տեսք են ընդունում, թե Սովետական Միությունից հետո դեպի սոցիալիզմ ուղի չի հարթված Եվրոպայի և Ասիայի մի շարք եր-

կըրների համար։ Զուգամերձության տեսության կողմնակիցները սոցիալիստական ամբողջ վերափոխությունները գնահատում են այն տեսակետից, թե քանի որ դրանք չեն համապատասխանում բարձր զարգացում ունեցող բուրժուական դեմոկրատիայի ստանդարտներին, ապա դրանք պետք է դիտել որպես անիրական կամ «տիպիկ ինդուստրիալիզմի» խեղաթյուրում։ Պարսոնսի կարծիքով կապիտալիստական և սոցիալիստական «ինդուստրիալիզմ»-ները սկզբունքորեն միևնույն տիպի հասարակական հարաբերությունների երկու տարբերակներն են, և ոչ թե սկզբունքորեն տարբեր երկու տիպեր։ Այդ ամենին ավելացնենք, որ ամերիկյան մի խումբ գիտնականներ, պրոֆեսոր Կանի գլխավորությամբ, հատկապես Հոկտեմբերյան հեղափոխության 50-րդ տարեդարձի առթիվ, լույս են ընծայել ֆուտուրոլոգիական մեծածավալ մեկ հատորյակ՝ 2000 թվական խորագրով, որտեղ փորձեր են արվում լուծելու մարդկության ապագայի՝ կոմունիզմի մի շարք երկընտրանքներ։

Ակներև է, որ իդեալիզմի և մետաֆիզիկայի վրա հիմնված հակագիտական, էկլեկտիկական այդ բոլոր տեսությունները հակակոմունիստական են։ Դրանց նպատակն է՝ հավերժացնել կապիտալիզմը, զրպարտել սոցիալիզմը, մարքսիզմ-լենինիզմը, խեղաթյուրել կապիտալիզմի պայմաններում դասակարգերի, դասակարգային հարաբերությունների բնույթը, ամենից առաջ՝ բանվոր դասակարգի էությունն ու ապագան։ Նրանց կարծիքով, կապիտալիզմի օրոք, իբր, բանվոր դասակարգը «տարրալուծվում է» մեկ այլ՝ «միջին դասակարգի մեջ»՝ կորցնելով իր հեղափոխական կարողությունը և կազմում բուրժուական հասարակության կառուցվածքի օրգանական մասը։ Ինչպես հայտարարում է Հերբերտ Մարկուզեն, ժամանակակից բանվոր դասակարգը կապիտալի երկրներում կենսագործում է միայն «ճնշման ֆունկցիա»՝ «ստատուս-քվոն» պահպանելու նպատակով։ Ակնհայտ է, որ այստեղ ցանկալին ներկայացվում է որպես իրականություն։ Կապիտալի երկրներում փաստերը ցույց են տալիս թե՛ քանակական և թե՛ որակական տեսակետից դասակարգային պայքարի անշեղ աճ, քաղաքական պայքարի ծավալումն ընդդեմ պետության, մոնոպոլիստների ամենակարողության՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի։

Ընդհանրապես պետք է ասել, որ վերջին տարիներս ավելի են ուժեղացել բուրժուական գաղափարախոսության գրոհները բանվոր դասակարգի վրա, զրպարտանքը նրա նկատմամբ։ Մարքսիզմ-լենինիզմը ամենևին չի ժխտում դեմոկրատական մտավորականության, երիտասարդության հեղափոխական հնարավորությունները և այլն։ Բանն այն է, թե ո՛ր դասակարգի հետևից են ընթանում մտավորականությունը, երիտասարդությունը, ծառայողները և այլն, օբյեկտիվորեն ո՛ւմ շահերն են պաշտպանում։ Միայն բանվոր դասակարգն է ունակ մարքսիստական-լենինյան կուսակցության ղեկավարությամբ կազմակերպելու, գլխավորելու և ճիշտ ուղղություն տալու բուրժուական հասարակության բոլոր առաջավոր խավերի պայքարին՝ ընդդեմ իմպերիալիզմի և ռեակցիայի, հանուն խաղաղության, սոցիալիզմի։ Ուժերի այդպիսի միասնությունը, ինչպես նշված է 1969 թ. կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցության որոշումներում, իմպերիալիզմի դեմ մղվող հաջող պայքարի կարևոր պայմանն է։

Բուրժուական փիլիսոփաներն ու սոցիոլոգները սիրում են բարբաջել օբյեկտիվության մասին։ Այդ կեղծ դիրքը մեր ժամանակներում հատկապես



ակնառու դրսևորվում է հասարակական կյանքի ու կուլտուրայի, այսպես կոչված՝ ապագաղափարայնացման տեսության կողմնակիցների մոտ։ Ո՞րն է դրա էությունը։ Որոշակի դասակարգերի դիրքերից ելնող սոցիալական գիտելիքները, պնդում են վերջինիս հեղինակները, իբր միշտ պատրանքային բնույթ են կրում, քանի որ յուրաքանչյուր դասակարգի տեսակետը, ինչպես և նրա շահերը նեղ են, շահամոլական, սահմանափակ։ Եվ քանի որ գաղափարախոսությունը դասակարգային տեսական հայացքների մի ամբողջություն է, ապա գաղափարախոսություններից և ոչ մեկը չի կարող հավաստի գիտելիքներ տալ, հետևաբար չի կարող ոչ մի ընդհանուր բան ունենալ «իսկական» սոցիալական գիտության հետ։ Այնուհետև ամեն մի գաղափարախոսություն աշխարհը բառացիորեն ծուռ հայելու մեջ է պատկերում։ Այդ արմատապես սխալ տեսակետը, որի տարածումը սերտորեն կապված է իմպերիալիստական ռեակցիայի շահերի հետ, առաջին անգամ, որպես ամբողջական տեսական կոնցեպցիա, ձևակերպեց գերմանական սոցիոլոգ Կարլ Մանհեյմը 20-ական թվականների սկզբին իր Գաղափարախոսություն և ուտոպիա գրքում։ Այդ կոնցեպցիայի կողմնակիցները, որքան էլ դա առեղծվածային թվա, փորձում են իրենց ճշմարտացիությունը հաստատելու համար... վկայակոչել Մարքսին և Էնգելսին։ Նրանք հայտարարում են, թե մարքսիզմի հիմնադիրները նույնպես գաղափարախոսությունը համարում էին պատրանքային ըմբռնում և որ, իբր, Լենինը նրանց հայացքներին հակադրվեց, պնդելով, թե գոյություն ունի գիտական գաղափարախոսություն, ինչպիսին մարքսիզմն է, գիտական սոցիալիզմը։

Սակայն բուրժուական գաղափարախոսները և ռևիզիոնիստները մոռացության են տալիս, բացահայտորեն աղավաղում են գլխավորը, այն, որ Մարքսն ու Էնգելսը, ինչպես և Լենինը պատրանքային, իրականության ոչ գիտական արտացոլում էին համարում իդեալիստական փիլիսոփայությունը, ինչպես և բուրժուական գաղափարախոսությունը։ Չէ՛ որ հենց արդի բուրժուական գաղափարախոսությունն է աղաղակող կերպով կեղծում կյանքի, ամենից առաջ, հասարակական կյանքի պատկերը և նրա զարգացման օրենքները, որովհետև արտահայտում է պատմականորեն իր դարն ապրած, ռեակցիոն դասակարգի շահերը։ Քանի որ այդ դասակարգը շահագրգռված չէ ճանաչել հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, որոնց գործողությունը անխուսափելիորեն տանում է դեպի կապիտալիզմի կործանում, ապա, բնական է, որ բուրժուական գաղափարախոսությունը իսկական գիտությունը նենգափոխում է այնպիսի սոցիալական առասպելներով ու պատրանքներով, որոնք աշխատավորներին հեռու են պահում դասակարգային պայքարից, նրանք երես են դարձնում սոցիալիզմի և կոմունիզմի գաղափարներից և արատավորում դրանք։

Հասարակական կյանքը, նրա զարգացման օրենքները չի կարելի ճանաչել, ելնելով վերդասակարգային դիրքերից։ Առավել ևս սխալ են այն պնդումները, թե իբր, արդի գիտատեխնիկական հեղափոխության ընթացքում կանէանան բոլոր գաղափարախոսությունները և վերջիններիս կփոխարինի «ռացիոնալ-տեխնիկական» մտածողությունը։ Հենց «գաղափարախոսությունների վերջը», «ապագաղափարայնացման» կոնցեպցիաներն իրենք են հետապնդում վառ արտահայտված դասակարգային, գաղափարական նպատակ, այն է՝ քաղաքականապես, գաղափարապես և բարոյապես զինաթափել և ներքուստ քայքայել սոցիալիզմը, հող նախապատրաստել բուր-

ժուական գաղափարախոսությունների, ռևիզիոնիզմի համար, նպաստել դրանց ակտիվ ներթափանցմանը սոցիալիզմի երկրները, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մեջ։ Եթե գաղափարախոսություններից և ոչ մեկը չի կարող գիտական բնույթ կրել, եթե գաղափարական, այսինքն՝ դասակարգային տեսակետը միշտ պատրանքային է, ապա ինչու գաղափարական պայքար մղել և դրանով արհեստականորեն խոչընդոտ դառնալ, այսպես կոչված՝ «ինդուստրիալ հասարակության» լինելությանը, որը ոչ սոցիալիզմ է լինելու, ոչ կապիտալիզմ։ Ավելի լավ չէ՞ արդյոք ազդարարել գաղափարախոսությունների խաղաղ գոյակցություն և փոխներթափանցում, սինթեզել տարբեր գաղափարախոսությունների «ռացիոնալ» տարրերը։ Ահա այն ռեակցիոն, հակակոմունիստական հետևությունները, որին հանգել են բուրժուական փիլիսոփաներն ու սոցիոլոգները, որոնք այնքան ջանասիրաբար ընդգծում են իրենց «անկողմնակալությունը», «չեզոքությունը»։ Եվ այդ ամենը պաշտպանություն է գտնում ռևիզիոնիստների, ամեն տեսակ ռենեգատների կողմից։ Ինչպես կոչ է անում ավստրիական կոմունիստական կուսակցության նախկին անդամ, ներկայումս նրա շարքերից վտարված Էռնեստ Ֆիշերն իր Մարքսիզմն ու գաղափարախոսությունը գրպարտչական գրքում, հարկավոր է հրաժարվել այնպիսի «ոչ գիտական» հասկացություններից, ինչպես՝ «բուրժուական»-ը, «ռևիզիոնիստական»-ը և այլն։ Ամեն մի գաղափար, որքանով որ այն գաղափարական սիստեմ է, քարանում է, անխուսափելիորեն դավանանքի վերածվում, հայտարարում է նա։ Ուստի, գաղափարախոսություններից և ոչ մեկը գիտության հետ ընդհանուր ոչինչ չունի և արժանի չէ հարգանքի։ «Գաղափարախոսությունները,— գրում է նա,— ամրոցներ են։ Իսկ գաղափարները գործում են ազատ տերիտորիայում, իրենց ուժերով չափվում են անմիջական պայքարում, փոխադարձաբար ստուգում են միմյանց, սովորում միմյանցից և, փորձարկումների շնորհիվ, հարստացնում միմյանց»։

Ջնայած որոշ քողարկվածության, այն բովանդակում է գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության, բուրժուական գաղափարախոսության հաշվին սոցիալիստական գաղափարախոսությունը «հարստացնելու» բացահայտ կոչ։ Բայց, եթե մարքսիստական-լենինյան գաղափարախոսության մեջ չեն կարող արտացոլվել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները, քանի որ ոչ մի գաղափարախոսություն ունակ չէ արտահայտելու ճշմարտությունը, ապա հասկանալի է, որ սոցիալիզմը ևս դադարում է այնպիսի հասարակություն լինելուց, որն իր զարգացմամբ մարմնավորում է միասնական աշխարհայացք, գիտատեսական սկզբունքներ և դառնում ինչ-որ պատահական, բազմաձև, ազգային առանձնահատուկ բան։ Ինչպես գրում է նույն Ֆիշերը, «գոյություն չունի սոցիալիզմի որևէ միասնական մոդել, որը տարածվեր բոլոր երկրների ու ժողովուրդների վրա»։ Այլ կերպ ասած, քանի որ գոյություն չունեն սոցիալիզմի զարգացման ընդհանուր օրինաչափություններ, ապա հարկավոր չէ բանվոր դասակարգի, բոլոր սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ միասնություն և այլն։ Իսկ դա ուղիղ ճանապարհ է դեպի բուրժուական նացիոնալիզմը, որի հետ այնքան սերտորեն կապված է ռևիզիոնիզմը։

Ինչպես նշվեց, ապագաղափարայնացման, ըստ էության սոցիալիզմի գաղափարական զինաթափման դիրքերից են բուրժուական գաղափարախոսներն ու ռևիզիոնիստները պայքար մղում կուլտուրայի լենինյան տեսության



դեմ։ Նրանք ժխտում են գրականության և արվեստի կուսակցականության սկզբունքը։ Այն դիտում որպես ստեղծագործությանը «խանգարող», արվեստագետի ազատությունը կաշկանդող մի միջոց, որը հանգեցնում է գրականության և արվեստի ստեղծագործություններում կյանքի ապաձևավորված արտացոլման։ Կուսակցականություն են համարվում արվեստագետի հարմարվելը հանգամանքներին, սոցիալական պատվերին, ամբողջովին հակադրվելը՝ իր համոզմունքներին և խղճի ձայնին։ Այստեղից էլ Ֆիշերի, Գարոդիի և մյուս ռևիզիոնիստների՝ գրականությունն ու արվեստը կուսակցական ղեկավարությունից «ազատագրելու», սոցիալիստական էսթետիկան և ընդհանրապես կուլտուրան բուրժուական էսթետիկայի հետ սինթեզելու, արդի կրոնի և բուրժուական փիլիսոփայության նվաճումներին միացնելու կոչերը։

Ժամանակակից հակակոմունիզմի գաղափարական դիվերսիաները, ինչպես էլ դրանք արտահայտվեն, ծառայում են բուրժուազիայի ստրատեգիական նպատակին, ըստ ազգային ջոկատների տրոհել միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը, ամենից առաջ, նրա առաջատար ուժը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը և թուլացնելով այն, հեշտացնել կապիտալիստական կարգերի վերականգնումը այդ երկրներում։ Այդ անիրականալի պլանների կենսագործման համար հակակոմունիզմը, ռևիզիոնիզմի օգնությամբ, ջանում է ժխտել մարքսիզմ-լենինիզմի միասնական, ինտերնացիոնալ բնույթը, Լենինի ուսմունքը հակադրում է Մարքսի ուսմունքին։ Հակակոմունիզմը պնդում է, թե դրանք տարբեր ուսմունքներ են, յուրաքանչյուրն իր նշանակությամբ սահմանափակված է որոշակի աշխարհագրական և ազգային շրջանակներով։ Ուստի և, իբր չկան և գոյություն ունենալ չեն կարող սոցիալիզմի հաստատման ու զարգացման ընդհանուր օրինաչափություններ և որ հարկավոր է յուրաքանչյուր երկրի համար մշակել սոցիալիզմի յուրահատուկ ազգային «մոդել»։ Եվ, քանի որ, յուրաքանչյուր սոցիալիստական երկիր պետք է ունենա զարգացման իր ուրույն «մոդելը»՝ տարբեր մյուս երկրների մոդելներից, ապա միանգամայն ակներև է, որ չկա այնպիսի ընդհանուր օրինաչափությունների անհրաժեշտություն, ինչպես՝ սոցիալիստական հեղափոխությունը և պրոլետարիատի դիկտատուրան, ինդուստրացումը և մանրգյուղացիական տնտեսությունների սոցիալիստական կոոպերացումը, կուլտուրական հեղափոխությունը, ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորումը, սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության կոորդինացումն ու մասնագիտացումը և այլն։ Հետևաբար, չկա նաև սոցիալիզմի զարգացման և կոմունիզմի կառուցման այնպիսի ընդհանուր օրինաչափություն, ինչպիսին է հասարակության կյանքում կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի ապահովումը։

Նման հայացքների պրոպագանդմամբ հակակոմունիստները փորձում են իրականացնել սոցիալիզմը ներքուստ «մեղմացնելու», նրա գաղափարական և բարոյական «էրոզիան», այսպես կոչված՝ «խաղաղ հակահեղափոխությունը» նախապատրաստելու և կենսագործելու պլանները։

Բուրժուական սոցիոլոգները, քաղաքագետները և ռևիզիոնիստները միահամուռ պրոպագանդում են «բազմապիսի» մարքսիզմի, «պլյուրալիզմի» տեսությունը, թե նման «բազմապիսությունը» իբր մարքսիզմի նկատմամբ «ստեղծագործական մոտեցման» ճանաչումն է. թե նրա աշխարհայացքի միասնության ընդունումը, սոցիալիզմի զարգացման ընդհանուր

օրինաչափությունների գոյությունը հանգեցնում են մարքսիստական մտքի «կարծրախտին», դոգմատիզմին։ Այսպես, մարքսիզմը «բարելավելու անվան տակ նրա ոխերիմ թշնամիները փորձում են պայթուցիկ նյութ դնել հենց նրա հիմքում։ Եվ դա արվում է ամենատարբեր միջոցներով, ամենահնարավոր «փաստարկների» օգնությամբ։ Շվեյցարական «մարքսաբան» Ա. Կյունցլին պնդում է, թե արդեն այժմյան էտապում քաղաքական միասնություն չկա Մարքսի հետևորդների մեջ (նրանք, իհարկե, այդպիսիք համարում են նաև տրոցկիստներին), հետևաբար, բուն տեսությունը ևս հարկավոր է տրոհել ըստ ազգային հատկանիշի. ոմանք էլ, խոսքով ընդունելով Մարքսի, որպես մտածողի և հատկապես տնտեսագետի, «որոշ արժանիքները», հայտարարում են, թե նրա ուսմունքը կարող է նշանակությունը պահպանել՝ միայն ձուլվելով եվրոպական հասարակական մտքի «ընդհանուր հոսանքին»։ Օրինակ, Ռայմոն Արոնը Սարտրի և Մերլո Պոնտիի էկզիստենցիալիզմը համարում է մարքսիզմի «տարբերակ»։ Ընդ որում, աչքի է զարնում բուրժուական փիլիսոփաների ու ռևիզիոնիստների գաղափարների զարմանալի ներդաշնակությունը։ Այսպես, հարավսլավական փիլիսոփա Վրանիցկու թեզիսները, որոնք զետեղված են երկու տարի առաջ Վիեննայում տեղի ունեցած XIV միջազգային փիլիսոփայական կոնգրեսի նյութերում, ուղղակի խորագրված են՝ Զանազան տարբերակների անհրաժեշտությունը մարքսիստական փիլիսոփայության մեջ: Ընդ որում, որպես հիմնական տարբերակներ առաջ են քաշվում «արևմտյան» և «արևելյան» մարքսիզմը։ Լենինիզմը դիտվում է որպես արևելյան տարբերակ, որը կիրառելի չէ «արևմուտքի» նկատմամբ, կամ, առավել վատ,— որպես «զուտ ռուսական երևույթ», որպես տեսություն, կիրառելի սոսկ հետամնաց երկրներում։

Արդի հակակոմունիզմը ամենևին էլ չի սահմանափակվում վերը շարադրված կոնցեպցիաների շրջանակով։ Այն ամեն օր, ամեն ժամ ձգտում է աշխարհի տասնյակ, հատկապես սոցիալիստական երկրների ընթերցողներին և ունկնդիրներին մատուցել հորինված ու կեղծ ինֆորմացիա, որպեսզի մարդկանց և, առաջին հերթին, աշխատավոր զանգվածներին ապակողմնորոշի և, դրանով իսկ, հեշտացնի իմպերիալիստական տերությունների դավադրական պլանների իրականացումը։ Սակայն հակակոմունիզմի մեքենայությունները տեսության, քաղաքականության ու պրակտիկայի ոլորտներում անզոր են կասեցնելու մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթարշավը, սոցիալիզմի ակներև հաջողությունները։ Այստեղից ամենևին չի հետևում, թե կարելի է թերագնահատել հակակոմունիզմի վտանգը։ Այն բազմադեմ է, դեմագոգ, չարաշահում է մարդկանց քաղաքական տհասությունը, նացիոնալիզմը, անհատական հոգեբանությունը։ Ահա թե ինչու նրա դավերի ժամանակին մերկացման ու խափանման կարևոր պայմանը եղել և մնում է աշխատավորների քաղաքական գիտակցության բարձրացումը, նրանց մարքս-լենինյան կոփվածությունը, ինտերնացիոնալ միասնության ու համերաշխության ամրապնդումը, պատրաստակամությունը՝ գիտակցական պայքար մղելու հանուն կոմունիզմի։



Ա. Ե. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԳՈՐԾԵԼԱԿԵՐՊԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը և կառավարությունը վերջին տասնամյակում մի շարք կարևոր միջոցառումներ իրականացրին տարագիր հայ աշխատավորներին հայրենիքի շուրջը համախմբելու, նրանց ազգային մտահոգություններին աջակցելու, հայրենիքի և գաղթօջախների միջև մշակութային կապերը զարգացնելու նպատակով։ Հիմք դրվեց բաղձալի հայրենադարձությանը, ստեղծվեց սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտե, բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում կազմակերպվեց սփյուռքահայ երիտասարդության ուսման գործը, ստեղծվեցին սփյուռքահայ ուսուցիչների որակավորման ամենամյա դասընթացներ, հիմք դրվեց սփյուռքահայ դպրոցների համար արևմտահայ լեզվով դասագրքերի տպագրությանը։ Պայմաններ են ստեղծվել դեպի հայրենիք տուրիստական ճամբորդության համար, լայնորեն ծավալվել են հասարակական գործիչների, արվեստագետների, գիտնականների, լրագրողների և գեղարվեստական խմբերի փոխայցելությունները։

Այդ և բազմաթիվ այլ ձեռնարկումները մեծ գոհունակությամբ ընդունվեցին գաղթօջախներում։ Սփյուռքահայությունը ջերմորեն ողջունեց այդ քայլերը, դրանց մեջ տեսնելով Հայաստանի կոմկուսակցության և կառավարության հոգատարությունը մեր ժողովրդի տարագիր զավակների ճակատագրի նկատմամբ։

Սփյուռքի նկատմամբ այդ քաղաքականությունը և դրա շնորհիվ հայրենիքի ու սփյուռքի մերձեցումը ինչպես գաղափարական, այնպես էլ կազմակերպական տեսակետից խոր փոփոխություններ առաջացրին գաղթօջախներում։ Ներկայումս ավելի քան երբևիցե, տարագիր հայ աշխատավորները, առաջավոր մտավորականությունը ավելի սերտորեն են համախմբված Սովետական Հայաստանի շուրջը, ամրապնդվել է նրանց սերը, հավատը, նվիրվածությունը և ազգային հպարտության զգացումը իրենց աճող, բարգավաճող ու օրեցօր առաջադիմող հայրենիքի նկատմամբ։ Սովետական Հայաստանի օգնության և աջակցության շնորհիվ ամրապնդվեց գաղթօջախների կազմա-

կերպվածությունը այն համառ պայքարում, որ մղվում է ուծացման վտանգի դեմ։

Անցած տասնամյակում զգալիորեն աճեցին ու ամրապնդվեցին սփյուռքահայ առաջադիմական, հայրենասիրական կազմակերպություններն ու միությունները, պարբերական մամուլը, ստեղծվեցին մշակութային ու երիտասարդական նոր միություններ, թերթեր ու պարբերականներ, որոնք սերտ կապեր են հաստատել հայրենիքի հետ։ Այդ կազմակերպություններն ու միությունները, մամուլը մեծ աշխատանք են կատարում Սովետական Հայաստանի նվաճումները պրոպագանդելու, սփյուռքահայ աշխատավորներին հայրենիքի շուրջը համախմբելու գործում, ակտիվ կերպով մասնակցում են այն պայքարին, որ միջազգային արենայում մղվում է խաղաղության, դեմոկրատիայի, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության համար։

Տասնամյա պայքարի ու աշխատանքի կարևորագույն արդյունքներից մեկը պետք է համարել՝ դեպի Սովետական Հայաստանը գաղթօջախներում վաղուց ծնունդ առած շրջադարձի հետագա խորացումը, մտավորականության ավելի լայն շրջանների քաղաքական մտածողության մեջ տեղի ունեցած հեղաբեկումը։

Հայրենիքի և սփյուռքի մերձեցման, մշակութային կապերի ու հարաբերությունների զարգացման շնորհիվ տասնյակ հազարավոր հայեր, տարբեր աշխարհայացքի ու մտածելակերպի տեր մտավորականներ, հասարակական գործիչներ ու լրագրողներ այցելեցին հայրենիք։ Նրանք սեփական աչքերով տեսան մեր ժողովրդի մեծ վերածնունդն ու առաջադիմությունը։ Սփյուռքում լույս են ընծայվել տասնյակ գրքեր, ուսումնասիրություններ, թերթերում տպագրվել ու տպագրվում են բազմաթիվ հոդվածաշարեր, ճամփորդական նոթեր, որոնց մեջ ոչ միայն լուսաբանվում են Սովետական Հայաստանի նվաճումները, այլև քննարկվում է այն հարցը, թե որոնք են հայրենիքի վերածննդի գործոններն ու նախադրյալները։ Եվ ողջախոհ մտավորականությունը չէր կարող չտեսնել ու չհամոզվել, որ հայ ժողովրդի սոցիալական, պետական և ազգային մեծ վերածնունդը, տնտեսական և մշակութային կյանքի աննախընթաց վերելքն առաջին հերթին արդյունք են այն գաղափարախոսության, հասարակական, տնտեսական և պետական կարգերի, որոնք ուղիներ հարթեցին ժողովրդի ստեղծագործական ուժերի ու տաղանդի ծաղկման ու զարգացման համար, արդյունք են եղբայրական այն դաշինքի ու համագործակցության, որ հայ ժողովուրդը հաստատել է ռուս և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ։

Ահա այն համոզումը, որն այժմ իշխում է սփյուռքահայ աշխատավորության և մտավորականության լայն շրջանների քաղաքական մթնոլորտում։

Սփյուռքում տեղի ունեցած և տեղի ունեցող փոփոխություններն ու պրոցեսները, իհարկե, հարթ ու հանգիստ չեն ընթանում։ Դրանք տեղի են ունենում առաջադիմական և հետադիմական ուժերի միջև ծավալվող գաղափարական-քաղաքական սուր պայքարի իրադրության մեջ։ Իմպերիալիզմին ծառայագրված, հակակոմունիզմի կառքին լծված դաշնակցությունը միակ ուժն է, որ շարունակում է սփյուռքահայության շրջանում սովետական կարգերի հանդեպ թշնամանք և ատելություն սերմանելու ճանապարհով կասեցնել խորացող շրջադարձը։ Նա տարիներ շարունակ ձգտել ու ձգտում է մատնության և կասկածներ հարուցելու միջոցով հարվածի տակ դնել առաջադիմական կազմակերպությունները, պառակտել գաղթօջախները և այդ ճանապարհով իր մենատիրությունը հաստատել այնտեղ, սփյուռքը կտրել հայրենիքից և հակադրել նրան։

Հայրենիքի և սփյուռքի մերձեցման, մշակութային կապերի և հարաբերությունների զարգացմանը զուգընթաց դաշնակցության բյուրոն դիմեց նոր գործելակերպի։ Որո՞նք են այդ գործելակերպի բնորոշ գծերն ու արտահայտությունները, ի՞նչ հողի վրա ծնունդ առավ այն և ի՞նչ նպատակ է հետապնդում։

Անցյալում առաջադիմական կազմակերպությունների, գործիչների, ակտիվիստների դեմ դաշնակցությունը գործում էր տեռորիստական, ահաբեկման մեթոդներով, որին զոհ գնացին տասնյակ հայրենասերներ։ Իսկ վերջին տասնամյակում առաջ է քաշվել քաղաքական շանտաժի, մատնության, տեղական իշխանությունների մոտ նրանց նկատմամբ կասկածներ ու անվստահություն սերմանելու մեթոդը։

Այնուհետև դաշնակցության մամուլի մի շարք օրգանների էջերից հետըղհետե դուրս մղվեցին Սովետական Հայաստանի «հետամնացության», ժողովրդի «աղքատության», գյուղի և գյուղատնտեսության «քայքայման», ազգային կուլտուրայի և անցյալի ժառանգության «ժխտման», երկրում իշխող «բռնության», «ճնշման», «սովի» մասին առասպելներն ու բացահայտ զրպարտությունները, որոնք այդ մամուլի ամենօրյա և անընդհատ կրկնվող թեմաներն էին։ Այժմ այդ թերթերի էջերում հաճախ են երևում հայրենիքի տնտեսական, մշակութային, գիտատեխնիկական նվաճումների մասին հոդվածներ, ակնարկներ, ճամփորդական նոթեր, ՀՀԳ-ի ինֆորմացիաներ, մեր գրողների, արվեստագետների ստեղծագործություններ։ Որոշ թերթերում երբեմն արտատպվում են հատվածներ հանրապետության ղեկավար աշխատողների ելույթներից, զեկուցումներից և հոդվածներից։

Ավելին, դաշնակցական մամուլի որոշ օրգաններ խոսքով սկսեցին պաշտպանել հայրենադարձությունը, հայրենիքի հետ կապերի ու հարաբերությունների հաստատումը, դատապարտել արտագաղթերը, կոչ անել ծավալելու տուրիստական ուղևորությունները դեպի հայրենիք, մի խոսքով այնպիսի դիրքավորում, որը խորապես հակասում է այդ կուսակցության քաղաքականությանն ու նպատակներին։ Առանձին թերթեր նույնիսկ պաշտպանեցին առաջադիմական գործիչների առաջարկությունը՝ Արփա-Սևան ջրաթունելի շինարարությանը գործնական օգնություն ցույց տալու մասին։

Եվ ահա, այդ նոր երևույթներից որոշ միամիտներ հանգեցին այն հետևության, թե դաշնակցությունը իբր սկսել է «շրջադարձ» կատարել, հրաժարվել իր հակասովետական քաղաքականությունից, հետևաբար հարկավոր չէ նրան անհանգստացնել, այլ, դադարեցնելով պայքարը նրա դեմ, հնարավորություն տալ՝ խորացնելու և ավարտելու «շրջադարձը»։ Այդ տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը։ Դաշնակցության «Ազդակ» թերթում կարդալով Անսուրյանի հոդվածի այն տողերը, թե «Հայոց աշխարհիկին բուն գարունն է հասել, ահա հիսնամյակ մը տարիներէ ի վեր», ամերիկահայ «Երիտասարդ Հայաստան» առաջադիմական թերթը իր խմբագրականում գրում է. «Հրճվանքով կարդացինք այս տողերը...։ Դաշնակցության այս դիմադարձը իր անչափելի բարերար ազդեցությունը պիտի ունենա մեր բոլոր ազգային-հավաքական գործերու վրա» (7.8.1970 թ.)։

Դժվար չէ նկատել, որ այս նոր մտայնության տեր մարդիկ առնվազն մոլորության մեջ են, լողում են երևույթների ու իրադարձությունների մակերեսին, չեն փորձում թափանցել դաշնակցության բյուրոյի նոր գործելակերպի էության ու դրդապատճառների մեջ, հետևաբար չեն ըմբռնել, որ բյուրոն սկսել է նոր խուսանավում։

Նախ, որո՞նք են դաշնակցության նոր գործելակերպի դրդապատճառները։

Սփյուռքի և հայրենիքի կապերի ու հարաբերությունների մեջ տեղի ունեցած արմատական փոփոխությունների շնորհիվ այժմ տարագիր հայությունը շատ ավելի պարզ պատկերացում ունի հայրենիքի կյանքի և սովետական իշխանության քաղաքականության մասին։ Սփյուռքահայ առաջադիմական, դեմոկրատական մամուլի բովանդակության մեջ ամենակարևոր տեղն է գրավում հայրենիքի բազմաբովանդակ կյանքը։ Դրա հետ միասին Սովետական Հայաստանի պարբերական մամուլը, գրականությունը, լայն տարածում են գտել գաղթօջախներում։ Այս պայմաններում շարունակել հայրենիքի իրականության մասին հին առասպելները, կնշանակեր սփյուռքահայության և շարքային դաշնակցականների առջև իրեն մերկացնել որպես ամենաչարամիտ ստախոսի ու զրպարտչի։ Այդ կնշանակեր կորցնել ընթերցողներին, կորցնել ազդեցությունը նույնիսկ շարքայինների նկատմամբ, որոնք ցանկանում են շատ բան իմանալ, ճշմարտությունն իմանալ հայրենիքի կյանքի մասին։ Ահա թե ինչու բյուրոն և բյուրոյական մամուլը փոխեցին գործելակերպը, հագան «օբյեկտիվ», «անաչառ» և նույնիսկ «հայրենասերի» քղամիդ։

Տարագիր հայի ամենանվիրական իղձը եղել ու մնում է հայրենադարձությունը, փրկությունը օտարականի նվաստացուցիչ վիճակից։ Նա խանդավառությամբ ու սիրով ողջունեց սովետական կառավարության որոշումը հայրենադարձության մասին, որի շնորհիվ ամեն տարի հազարավոր անհայրենիք հայեր տեր են դառնում հայրենիքի։ Հասկանալի է, որ բացահայտորեն հանդես գալ հայրենադարձության դեմ, կնշանակեր իրեն լիովին մերկացնել որպես սփյուռքահայերի ամենանվիրական իղձի հակառակորդի։

Բյուրոյականները երբեք չեն մոռանում բարոյական-քաղաքական այն հարվածը, որ նրանք ստացան 1946—1947 թթ. մասսայական հայրենադարձության ժամանակ։ Երբ սկսվեց այդ շարժումը, բյուրոն գործի դրեց իր տեռորիստական խմբերը, որոնք տասնյակ ակտեր կատարեցին առաջադեմ գործիչների, հայրենադարձության կազմակերպիչների դեմ. իսկ նրա մամուլը զրպարտչական կամպանիա սկսեց Սովետական Հայաստանի դեմ՝ նպատակ ունենալով ձախողել հայրենադարձությունը։ Իսկ արդյո՞ւնքը։ Դաշնակցության հազարավոր շարքայիններ ու մտավորականներ ոչ միայն հեռացան կուսակցությունից, այլև մամուլում, հրապարակորեն դատապարտեցին հայրենադարձության նկատմամբ բյուրոյի հակաազգային, դավադրական քաղաքականությունը։

Ահա թե ինչու անցած տասնամյակում բյուրոն դիմեց նոր գործելակերպի։ Նրա մամուլը հանդես եկավ հայրենադարձության պաշտպանությամբ, երբեմն դրվատելով Սովետական Հայաստանի կառավարության այս քայլը։

Սփյուռքում ընդհանուր համոզում դարձավ և համընդհանուր ճանաչում գտավ այն տեսակետը, որ տարագիր հայությանն սպառնացող ձուլման վտանգի դեմ մղվող պայքարի հաջողության գլխավոր և վճռական նշանակություն ունեցող գործոնը՝ դա վերածնված հայրենիքի գոյությունն է, նրա



աջակցությունը, նրա հետ կապերի ստեղծումը, երիտասարդ սերնդին հայրենիքով խանդավառելը։ Ահա թե ինչու ամբողջ գաղթաշխարհը այնքան ջերմորեն է ողջունում սփյուռքի հետ կապերը սերտացնելու, գաղթօջախներին աջակցելու ուղղությամբ հայրենիքի իշխանությունների ամեն մի քայլը։ Բացահայտորեն հանդես գալ Սովետական Հայաստանի կառավարության միջոցառումների դեմ, կնշանակեր դրսևորել իրեն իբրև տարագիր հայության ազգային շահերի հակառակորդ։ Ուստի բյուրոն և նրա մամուլը խոսքով սկսեցին պաշտպանել այդ կապերի զարգացումը, հայրենիքի ձեռնարկած քայլերը։

Համառոտ սրանք են այն ոչ լրիվ դրդապատճառները, որոնք ստիպեցին դաշնակցության ղեկավարությանը վերանայելու իր գործելակերպը, բայց ոչ իր քաղաքականության հիմնական սկզբունքներն ու նպատակը։

Դաշնակցության որոշ թերթեր, նույնիսկ սկսեցին կեղծավորությամբ մեղա գալ, թե «Մեր քննադատություններուն մեջ սխալներ գործեր ենք, սայթաքումներ ունեցեր ենք։ Մարդ ենք, մանավանդ հայ մարդ, կրքոտ, ցասկոտ և դյուրահույզ։ Մանավանդ երբ կուսակցական պայքարի առանցքն ու լծակը հայ ժողովրդի և Հայաստանի ապագան է» («Հայրենիք», 2.7.1966 թ.)։

«Հայրենիք»-ները «զղջում են»։ Բայց ո՛չ, դա զղջում չէ։ Միայն միամիտները կարող են հավատալ, որ նրա պայքարի առանցքն ու լծակը «հայ ժողովրդի և Հայաստանի ապագան է»։ Դաշնակցության հիսուն տարիների հակասովետական, հակաազգային քաղաքականությունը վկայում է, որ նրա պայքարի «առանցքն ու լծակը» եղել ու մնում են նախարարական աթոռների վերանվաճման ձգտումը, հայ ժողովրդի մերժած ու նզոված հին կարգերի վերականգնումը, ինչքան էլ դա ցնորամիտ թվա։

Դաշնակցությունը, ելնելով նոր պայմաններից ու իրադրությունից, փոխել է իր գործելակերպը, ինչ վերաբերում է իր քաղաքականությանն ու նպատակներին, ապա նա մազաչափ անգամ նահանջ չի կատարել։

«Մենք... այնքան ջերմորեն փափագում ենք սովետների տիրապետության կործանումը», գրում է նույն «Հայրենիք»-ը։ «Թշնամի ենք ու թշնամի կմնանք հայրենի մեր հողերուն վրա ծանրացող վարչակարգին»— ասված է դաշնակցության Ամերիկայի կենտկոմի հայտարարության մեջ («Հայրենիք», 27.2.1966 թ.)։ Հենց այդ նպատակով դաշնակցությունը իր ժամանակին ծառայեց հիտլերականներին, իսկ նրանց կրախից հետո դարձավ ամերիկյան իմպերիալիզմի սպասավորը։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ դիվերսիոն, քայքայիչ աշխատանքի համար ամերիկյան իմպերիալիստները հավաքագրել են այդ երկրներից փախած ու վռնդված բոլոր նախկին կառավարողներին ու հակահեղափոխական ուժերին և ստեղծել «Գերյալ ազգերի ազատագրության» կազմակերպությունը։ Դաշնակցությունը այդ կազմակերպության ակտիվ անդամներից մեկն է։ Քաջալերված այն բանից, որ ԱՄՆ-ի պետական գործիչները, սենատորները, հետադիմական կուսակցությունների լիդերները հաճախակի են մասնակցում «Գերյալ ազգերի ազատագրության» կազմակերպության մեջ մտնող ուժերի, այդ թվում և դաշնակցության ժողովներին, տոնահանդեսներին, ճառեր են ասում, խոստումներ տալիս սովետական հանրապետությունները «ազատագրելու» մասին, դաշնակ շեֆերը շարունակում են հույսեր կապել վաղեմի «բարեկամների» հետ, հանդես գալով սոցիալիստական աշխարհի դեմ իմպերիալիստական նոր պատերազմ հրահրողներում։

Ամերիկյան հետախուզության առաջադրանքով Սիրիայում ստեղծված և ապա մերկացված՝ դաշնակցության լրտեսական կազմակերպության Դամասկոսյան դատավարության ժամանակ, դատարանի այն հարցին, թե «Որո՞նք են Հայաստանը վերագրավելու միջոցները», դաշնակցության գործիչ, լրտես Արշակ Տարոյանը աներկմտորեն պատասխանեց. «Սպասողական դիրք մը որդեգրել, մինչև որ ծագի համաշխարհային պատերազմ մը Ռուսիո և հակահամայնավար այլ պետություններու միջև։ Իսկ մենք՝ դաշնակցականներս, այս առիթեն օգտվելով, պիտի օժանդակենք համայնավարության դեմ պատերազմող պետություններուն, Հայաստանը վերագրավելու համար» («Արարատ», 2.6.1962 թ.)։

Եվ դաշնակցության քարոզչական մեքենան ամբողջովին ծառայում է նոր պատերազմի հրահրմանը, հանդես է գալիս միջազգային լարվածությունը թուլացնելու և հատկապես ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի հարաբերությունների բարելավման ամեն մի մտքի ու քայլի դեմ։ Երբ վերջին ընտրությունների ժամանակ ԱՄՆ-ի պրեզիդենտության թեկնածու Հեմֆրին նախընտրական ճառում, հասկանալի նկատառումով, հայտարարեց, որ եթե ինքը նախագահ ընտրվի, ապա «սովետական ղեկավարների հետ հանդիպումներով կփորձի խաղաղ լուծում գտնել այն խնդիրների, որոնք վտանգում են միջազգային խաղաղությունը», ամերիկյան հետադիմական մամուլին ձայնակցելով, դաշնակցության մամուլը անհապաղ հանդես եկավ այդ հայտարարության քննադատությամբ։ Ջրպարտելով Սովետական Միության արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը, «Ազդակ»-ը գրեց. «Սովետներու քաղաքական և զինվորական նոր հակամարտություններու լույսին տակ որքան ճիշտ է որ վաղվան նախագահը այժմեն պատրաստակամություն բանաձևե խոսքի նստելու սովետական ղեկավարներու հետ... Ոչ ոք կրնա իրավունք զգալ հաստատելու՝ թե հերթական խոսակցությունները Քրեմլի հետ, կրնա որևէ իմաստ ունենալ», որ «համաշխարհային քաղաքական միտքը» չի կարող «արդյունք հուսալ որևէ բանակցութենե» (30.10.1968 թ.)։

Եվ այսպես, դաշնակցությունը կանգնած է բոլոր այն հետադիմական ուժերի կողքին, ովքեր ձգտում են սրել միջազգային լարվածությունը, վերածնել սառը պատերազմը, այն վերածել տաք պատերազմի, փույթ չէ, որ նոր պատերազմը մոխրակույտերի կվերածի աշխարհամասեր, հրաշակերտ քաղաքներ, միլիոնների կզրկի կյանքից, կկործանի քաղաքակրթությունը։ Այդ ճանապարհով բյուրոյականները ցանկանում են նախարարական աթոռներ վերստանալ։

Դաշնակցության քարոզչության սուր ծայրը ուղղված է սովետական կարգերի, լենինյան ազգային քաղաքականության, ռուս և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ հայ ժողովրդի կնքած եղբայրական դաշինքի դեմ, այլ կերպ՝ մեր ժողովրդի վերածննդի, նրա գոյատևման, նրա անվտանգության, երջանիկ այսօրվա և հոյակապ ապագայի գլխավոր գործոնների դեմ։

Այսքանից հետո, նրա քաղաքականության մեջ «շրջադարձ» տեսնել, նշանակում է ինքնախաբեությամբ զբաղվել։

Ոմանք պնդում են, որ ոչ մի նշանակություն չպետք է տալ Հայաստանի «ազատագրման», «անկախության», իր տիրապետությունը վերականգնելու մասին դաշնակցության շաղակրատանքին, որովհետև դա կատարյալ ցնորամտություն է, որին դժվար թե հավատան նույնիսկ իրենք՝ դաշնակցականները։ «Ամենեն լուրջ քննության արժանապատվությունից վար այս քաղաքական



անհեթեթությունը,— գրում է Կահիրեի «Ջահակիր» թերթը,— ոչ թե նրա համար է, որ իրենք իրենց ասածներին հավատում են, ոչ թե նրա համար, որ դա նրանց անխախտ համոզումն է, այլ՝ նրա համար է՝ որովհետև ուզում են դեռ ընդերկար ապրել» (4.7.1968 թ.)։

Դա միանգամայն ճիշտ է։ Բայց հենց «ընդերկար ապրելու» համար դաշնակցությունը շարունակում է քայքայիչ ու պառակտիչ գործունեությունը գաղթօջախներում, թշնամանք սերմանում Սովետական Հայաստանի կարգերի նկատմամբ, ձգտում է իր ազդեցությանը ենթարկել տարագիր հայությանը և նրան հակադրել հայրենիքին։

«Գերյալ ազգերի ազատագրության» կազմակերպության հետ միասին, նա շարունակում է հակակոմունիզմի քարոզչությունը, կատարում ամերիկյան իմպերիալիզմի և նրա հետախուզական օրգանների առաջադրանքը։

Ամերիկահայ «Նոր օր» թերթը գրում է. «Եթե դաշնակ ղեկավարները քիչ մը խիղճ ունենային և ազգային արժանապատվություն, օտար հրապարակներու վրա ծախու չէին հաներ հայուն հայրենիքն ու դարավոր եկեղեցին, միջազգային համայնավարության դեմ պայքարելու ողորմելի պատրվակով։ Եվ ասոնք բոլորը անոր համար, որ մի քիչ ոսկի և արծաթ ստանան օտարներե, ի վարձատրություն իրենց լրտեսական և մատնչական զզվելի արարքներու» (27.3.1962 թ.)։

Այսպիսին է դաշնակցության բարոյական-քաղաքական կերպարանքը։

Այժմ անդրադառնանք դաշնակցության մամուլի այն կեղծ խոսքերին ու պնդումներին, որոնք որակվում են որպես «շրջադարձի» նշաններ։

Վերցնենք հայրենադարձության հարցը։ «Հայրենիք»-ը գրում է. «Հ. Յ. Դաշնակցության վերաբերումը և կեցվածքը ներգաղթի, ավելի գեղեցիկ և իմաստալի բառով հայրենադարձության հանդեպ, սկիզբեն մինչև վերջը եղած է վճռաշեշտ ուժգնությամբ՝ դրական և երբեք ժխտական» (27.1.1966 թ.), իսկ «Ազդակ»-ը պնդում է, թե դաշնակցությունը արտագաղթը աղետ է համարել, որ «բացարձակապես դեմ ենք արտագաղթին» (5.8.1969 թ.)։

Դրանք կեղծ խոսքեր են։ Հանրահայտ է, թե 1946—1947 թթ. մասսայական հայրենադարձության ժամանակ դաշնակցությունը ինչպիսի համառությամբ, պրովոկացիաներով, քաղաքական շանտաժով ու տեռորիստական գործողություններով փորձում էր խանգարել հայրենադարձությունը։ Մի կողմ թողնենք անցյալը և անդրադառնանք ներկայիս հայրենադարձության նկատմամբ նրա գրաված դիրքին։

Երբ 1962 թվականին հայտնի դարձավ Սովետական Հայաստանի կառավարության նոր որոշումը հայրենադարձության մասին և լայնորեն սկսվեցին նախապատրաստությունները, ապա Մերձավոր Արևելքի հայաշատ գաղթօջախներում իսկույն իր բաժանմունքներն ստեղծեց տխրահռչակ Ջորջ Մարտիկյանի գլխավորած ԱՆՋԱ-ն («Անհայրենիք հայերի օգնության ամերիկյան ազգային կոմիտե»-ն) և սկսեց կազմակերպել հայերի արտագաղթը դեպի Ամերիկա, Կանադա, Ավստրալիա, Հարավային Ամերիկա։ Մի խոսքով, այն երկրները, որտեղ տարագիր հայերի, մասնավորապես նրա երիտասարդ սերնդի ուծացման պրոցեսը ողբերգական չափերի է հասել։ Դա հայրենադարձության դեմ ուղղված մի քայլ էր, որը շարունակվում է մինչև օրս։ Սփյուռքահայ բոլոր կազմակերպություններն ու միությունները, ամբողջ մտավորականությունն ու պարբերական մամուլը խոր զայրույթով դատապարտել և շարունակում են դատապարտել ԱՆՋԱ-ի գործունեությունը որպես

տարագիր հայության ազգային շահերի դեմ ուղղված գործողություն: «Մեզի համար հույժ դժբախտաբար,— գրում է արգենտինահայ «Սևան» թերթը,— ԱՆՁԱ-ի երևութապես մարդասիրական գործը փաստորեն ազգային աղետ մըն է պարզ այն պատճառով, որ իրականության մեջ, դեմ անցյալ տասնամյակին, ոչ թե տարագիրներ փրկեց, այլ բնիկներ տարագրեց, ոչ թե տնաշինության նպաստեց, այլ ազգայնորեն տնաքանդությամբ զբաղեցավ, ուժգնապես հակադրվելով հայրենադարձության և սատարելով ազգացրվումին» (23.11.1969 թ.):

ԱՆՁԱ-ի դեմ բարձրացած ընդհանուր զայրույթի ճնշման տակ դաշնակցության մամուլի որոշ օրգաններ փորձեցին իրենց մեղսակցությունը քողարկել այսպիսի դատարկ ֆրազներով. «Վերջ դնենք դեպի Ավստրալիա և Ամերիկաներ խուճապահար կամ բախտախնդիր մեր չվումներուն» («Հայրենիք», 30.1.1966 թ.): Ինչպես տեսնում ենք, դատապարտվում են արտագաղթվողները և ոչ թե նրա կազմակերպիչները: Իսկ իրականության մեջ դաշնակցությունը եղել ու մնում է Ջորջ Մարտիկյանի աջ թևը նրա ազգավնաս գործունեության մեջ: Ջ. Մարտիկյանը դաշնակցության ժողովների, տոնակատարությունների, հանդիսավոր ճաշկերույթների ամենապատվավոր հյուրն է, դաշնակցության սնող «մայրը»:

«Հայրենիք»-ը հրճվանքով գրում է. «Երեկ խմբագրությունս այցելեց Լիբանանի շրջանի մեր բազմաշխատ ընկերներեն Հովհաննես Ջագրյանը... Ընկ. Ջագրյան հանրանպաստ և կարևոր դեր կկատարե Պեյրութի մեջ, ԱՆՁԱ-ի միջոցով դեպի Մ. Նահանգներ մեկնող հայրենակիցներու ուղևորական գործերու կարգադրությամբ» (10.12.1964 թ.):

Ահա թե ովքեր են Ջ. Մարտիկյանի գործակիցները:

1969 թվականին ԱՄՆ ուղևորություն կատարելիս, Անթիլիասի կաթողիկոսության գահակալ Խորեն Բարոյանը, դաշնակցության լիդերների հրճվալից հայացքների տակ Ջորջ Մարտիկյանի կուրծքը զարդարեց «Կիլիկիայի իշխան» շքանշանով:

Արտագաղթի մասին ԱՆՁԱ-ի ծրագրերը, կոչերն ու հայտարարությունները իրենց պատվավոր տեղն ունեն միայն դաշնակցության մամուլի էջերում: Ամերիկահայ «Պայքար» թերթը, անդրադառնալով ԱՆՁԱ-ի գործունեությանն ու նրա հետ դաշնակցության համագործակցությանը, գրում է.

«Եվ ահա, այսպիսի ապազգային ծրագրի մը լծված է «հայ ժողովուրդի» երբեմնի պաշտպան դաշնակցությունը, որ հակառակ իր ջատագոված ազգայի՜ն սկզբունքներուն, հակառակ իր գոյությունը ազգային պահանջներուն և գերագույն շահերուն հետ հաշտեցնելու ծիծաղելի ճիգերուն, կհովանավորե ԱՆՁԱ-ի նման մարմինը, որ իր էությամբ իսկ վերք մըն է սփյուռքի սրտին...: ԱՆՁԱ-ի կողմե պատրաստված ծրագիրը դաշնակցության կողմե հովանավորված շարժումը ժխտումն իսկ է հայը հայ պահելու հսկա և նվիրական աշխատանքին» (23.8.1966 թ.):

Այսպիսով, լիովին կեղծիք են հայրենադարձությունը պաշտպանելու, արտագաղթերը դատապարտելու մասին դաշնակցության մամուլի խոսքերը: Դրանք նպատակ ունեն միայն քողարկելու հայրենադարձության դեմ պայքարը զարտուղի ճանապարհով:

Նույնքան կեղծիք են հայրենիքի և սփյուռքի մերձեցման, նրանց միջև մշակութային կապերի ու հարաբերությունների սերտացման, հայապահպանման կռվանները զորացնելու անհրաժեշտության մասին նրա շաղակրատանքը: Եթե մենք նկատի ունենանք և ընդունենք այն իրողությունը, որ օտար միջավայրի պայմաններում, տարագիր հայության սպառնացող ձուլման վտանգի առկայությամբ հայ առաքելական եկեղեցին որոշակի դրական դեր է խաղում, որ նա ևս հայրենիքի հետ գաղթօջախների մերձեցման օղակներից մեկն է, ապա պետք է ընդունել, որ դաշնակցության կողմից այդ եկեղեցում սերմանած պառակտումը, Անթիլիասի (Կիլիկիայի) կաթողիկոսության գրավումն ու հակադրումը Էջմիածնին, առնվազն մի դավադրություն է հայ ժողովրդի տարագիր հատվածի ազգային շահերի դեմ:

Հանրահայտ է, որ սփյուռքը հայրենիքից կտրելու, իր ազդեցությանը ենթարկելու նպատակով դաշնակցությունը տարիներ շարունակ պայքարել է ամենից առաջ իր ազդեցությանը ենթարկելու հայ առաքելական եկեղեցին: Վերջիվերջո 1956 թվականին նրան հաջողվեց Լիբանանի հետադեմ կառավարող, պրեզիդենտ Շամունի աջակցությամբ, նույնիսկ ոստիկանության միջամտությամբ, գրավել Անթիլիասի կաթողիկոսությունը, բռնագրավել և Անթիլիասի իշխանությանը ենթարկել Էջմիածնի կաթողիկոսության մի շարք արտասահմանյան թեմեր: Այժմ Անթիլիասի կաթողիկոսությունը, նրա եկեղեցիները դաշնակցության ձեռքին դարձել են ոչ միայն Սովետական Հայաստանի, այլև սփյուռքահայ առաջադիմական ուժերի դեմ գաղափարական-քաղաքական պայքարի գործիքներ:

ԱՄՆ կատարած ուղևորության ժամանակ Խորեն Բարոյանը նույնիսկ ճառով հանդես եկավ դաշնակցության Ամերիկյան շրջանի համագումարում և հայտարարեց. «Մենք չենք հասկնար թե ուրկե՛ և ինչո՛ւ որոշ մարդիկ կմտածեն, որ հայրապետի մը ներկայությունը կուսակցության մը հրապարակային հանդիսության կրնա անպատեհ նկատվիլ...: Երեսուն տարիե ի վեր, անհատապես թե ի հանգամանքե կապ ենք պահեր դաշնակցականներու և դաշնակցության հետ... Այսօր ալ կգործակցինք անոնց հետ, վաղն ալ պիտի գործակցինք» («Հայրենիք», 11.7.1969 թ.):

Դաշնակցության շեֆերի և Ջորջ Մարտիկյանի ուղեկցությամբ Բարոյանն ընդունվեց ԱՄՆ-ի պետական գործիչների, սենատորների, պրեզիդենտ Նիքսոնի կողմից: Այդ հանդիպումների ժամանակ նրա միակ խնդրանքն էր ամերիկյան «արդարամիտ» կառավարողներից՝ «ազատագրել» Հայաստանը: Ամերիկյան գործիչները, իհարկե, ժլատ չգտնվեցին խոստումներ տալու մեջ:

Եվ այսպես, պառակտված եկեղեցին դաշնակցության ձեռքին վերածվել է մի գործիքի՝ հայրենիքի դեմ թշնամանք սերմանելու, հայրենիքի և սփյուռքի մերձեցումը արգելակելու համար:

Դաշնակցության մամուլում Սովետական Հայաստանի տնտեսական, գիտական, մշակութային նվաճումների մասնակի լուսաբանումը չի նշանակում, թե նա հրաժարվել է մեր ժողովրդի կյանքի և կոմկուսակցության ու սովետական կառավարության քաղաքականության հասցեին չարամիտ զրպարտությունից: Ընդհակառակը, այդ նոր գործելակերպի նպատակն էլ հենց այն է, որ ճշմարտության տեսք տա իր հակասովետական քարոզչությանը: Այդ մամուլը փորձում է ընթերցողներին համոզել, թե ինքը քննադատում է հայրենիքի «թերինները» հանուն «հայրենիքի սիրո»: «Մեր քննադատության նպատակն է եղեր,— գրում է «Հայրենիք»-ը,— պաշտպանել Հայաստանի և հայ ժողովուրդի շահերը» (2.7.1966 թ.): Ինչպիսի՜ հոգատարություն:

Անդրադառնալով այդ շառլատանությանը, «Պայքար» թերթը գրում է.

«Այդ «քննադատությունը» անկեղծ չէ, սրտացավ չէ, անոր նպատակը

պարզապես Հայաստանը վարկաբեկելն է, մանավանդ սփյուռքահայության աչքին...: Անոնց նպատակը թերթ մը շտկելը չէ արդեն, այլ իրենց ընթերցողներուն մտքին մեջ շփոթություն առաջ բերելը, պղտորել անոնց հոգին, թույն ներարկել անոնց» (20.1.1967 թ.):

Այս բնագավառում էլ դաշնակցության մամուլը անցել է նոր մեթոդի: Նրա էջերում քիչ են երևում «սեփական» զրպարտչական նյութերը: Հիմնականում նա արտատպում է Սովետական Հայաստանի մամուլում երևացող յուրաքանչյուր քննադատական նյութ և սկսում «մեկնաբանել»:

Անդրադառնալով «Յուսաբեր» թերթում կիրառվող այդ մեթոդին, «Արև» թերթը գրում է.

«Հայաստանյան թերթերուն մեջ լույս տեսած քննադատական հոդվածները իննսուն տոկոսով կարտատպվին «Յուսաբերի» մեջ, այն ատեն, ի հայտ կուգա «Յուսաբերի» իսկական պղտոր հոգին, մութ նպատակները... Ատենին մը ի վեր «Յուսաբեր», քանի որ չկրնար մայր հայրենիքի մասին իր զրպարտությունները, քրթմնջյունները, քննադատությունները կատարել ինքնագիր հոդվածներով ու խմբագրականներով, ուրեմն, սկսած է դիմել այլ միջոցի մը, ցույց տալու համար, թե Հայաստանի մեջ ինչպիսի անտանելի կացություն կտիրե... արտատպելով Հայաստանյան թերթերե քննադատական հոդվածներ...: Այսպես, նախ ոչ ոք կրնա բան մը ըսել, թե «Յուսաբեր» կսևցնե հայրենիքը, և երկրորդ, դիտողություն ընողին անմիջապես կարելի է պատասխանել, թե մենք չենք այդ քննադատությունները ընողը այլ իրենք՝ հայաստանցիները» (2.1.1968 թ.):

Եվ այսպես, հանրապետության թերթերում տպագրված յուրաքանչյուր քննադատական հոդված, նամակ, երգիծական նյութ և ծաղրանկար իսկույն դառնում է դաշնակցության մամուլի ուշադրության առարկան: Անմիջապես արտատպելով դրանք, այդ թերթերը իրենց կամայական ու նենգամիտ մեկնաբանություններով սկսում են զրպարտել մեր կուսակցության և սովետական իշխանության քաղաքականությունը, խեղաթյուրել հայրենիքի իրականությունը: Օրինակ, արտատպելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի մասին մեր թերթերում տպագրված հաշվետվությունը, որտեղ քննադատական դիտողություններ կային ժողովրդական կրթության ասպարեզում եղած թերությունների մասին, կամ «Գրական թերթ»-ից արտատպելով «Զրույցներ ՍՍՀՄ պատմությունից» դասագրքի մասին քննադատական գրախոսականը, դաշնակցության թերթերն սկսեցին զրպարտչական մեկնաբանություններ անել այն մասին, թե «Հայաստանում ռուսացման քաղաքականություն է տարվում», իսկ «Ազդակ»-ը սևով սպիտակի վրա գրեց այն զավեշտը, թե Հայաստանում դպրոցականը «չի սորվիր, չի կրնար սորվիլ հայոց պատմություն, հնարավորություն չունի»:

Եվ այսպես, սնանկ է այն դատողությունը, թե դաշնակցությունը «շրջադարձ» է կատարում: Իրականում նա ընտրել է նոր տակտիկա, նոր ձևեր ու մեթոդներ՝ իր հակասովետական քաղաքականությունը շարունակելու համար: Հիսուն տարի շարունակ նա, դաշն կնքած բոլոր հակասոցիալիստական, հետադիմական ուժերի հետ, դավում է հայրենիքին, շարունակում է սփյուռքահայ երիտասարդ սերնդի միտքը թունավորել հակակոմունիզմի թույնով, նրա մեջ ատելություն ու թշնամանք սերմանել իր վերածնված սոցիալիստական հայրենիքի նկատմամբ: Ուստի նրա քաղաքականության մերկացումը ոչ մի օր չպետք է հանվի օրակարգից:



Այս առումով քննադատության չի դիմանում այն մտայնությունը, թե քանի որ դաշնակցությունը քաղաքականապես ու բարոյապես սնանկացել է ու կորցրել ոտքի տակի հողը, ապա նա չի կարող որևէ վտանգ ներկայացնել, հետևաբար կարիք չկա «աղմկել» նրա մասին, այլ կերպ՝ պետք է դադարեցնել պայքարը նրա դեմ: Ավելին, որոշ «խելոքներ», ավելի հեռուն գնալով, առաջարկում են լռությամբ արհամարհել դաշնակցությանը: Դժվար չէ տեսնել այս դատողությունների անհիմն լինելը:

Այդ մտայնությունը խորապես սխալ է տեսականորեն. որովհետև այն հակասում է դասակարգային պայքարի մարքս-լենինյան թեորիային, այն առավել ևս սխալ է քաղաքականապես ու գործնական տեսակետից:

Այո, դաշնակցությունը բարոյապես-քաղաքականապես և գաղափարապես սնանկացել է, մերժվել մեր ժողովրդի կողմից: Բայց, փաստ է, որ նա գոյություն ունի: Մենք այս հոդվածում նպատակ չենք դրել վերլուծել նրա գոյության նախադրյալները: Առայժմ արձանագրենք այն փաստը, որ նա գոյություն ունի և գործում է բոլոր հայաշատ գաղթօջախներում: Ամերիկյան հետախուզական օրգանների և որոշ հայ միլիոնատերերի առատ ֆինանսական միջոցներով նա ստեղծել է իր քարոզչական մեքենան, հրատարակում է թերթեր, պարբերականներ, գրքեր ու գրքույկներ, ստեղծել է իր երիտասարդական և կանանց կազմակերպությունները և շարունակում է իր քայքայիչ աշխատանքը: Դաշնակցությունը իր քարոզչական մեքենայով հակակոմունիզմի ջատագովն է հայկական գաղթօջախներում: Տարագիր հայության և, հատկապես, նրա երիտասարդ սերնդի շրջանում հակասովետական, հակահայրենասիրական թույն է սրսկում նա և ամեն տեսակ միջոցներով ձգտում խանգարել սփյուռքի և հայրենիքի մերձեցմանը:

Ներկա շրջանում, երբ միջազգային թատերաբեմում սրվում է գաղափարական պայքարը, երբ իմպերիալիզմը շարունակում է գաղափարական դիվերսիան սոցիալիզմի դեմ, երբ ամերիկյան իմպերիալիզմն իր գործիքն է դարձրել «Գերյալ ազգերի ազատագրության» կազմակերպությունը, որի ակտիվ մասնակիցն է դաշնակցությունը, աններելի սխալ կլիներ թերագնահատել նրա դեմ պայքարի անհրաժեշտությունը:

Դաշնակցության դեմ մղվող պայքարը միշտ եղել և մնում է Հայաստանի կոմկուսակցության գաղափարական գործունեության կարևոր և անխզելի մասը: ՀԿԿ բոլոր համագումարները մատնանշել են այդ պայքարի անհրաժեշտությունը:

Հարկ է նկատել, որ դաշնակցության դեմ պայքարը առավելապես մղվում է պատմական ասպեկտով: Գրականության մեջ գերազանցապես մերկացվում է դաշնակցության անցյալում վարած՝ մեր ժողովրդի ազգային և սոցիալական շահերին հակասող քաղաքականությունը: Դաշնակցության՝ մասնավորապես 1917—1920 թվականների գործունեությունը, նրա արկածախնդրական քաղաքականությունն ու գաղափարախոսությունը մերկացնելու հետ միասին, ավելի մեծ ուշադրություն պետք է նվիրել սփյուռքում նրա արդի քաղաքականության մերկացմանը:

Դաշնակցության դեմ պայքարը մեր գաղափարական ճակատի առաջնահերթ խնդիրներից է:

Կ. Հ. ՊՈՂՈՍՅԱՆ, Լ. Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ

# ՀԱՅ ԿԻՆՈՅԻ ԱՐՇԱԼՈՒՅՍՆ ՈՒ ՆԵՐԿԱՆ

Մեզ համար բոլոր արվեստներից ամենակարևորը կինոն է:

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

*XX դարի սկիզբը նշանավորվեց պատմական պրոցեսի զարգացման արտակարգ արագացմամբ, ժողովրդական մասսաների զարթոնքով, հասարակական-քաղաքական գործունեության մեջ նրանց ներգրավմամբ: Այս նոր երևույթը չէր կարող չընդլայնել արվեստի կողմից հետազոտվող կյանքի շրջանակները, ինչպես նաև ժողովրդական լայն մասսաներին չկապել արվեստի հետ, դուրս բերելով նրանց խավարից ու տգիտությունից: Հասարակության առաջընթացը, գիտության ու տեխնիկայի զարգացումը անխուսափելիորեն հանգեցրին այն նոր արվեստի ծննդին, որը պետք է անմիջականորեն դիմեր միլիոնավոր մարդկանց, ձևավորեր նրանց հայացքներն ու համոզմունքը, գեղագիտական ճաշակն ու զգացմունքները:*

*Կինոն նոր հորիզոններ բացեց ռեալ իրականության օրինաչափությունների գեղարվեստական վերարտադրման համար: Դարի բարդ և հասարակական խոշոր տեղաշարժերով լեցուն իրականությունը պահանջում էր նրա բացահայտման նոր, մոնումենտալ, սինթետիկ ձևեր: Մաքսիմ Գորկին մի առիթով նկատել է, որ սոցիալիստական հեղափոխության թեմայի բովանդակությունը, ներքին խորությունը արվեստից պահանջում են արտահայտման այնպիսի «կոմպլեքսայնություն», որը նմանվի հզոր սիմֆոնիայի:*

*Հենց այդպիսի արվեստ է կինոն:*

*Սակայն անհրաժեշտ էր ունենալ մեծ Լենինի խորաթափանց հեռատեսությունը՝ դեռևս նոր արվեստի օրորոցում կռահելու նրա խոշոր ապագան ու տեղը ավանդական մյուս արվեստների շարքում:*

*Սոցիալիստական հեղափոխության հումանիստական վեհ գաղափարները, հեղափոխական խոր վերափոխությունները դարձան սովետական կինոարվեստի ակունքը, արտահայտչական նոր ձևերի այն հիմքը, որի վրա բարձրացավ հետագայում համաշխարհային ճանաչման արժանացած սովետական կինոարվեստը: Առանց այդ վեհ գաղափարների չէին ստեղծվի Ս. Էյզենշտեյնի ու*



*Զ. Վերտովի, Վ. Պուդովկինի և Ա. Դովժենկոյի անմահ կինոժապավենները:*

*Կինոարվեստի հասարակական մեծ առաքելության, նրա խնդիրների կարևորության լենինյան այս ըմբռնումն ուղենիշ աստղ է եղել սովետական բոլոր կինեմատոգրաֆիստների, կինոգործիչների համար:*

* * *

*Մտովի տեղափոխվենք 1920 թվականի նոյեմբերի Հայաստանը: Հայոց լեռներում ճառագել է ազատության արշալույսը, թոթափվել է դաշնակցական տիրապետության լուծը, երկրում հաստատվել է սովետական իշխանություն: Ավերակներ, աղքատություն, սով, տասնյակ հազարավոր որբեր ու համաճարակ— ահա նորաստեղծ սովետական հանրապետության ստացած ժառանգությունը: Անհրաժեշտ էր բուժել համաշխարհային ու քաղաքացիական պատերազմների վերքերը, վերականգնել տնտեսությունը, զարգացնել կուլտուրան, կառուցել նոր, սոցիալիստական հասարակարգ: Այս բարդ խնդիրների լուծումը հնարավոր դարձավ ռուս մեծ ժողովրդի, կոմունիստական կուսակցության ու նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի օգնության և ուշադրության շնորհիվ:*

*Նախահեղափոխական Հայաստանը չուներ կինոգործի ոչ մի կազմակերպված օջախ, ռեժիսյոր ու օպերատոր, կինոխցիկ: Միայն Երևանի ու Ալեքսանդրապոլի մասնավոր հիմունքներով գործող երկու-երեք փոքրիկ կինոթատրոններում ցուցադրվում էին արևմտյան ու ռուսական, այսպես կոչված՝ զվարճալի ֆիլմեր. գյուղական վայրերում գաղափար իսկ չունեին կինոյի մասին:*

*Հայ թատրոնի գործիչներից ոմանք իրենց ուժերը փորձել էին ռուսական ֆիլմերում, սակայն դրանք բացառություններ էին: Ինչպես կինոարդյունաբերության, այնպես և կինոարվեստի ստեղծումն ու զարգացումը Հայաստանում պայմանավորված են սովետական կարգերի հաստատմամբ:*

*Իր գոյության առաջին իսկ օրերից Սովետական Հայաստանի կառավարությունն արտակարգ ուշադրություն է նվիրում հանրապետությունում կինոգործի զարգացմանը: Այժմ նույնիսկ դժվար է պատկերացնել, որ այդ տարիներին արդեն Զանգեզուրի, Դարալագյազի հեռավոր շրջաններում, Արարատյան դաշտավայրի գյուղերում ու Դիլիջանում, շարժական ապարատների միջոցով, սկսում են ցուցադրել հեղափոխական թեմայով վավերագրական կինոֆիլմեր, որոնք ջերմ ընդունելություն են գտնում: Այդ և հետագա տարիներին Հայաստանի կառավարությունը գործնականում իրականացնում էր Վլադիմիր Իլյիչի՝ Ն. Ա. Լիտկենսին գրած նամակում արտահայտած այն միտքը, թե անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել կինոգործի կազմակերպմանն Արևելքում, որտեղ այն մեծ հնարավորություն է ընձեռում հաջող պրոպագանդայի համար: 1920 թ. դեկտեմբերի 17-ին, լուսավորության ժողկոմատի հրամանով, բոլոր կուլտլուս կազմակերպությունները, ինչպես և կինեմատոգրաֆը, ենթարկվում են տեղական հեղկոմների կուլտլուսբաժիններին. հիմք է դրվում մասսաների լուսավորության ու դաստիարակության պետական ղեկավարության:*

*1922 թվականի օգոստոսին Երևանում, հանդիսավոր պայմաններում, բացվում է կենտրոնական բանվորական ակումբը՝ կից կինոթատրոնով: Ողջույնի խոսքով հանդես են գալիս լուսավորության ժողկոմ Ա. Հովհաննիսյանը, բանաստեղծ Ա. Վշտունին և Հայաստանի ժողկոմխորհի նախագահ Ս. Լուկաշինը: Շուտով սկսում են գործել նաև «Շիրակ» և «Նաիրի» կինոթատրոնները:*

*1923 թ. ապրիլի 16-ին, Հայաստանի ժողկոմխորհի որոշմամբ, ստեղծվում է պետուսկինո բաժնետիրական ընկերությունը, որի կանոնադրությունը*

նախատեսում էր գեղարվեստական ու վավերագրական կինոնկարների արտադրություն, հանրապետության կինոֆիկացիայի ցանցի ընդլայնում և կինոժապավենների վարձակալություն։ Նյութական սահմանափակ միջոցներով Հայաստանի կառավարությունը հիմք դրեց կինոարտադրությանը, մեծ ջանքեր գործադրելով արվեստների մեջ այդ ամենաժողովրդական ճյուղի զարգացման համար։

Այս շրջանում եռանդուն գործունեություն են ծավալում Հայաստանում կինոգործի պիոներներ Վ. Թոթովենցը, Ե. Խարազյանը, Ի. Կրասլավսկին, Դ. Դզնունին, նրանց քրտնաջան աշխատանքին ու խանդավառությանը շատ բանով է պարտական սովետահայ կինեմատոգրաֆիան։ Սովետական Հայաստանի կառավարության անդուլ ջանքերի ու հոգատարության շնորհիվ հայրենիք են վերադառնում և բուռն գործունեություն ծավալում հայ մշակույթի այնպիսի ականավոր գործիչներ, ինչպես՝ Մարտիրոս Սարյանը, Ալեքսանդր Թամանյանը, Ալեքսանդր Սպենդիարյանը, Ստեփան Աղաջանյանը, Ալեքսանդր Շիրվանզադեն, Եղիշե Չարենցը, Հակոբ Կոջոյանը, Ռոմանոս Մելիքյանը, Հովհաննես Աբելյանը, Վահրամ Փափազյանը, Լևոն Քալանթարը, Արշակ Բուրջալյանը։ Հայաստանում հաճախակի են լինում Գեորգի Յակուլովը, Ռուբեն Սիմոնովը...

Այս ամենը չէր կարող մեծապես չնպաստել հայ մշակույթի, ինչպես և կինոարվեստի զարգացմանը։ Արդեն 1924 թվականի վերջին էկրան է բարձրանում Խորհրդային Հայաստան 6 մասից բաղկացած վավերագրական ֆիլմը՝ հայ կինեմատոգրաֆիայի առաջնեկը, որի նյութը երկրի վերածնունդն էր, ավերված քաղաքների ու գյուղերի բարեկարգումը, ոռոգումը, մարդկանց փրկությունը համաճարակից, անօթևան երեխաների տեղավորումը, աշխատավոր մարդու առօրյան։ Կինոնկարն ստեղծել էին Դ. Դզնունին, Ե. Չուբարը, Պ. Ցուլյանը, գրող Կ. Միքայելյանը, օպերատոր Ի. Կրասլավսկին, նկարիչ Մ. Սարյանը և ուրիշներ. այն ունեցավ ապշեցուցիչ հաջողություն. ցուցադրումը վերածվեց ժողովրդական տոնի, արժանացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության IV համագումարի բարձր գնահատականին։ Կինոնկարն արտակարգ ընդունելություն գտավ արտասահմանում. ցուցադրվեց Նյու-Յորքի, Ալեքսանդրիայի, Բեյրութի և Մարսելի տասնյակ հազարավոր հայերի համար։ Ալ. Շիրվանզադեն, որ այդ օրերին Փարիզում էր, հետագայում գրել է. այդ կինոնկարը դիտող հայերը «...երջանկությունից լաց էին լինում՝ տեսնելով հարազատ վայրերը, թանկագին մարդկանց, մեր հայրենիքի վերածնունդն ու բարգավաճումը»։

Խոսելով Հայաստանում վավերագրական կինոնկարների ստեղծման մասին, անհրաժեշտ է անդրադառնալ օպերատոր Ա. Գ. Լեմբերգի գործունեությանը։ Հայաստանի հեղկոմի խնդրանքով Մոսկվայից գործուղվելով Երևան՝ Ա. Գ. Լեմբերգը պատմությանը թողեց անգնահատելի կինոժապավեններ, որոնք այսօր հազվագյուտ կադրեր են։

XI բանակի մուտքը Հայաստան, ժողովրդի ցնծագին դիմավորումը, սովետական իշխանության առաջին օրերը Երևանում, դաշնակցական մինիստրների ձերբակալումը, Հայաստանի երիտասարդ հեղափոխական կառավարության ղեկավարների գործունեությունը, առաջին շաբաթօրյակը Հայաստանում— ահա այն կադրերը, որոնցով ստեղծվեց Կարմիր Հայաստան կինոժապավենը, որը մեծ հաջողություն ունեցավ նաև Մոսկվայում։ Ա. Լեմբերգի նկարահանած բազմաթիվ կադրեր հետագայում օգտագործվեցին վավերագրական ու գեղարվեստական կինոնկարներում, մասնավորապես ականավոր կինոռեժիսոր Ա. Դովժենկոյի մասնակցությամբ ստեղծված Երկիր հայրենիում։



1925 թվականին ցուցադրվում է հայ գեղարվեստական առաջին կինոնկարը՝ Նամուսը, որից հետո, երկու տարում, էկրան են բարձրանում նաև Զարեն, Խաս-Փուշը։ Այս կինոնկարները նոր կազմակերպված Հայկինոյի համբավը դուրս են բերում հանրապետության սահմաններից։ Դրանց, ինչպես նաև Շոր և Շոր-շոր կինոկոմեդիայի բեմադրողն էր հայ ազգային կինոարվեստի մեծ երախտավոր և սկզբնավորող Համո Բեկնազարյանը։ Ռեժիսորը յուրովի էր նայում Արևելքին։ Ի տարբերություն արևմտյան բազմաթիվ կինոնկարների հեղինակների, որոնք Արևելքը պատկերում էին որպես պերճանքի ու էկզոտիկայի երկիր, հայ ռեժիսորը բացահայտում է Արևելքի ժողովուրդների կյանքի սոցիալական խոր հակասությունները, ավանդույթների ու նախապաշարմունքների ուժը, Արևելքը՝ ինչպես որ կա։

Համագործակցելով գլխավորապես հայ բեմի մի խումբ խոստումնալից ուժերի՝ Հր. Ներսիսյանի, Հասմիկի, Ա. Ավետիսյանի, Հ. Խաչանյանի, Ն. Մանուչարյանի և այլ դերասանների հետ, ռեժիսոր-բեմադրողն ստեղծեց ո՛չ միայն ուշագրավ շատ կինոնկարներ, այլև հարթեց ռեալիստական այն ուղին, որով զարգանալու էր հայ կինոարվեստը։ Առաջին հաջողությունները ոգևորիչ մեծ նշանակություն ունեցան։ Կինոյի շուրջն սկսեցին համախմբվել նշանավոր գրողներ, կոմպոզիտորներ, նկարիչներ։ Նոր անուններով համալրվեց ռեժիսորների և օպերատորների ցանկը։ Ռեժիսորական լավ գործերով սկսեցին հանդես գալ՝ Պ. Բարխուդարյանը, Ա. Մարտիրոսյանը, օպերատորներ՝ Գ. Բեկնազարյանը, հետագայում՝ Դ. Ֆելդմանը։

1925 թվականը սովետական բազմազգ կինեմատոգրաֆիայի կյանքում նշանավորվեց պատմական խոշորագույն իրադարձությամբ. էկրան բարձրացավ «բոլոր ժամանակների ու ժողովուրդների լավագույն ֆիլմը»՝ Ս. Էյզենշտեյնի Պոտյոմկին զրահանավը։ Հանճարեղ ռեժիսորը 1905 թ. ռուսական առաջին հեղափոխության էպիզոդներից մեկի հիման վրա ստեղծեց այնպիսի կինոնկար, ուր արվեստի անհավատալի ուժով բացահայտվեցին հեղափոխության ողջ էությունը, ժողովրդական մասսաների վճռական դերը պատմության մեջ, հեղափոխության հաղթանակի անխուսափելիությունը։

Պոտյոմկին զրահանավը ֆիլմի հեղափոխական պաթոսը արտակարգ ազդեցություն ունեցավ ինչպես համաշխարհային կինոարվեստի, այնպես էլ մեր երկրի ժողովուրդների, հայ ժողովրդի կինոարվեստի զարգացման համար։ Որքա՜ն ճշմարտացի ու խորն է բնութագրել Ս. Էյզենշտեյնին սովետական ականավոր կինոռեժիսոր Գ. Կոզինցևը. «...նա հեղափոխությունն արտահայտեց կինոյում և դրանով իսկ հեղափոխեց կինոն»։

20-ական թթ. վերջերին հայ ռեժիսորներն ստեղծում են մի քանի գործեր՝ պատմա-հեղափոխական թեմատիկայով։ Դրանցից առաջինը 1928 թ. ցուցադրված Տունը հրաբխի վրա կինոնկարն էր, որն արտացոլում է Անդրկովկասյան պրոլետարիատի 1905 թ. հեղափոխական շարժումները և ժողովուրդների բարեկամությունը։ Նույն 1928 թ. էկրան են բարձրանում Զամալու (Շահալիի կամուրջ) և Տասնվեցը ֆիլմերը, որոնցից առաջինը նկարագրում էր կամուրջը պայթեցումից փրկող ջոկատի սխրանքները, իսկ երկրորդ՝ թշնամու բանակի թիկունքում գտնվող հեղափոխականների գործունեությունը։ 1929—1938 թթ. ստեղծվում են Մեքսիկական դիվանագետները (սցենարը՝ Ե. Չուբարի, բեմադրությունը՝ Ա. Մարտիրոսյանի), Կիկոսը (սցենարը՝ Մ. Դարբինյանի, Պ. Բարխուդարյանի, բեմադրությունը՝ Պ. Բարխուդարյանի), Կարո (սցենարը՝ Ա.

Տայցի և Ա. Հայ-Արտյանի, բեմադրությունը՝ Ա. Հայ-Արտյանի), ինչպես նաև Սև թևերի տակ, Ազդանշան ջրվեժի մոտ (սցենարը՝ Ա. Բակունցի, բեմադրությունը՝ Պ. Բարխուդարյանի), Երկու գիշեր (սցենարը՝ Ե. Ջուբարի, բեմադրությունը՝ Գ. Մարինոսյանի) պատմա-հեղափոխական թեմայով կինոնկարները, որոնք խոշոր դեր խաղացին այդ թեմատիկան էկրանավորելու ասպարեզում և հանդիսատեսին գաղափարապես ներգործելու աներկբա ուժ ունեին:

1930 թվականին էկրան է բարձրանում նախապատերազմյան ժամանակաշրջանում հայ կինեմատոգրաֆիայի պատմա-հեղափոխական թեմայով ստեղծված լավագույն կինոնկարը՝ Զանգեզուր (սցենարի առաջին տարբերակի հեղինակ՝ Ա. Բակունց, երկրորդի՝ Հ. Բեկնազարյան, բեմադրությունը՝ Հ. Բեկնազարյանի): Կինոնկարը պատմական լայն համայնապատկերի վրա ներկայացնում է Հայաստանի սոցիալ-քաղաքական վիճակը, դասակարգային հարաբերությունները, քաղաքական հակադիր ուժերի մահու և կենաց բախումները, լենինյան գվարդիայի հայ զինվորների պայքարն ու հաղթանակը հակաժողովրդական ռեակցիոն ուժերի դեմ:

Այս կինոնկարն իր գաղափարական բարձր մակարդակով, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներով, կուռ կառուցվածքով, ռեժիսորական հմուտ աշխատանքով ու արտիստական բարձրարվեստ կատարմամբ իրավամբ պատվավոր տեղ է գրավում սովետական կինեմատոգրաֆիայի ոսկե ֆոնդում: Հանդիսատեսները ջերմորեն ընդունեցին նաև Սևանի ձկնորսները կինոնկարը (1938 թ) (սցենարը՝ Շայբոնի, Մարտիրոսյանի, Դուկորի, բեմադրությունը՝ Մարինոսյանի): Այստեղ նույնպես պատկերվում են Հայաստանում քաղաքացիական պատերազմի առանձին դրվագներ, բոլշևիկյան ընդհատակի անձնուրաց գործունեությունը: 1931 թ. ստեղծվում է Լեռնային քայլերգ պատմա-հեղափոխական թեմայով կինոնկարը (սցենարի հեղինակներ՝ Ն. Աբրամով, Ս. Կևորկով, բեմադրությունը՝ Ս. Կևորկովի), որը կինեմատոգրաֆիկ թարմ լուծումներով ու պրոֆեսիոնալ մակարդակով ուշագրավ երևույթ էր:

1934 թ. Գիքոր հուզիչ կինոնկարով (ռեժիսոր՝ Ա. Մարտիրոսյան) Հայկինոն ավարտում է իր գործունեության համր շրջանը և թևակոխում ստեղծագործական կյանքի նոր փուլ: Մեկ տարի անց՝ 1935 թ., ստեղծվում է հայ-ազգային կինեմատոգրաֆիայի գլուխգործոցը, առաջին հնչուն կինոնկարը՝ Պեպոն: Հայ դասական գրականության լավագույն երկերից մեկը էկրանի վրա հնչում է միանգամայն յուրովի, ուրույն գեղարվեստական ոճով, սոցիալական խոր բովանդակությամբ, պատմական ժամանակաշրջանի ռեալիստական ու գունեղ վերարտադրությամբ: Կինոնկարի հեղինակ Հ. Բեկնազարյանի, գլխավոր օպերատոր՝ Դ. Ֆելդմանի, դերակատարներ՝ Հր. Ներսիսյանի (Պեպո), Ա. Ավետիսյանի (Զիմզիմով), Դ. Մալյանի (Կակուլի) և մյուս մասնակիցների, ինչպես և տակավին երիտասարդ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի ստեղծագործական ջանքերը պսակվեցին լիակատար հաջողությամբ: Բավական է նշել, որ Պեպոն երկու ամիս անընդհատ ցուցադրվում էր Մոսկվայի տասներեք կինոթատրոններում: Կինոնկարը լայն արձագանք ու ջերմ ընդունելություն գտավ Եվրոպայի ու Ամերիկայի, Մերձավոր ու Միջին Արևելքի շատ երկրներում, ճանաչվեց որպես սովետական կինոարվեստի խոշոր նվաճում: 1935 թ. մայիսի 16-ին «Правда»-ն գրեց՝ «Սովետական կինեմատոգրաֆիան նվաճեց նոր հաղթանակ: Պեպոն մեր կինեմատոգրաֆիայի մեծ նվաճումն է: Հայկինոյի ռեժիսոր ընկ. Բեկնազարովն ստեղծել է հիանալի նկար, որը խորապես



հուզում է սովետական հանդիսատեսին: Դա արվեստի աշխատողների առջև նոր ռեկորդային բարձունք է սահմանում»:

Գեղարվեստական կինեմատոգրաֆիային զուգահեռ, նախապատերազմյան տարիներին, բուռն զարգանում էր նաև վավերագրական ու ակնարկային ժանրը: Ժապավենի վրա դրոշմվում էին սոցիալիստական շինարարության հետ կապված ուշագրավ երևույթներ, կուսակցական ու պետական նշանավոր գործիչների, արվեստի ու գրականության մեծանուն դեմքերի կյանքն ու առօրյան, մեր ժողովրդի կյանքի ու աշխատանքի կարևոր դեպքեր ու դրվագներ:

Մինչև Հայրենական մեծ պատերազմը Հայկինոն թողարկել է գեղարվեստական 40 կինոնկար և 70 վավերագրական ակնարկ ու ֆիլմ: Լայնորեն ծավալվում է բնակչության կինոսպասարկումը: Հանրապետության բոլոր քաղաքներում ու շրջանային կենտրոններում կառուցվում են մշտական գործող կինոթատրոնների շենքեր՝ տեխնիկական անհրաժեշտ սարքավորմամբ: Մեկ օրվա կինոհանդիսատեսների թիվը հասնում է տասնյակ հազարների: Այս վկայությունն է այն մեծ ուշադրության, որ նվիրում էին Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն ու կառավարությունը հայ կինոարվեստի զարգացմանը, ապացույցն այն անխոնջ ջանքերի, որ ներդնում էին հայ արվեստագետներն իրենց առջև ծառացած պատվավոր ու պատասխանատու խնդիրների հաջող լուծման ասպարեզում:

* * *

Սկսվեց մեծ Հայրենականը: Սովետական Միության բոլոր ժողովուրդները կուսակցության կոչով ոտքի ելան՝ պաշտպանելու իրենց հայրենիքը: Վավերագրական կինոյի սովետական հարյուրավոր մասնագետների հետ ռազմաճակատ մեկնեցին հայ կինոդոկումենտալիստները՝ կինոժապավենի վրա անմահացնելու մեր ժողովրդի սխրանքները Հայրենական պատերազմի ռազմադաշտերում: Նրանցից շատերը հերոսի մահով ընկան ռազմաճակատում:

1942 թ. ռեժիսոր Վ. Հայկազյանը, օպերատորներ Ի. Դիլդարյանը և Ն. Սիմոնյանը նկարահանում են հայկական զորամասերի մարտական գործողությունները Կերչի թերակղզում: 1944 թ. ռեժիսոր Գ. Բալասանյանը և օպերատոր Ն. Սիմոնյանը նկարահանում են մի շարք հետաքրքրական դրվագներ Սևծովյան նավատորմի մարտական գործողություններից: 1945 թ. Գ. Բալասանյանը և օպերատոր Գ. Խնկոյանը նկարահանում են Արևմտյան ռազմաճակատում ծավալված մարտական գործողությունները: Պատմական մեծ արժեք են ներկայացնում հայկական ազգային դիվիզիայի մարտական ուղին արտացոլող կինոկադրերը: Հայ դոկումենտալիստների անգնահատելի ավանդն են դրանք Հայրենական պատերազմի պատմության մեջ:

Հայրենական պատերազմի տարիներին ստեղծվեցին 6 կարճամետրաժ գեղարվեստական կինոնկար, որոնցից 4-ը՝ 1941 թվականին. այսպես՝ Արյուն արյան դիմաց (սցենարի հեղինակ՝ Մ. Օվչիննիկով, բեմադրող-ռեժիսորներ՝ Գ. Գաբրիելյան և Ա. Սամվելյան), Կրակն անտառում (սցենարի հեղինակ՝ Յա. Դուկոր, բեմադրող-ռեժիսորներ՝ Ա. Մարտիրոսյան և Լ. Իսահակյան): Սովետական լեզվի դասը (Ա. Հայ-Արտյան և Լ. Իսահակյան), Հայրենասերների ընտանիքը (Է. Քարամյան և Թ. Սարյան), Գվարդիականի կինը (Պ. Բարխուդարյան) և Դուստրը (Հ. Բեկնազարյան):

1944 թվականին Հայկինոն, ռուս կինոգործիչների հետ համագործակցած, ստեղծում է Մի անգամ գիշերով կինոնկարը, որի հեղինակները ձգտել էին

գեղարվեստորեն վեր հանել սովետական մարդկանց բարոյական վեհ հատկանիշները, որ դրսևորվեցին Հայրենական պատերազմի ծանր օրերին։

Անդրադառնալով պատերազմի թեմային՝ անհրաժեշտ է նշել նաև հետագայում ստեղծված Ապրելու համար ծնվածները (սցենարի հեղինակներ՝ Ա. Աղաբաբով, Լ. Վաղարշյան, Ս. Ռիզաև, բեմադրությունը՝ Լ. Վաղարշյանի) և Կամուրջներ մոռացության վրայով կինոնկարները (սցենարը՝ Բ. Սահակովի, բեմադրող-ռեժիսոր՝ Յու. Երզնկյան)։ Վերջին կինոնկարում, հեղինակների մտահղացմամբ, ստացվել է մի հուզիչ պատմություն, սերունդների սրտառուչ փոխկանչ։ Ֆիլմի հերոսը՝ այսօրվա երիտասարդը, անդրադառնալով հայրերի Հայրենական պատերազմում կատարած սխրանքներին, մտածում է իր վարքագծի, բարոյական կերպարի, ապագայի մասին։ 1944 թ. պատերազմի հաղթական ավարտից մեկ տարի առաջ էկրան բարձրացավ հայ կինոարվեստի պատմական թեմայով լավագույն ստեղծագործությունը՝ Դավիթ բեկը (սցենարի հեղինակներ՝ Հ. Բեկնազարյան, Վ. Սոլովյով, Յու. Դուկոր, բեմադրությունը՝ Հ. Բեկնազարյանի)։ Հենվելով Րաֆֆու նշանավոր պատմավեպի վրա, ֆիլմի հեղինակներն ընդարձակել էին նրա թեմատիկ շրջանակները, ազգային-ազատագրական շարժումներին զուգահեռ ցույց տալով հայ զորավարների ու քաղաքագետների խոր հավատն ու վստահությունը ռուս ժողովրդի նկատմամբ։ Ֆիլմն ավարտվում է տարեգրի իմաստուն, ոգևորող խոսքերով.

«Այսպես էինք կռվում մենք՝ ձեր նախահայրերը,
Այսպես կկռվեն հայորդիները դարեդար»։

Ժողովրդական դերասան Հր. Ներսիսյանը փայլուն հանդես եկավ Դավիթբեկի դերում։ Դավիթ-Բեկն ունեցավ արտակարգ հաջողություն։ 1944 թվականի փետրվարի 8-ի «Правда»-ում կարդում ենք. ««Դավիթ-Բեկ» ֆիլմը կոգևորի ո՛չ միայն հայի, այլև ռուսի, ուկրաինացու, յուրաքանչյուր սովետական մարդու սիրտը՝ իր խոր հուզականությամբ, հայրենիքի նկատմամբ տածած սիրով, ատելությամբ՝ զավթիչների հանդեպ»։ Ինչպես ռազմաճակատում, այնպես և թիկունքում, հայրենասիրական այս ոգեշունչ ստեղծագործությունը պայքարի էր կոչում հանուն հաղթանակի։

Հայ կինեմատոգրաֆիստներն իրենց համեստ ավանդը ներդրեցին Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովուրդների տարած պատմական հաղթանակում։

* * *

Պատերազմի հաղթական ավարտից հետո հայ կինեմատոգրաֆիայի գործիչներն ավելի ու ավելի հաճախ են դիմում վավերագրական ժանրին։ Որոշակի դժվարություններ են նկատվում «Հայֆիլմ» կինոստուդիայի գործունեության ոլորտում. այն առանձնապես զգալի էր գեղարվեստական ֆիլմերի ստեղծման ասպարեզում։ Հետպատերազմյան տարիներին Հայկինոն ստեղծում է ընդամենը 2 գեղարվեստական ֆիլմ — Անահիտը և Արարատյան դաշտի աղջիկը (բեմադրող-ռեժիսոր՝ Հ. Բեկնազարյան), որոնց գեղագիտական-գեղարվեստական մակարդակը զիջում էր նախորդ նվաճումներին։

Հայկինոյի զարգացման նոր փուլն սկսվում է 1954 թվականից։ Նոր շրջանի գլխավոր առանձնահատկությունն արդիական թեմայի հաստատումն է կինոարվեստում։ Այս շրջադարձն առանձնապես աշխուժացավ ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումներից հետո։ Հրապարակ իջավ ռեժիսորների մի նոր սերունդ. Գ. Մելիք-Ավագյան, Լ. Վաղարշյան, Յու. Երզնկյան,



Հ. Մալյան, Մ. Հակոբյան, Լ. Իսահակյան, Գ. Մարգարյան, Ֆ. Դովլաթյան, Խ. Աբրահամյան, Ա. Մանարյան և ուրիշներ, որոնք տաղանդավոր օպերատորների հետ միասին ստեղծեցին մի շարք հետաքրքրական կինոնկարներ։

Աշխուժացավ քննադատական միտքը. կինոտեսաբանների խումբը ձևավորվեց ԳԱ արվեստի ինստիտուտում, ստեղծվեց Հայաստանի կինեմատոգրաֆիստների միությունը, որի անդամների թիվն այժմ հասնում է 120-ի։

Արվեստի և գրականության հարցերին նվիրված՝ կուսակցության որոշումներն ստեղծեցին ամենանպաստավոր պայմաններ ու ստեղծագործական մթնոլորտ սովետական կինոյի նոր վերելքի համար։

50-ական թվականներին առավել չափով են օգտագործվում ժամանակակից կինեմատոգրաֆիայի նոր հնարանքները, մեծ ուշադրություն է նվիրվում պատմա-հեղափոխական թեմային։ Ռեժիսորներ Ս. Կևորկովը և Է. Քարամյանը, Մ. Մաքսիմովի սցենարի հիման վրա, նկարահանում են Անձամբ ճանաչում եմ կինոնկարը՝ նվիրված պրոֆեսիոնալ հեղափոխական Կամոյի կյանքին ու գործունեությանը։ Այն նշանակալից երևույթ էր ինչպես կուռ սցենարով ու վարպետ բեմադրությամբ, այնպես և դեպքերի հետաքրքրական ու լարված զարգացմամբ։ Գեղարվեստական այս ֆիլմում հայ կինեմատոգրաֆիայի պատմության մեջ առաջին անգամ էկրան է բարձրանում հեղափոխության առաջնորդ Լենինի կերպարը։ 1964 թ. նույն բեմադրողների ջանքերով (սցենարի հեղինակ՝ Ա. Իսաև) նկարահանվում է Արտակարգ հանձնարարություն ֆիլմը, որը սյուժետային գծով նախորդ ֆիլմի շարունակությունը չէ, սակայն շարունակում է բացահայտել լեգենդար Կամոյի հերոսական կյանքի նոր կողմերը, այս անգամ Վ. Ի. Լենինի արտակարգ հանձնարարությունը կատարելիս։

Թեպետ կինոնկարի պատկերային շարքում չկա առաջնորդի կերպարը, սակայն դրա ողջ ընթացքում զգացվում է նրա ներկայությունը, ժողովրդի սերն ու նվիրվածությունը նրա նկատմամբ։ Էկրանի վրա մարմնավորվում են Լենինի զինակիցներ Սվերդլովի և Ձերժինսկու կերպարները, արտացոլված է նրանց ջերմ բարեկամությունը Կամոյի հետ, Լենինի և նրա զինակիցների հոգատար վերաբերմունքն ու ուշադրությունը Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների հանդեպ պատմության օրհասական, ծանր պահերին։ Այս երկու կինոնկարները մինչև օրս չեն իջնում միութենական ու հանրապետական էկրանից. այն դիտել են 65 միլիոնից ավելի հանդիսատես։ Կինոնկարների հեղինակներ Է. Քարամյանը և Ստ. Կևորկովը 1968 թ. արժանացան ՀՍՍՀ պետական մրցանակի։ 1969 թ. նույն հեղինակներն ստեղծեցին Պայթյուն կես գիշերից հետո կինոնկարը (սցենարի հեղինակներ՝ Ս. Պրուտ և Է. Քարամյան)՝ նվիրված անվեհեր հեղափոխական Գ. Աթարբեկյանի գործունեության մի դրվագին՝ Գրոզնիյ Աստրախան նավթ առաքելու դժվարին ժամանակաշրջանին։ Հաջող է կերտված կուսակցական ու պետական ականավոր գործիչ Ս. Մ. Կիրովի կերպարը։ Կինոնկարում մեծ տեղ է տրված մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությանը քաղաքացիական պատերազմի տարիներին։

«Հայֆիլմի» նշանակալից նվաճումն է Սարոյան եղբայրները կինոնկարը (սցենարի հեղինակ՝ Գ. Բորյան, բեմադրությունը՝ Խ. Աբրահամյանի, Ա. Հայրապետյանի, գեղարվեստական ղեկավար՝ Ֆ. Դովլաթյան)։ Հեղինակներին հաջողվել է գեղարվեստական զուսպ, լակոնիկ միջոցներով պատկերել հեղափոխական հայացքների ձևավորումը հայ իրականության մեջ, երկու եղբայրների հարաբերություններում տեսնել քաղաքական անհաշտ ուժերի բախումներն ու տարաձայնությունները, դաշնակցական գաղափարախոսության ու

գործելակերպի կործանարարությունը, լենինյան գաղափարների անկասելի հաղթանակը։ Կինոնկարն արժանացավ Անդրկովկասյան հանրապետությունների և Ուկրաինայի փառատոնի գլխավոր մրցանակին, ստեղծագործական ու հասարակական բազմաթիվ կազմակերպությունների մրցանակների ու պատվոգրերի։ 50—60-ական թթ. հայկինոն շարունակում է դասական գործերի էկրանացումն ու պատմական թեմայով կինոնկարների ստեղծումը։

1956 թ. էկրան է բարձրանում հայ դրամատուրգիայի լավագույն գործերից մեկը՝ Շիրվանզադեի Պատվի համար պիեսը (սցենարի հեղինակ՝ Լ. Ղարագյոզյան, բեմադրությունը՝ Ա. Հայ-Արտյանի)։ Էլիզբարովի դերում նորից փայլում է հայ մեծ դերասան Հրաչյա Ներսիսյանի տաղանդը։ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմական իրադարձություններին էր նվիրված Ա. Հայ-Արտյանի Հյուսիսային ծիածան ֆիլմը (սցենարի հեղինակ՝ Հր. Քոչար)։ Ֆիլմում ընդգծված է ռուս ժողովրդի, նրա լավագույն զավակների մեծ օգնությունը Արևելյան Հայաստանը պարսկական լծից ազատագրելու գործում, կերտված են Ա. Գրիբոեդովի, դեկաբրիստներ Ի. Պուշչինի, Լաչինովի և պատմական այլ դեմքերի հաջողված կերպարները։ Առաջին անգամ էկրան է բարձրանում հայ մեծ լուսավորիչ, նոր գրականության հիմնադիր Խ. Աբովյանի կերպարը։ Հայ գեղարվեստական կինեմատոգրաֆիայի փայլուն նվաճումներից մեկը դարձավ Ֆ. Դովլաթյանի Բարև ես եմ կինոնկարը (սցենարի հեղինակ՝ Ա. Աղաբաբով), որն արծարծում է բարոյա-էթիկական բնույթի մի շարք խոշոր պրոբլեմներ— գիտնականի պարտքը հասարակության ու շրջապատի, անցյալի, ներկայի ու ապագայի, վերաբերմունքը ապրած կյանքի նկատմամբ, նրա անսահման սերը մարդու, ընկերոջ, հայրենիքի հանդեպ— ահա այն հարցերի մի մասը, որոնք զբաղեցրել են հեղինակներին։

Ժամանակակից մարդու հոգեբանությունը, նրա բարոյական կերպարն այս կինոնկարում գտան իրենց վառ արտահայտությունը։ Դերասանական փայլուն անսամբլը— Ա. Ջիգարխանյան, Ռ. Բիկով, Տ. Տերեխովա, ապահովեցին ռեժիսորի մտահղացման իրականացումը։ Կինոնկարը 1966 թ. ցուցադրվեց Կաննի միջազգային կինոփառատոնում, իսկ հեղինակներն արժանացան ՀՍՍՀ պետական մրցանակի։ «Հայֆիլմի» անվանի ռեժիսորներից մեկի՝ Հ. Մալյանի, ստեղծագործական մեծ հաջողությունների վկայությունն են նաև վերջին տարիներին ստեղծած նրա երկու գեղարվեստական կինոնկարները— Եռանկյունին (սցենարի հեղինակ՝ Ա. Այվազյան) և Մենք ենք, մեր սարերը (սցենարի հեղինակ՝ Հ. Մաթևոսյան)։ Մեծ ճանաչում ստացավ Եռանկյունի կինոնկարը։ 1968 թվականին այն արժանացավ Ուկրաինայի և Անդրկովկասի հանրապետությունների կինոփառատոնի գլխավոր մրցանակին և Լենինգրադում կայացած համամիութենական փառատոնի երկրորդ մրցանակին։

Վերջին տասնամյակում նկատելիորեն զարգացան փաստագրական-վավերագրական և գեղարվեստական կինոակնարկի ժանրերը։ Դոկումենտալիստի օբյեկտիվը միշտ իր տեսադաշտում է պահում վերածնված ժողովրդի հերոսապատումներով լի առօրյան։ Փորձված ռեժիսորներ և օպերատորներ Գ. Բալասանյանի, Զ. Ժամհարյանի, Գ. Արամյանի, Ռ. Սիմոնյանի, Գ. Սանամյանի, Ռ. Ֆրանգուլյանի, Ս. Առաքելյանի հետ միասին այսօր արժեքավոր ստեղծագործություններով հանդես են գալիս երիտասարդ ռեժիսորներ Ա. Փելեշյանը, Ա. Վահունին, Ս. Փոշոտյանը, Ա. Շահբազյանը և շատ ուրիշներ։

Համամիութենական մեծ ճանաչում գտավ ռեժիսոր Գ. Մելիք-Ավագյանի Յոթ երգ Հայաստանի մասին կինոնկարը (սցենարի հեղինակ՝ Գ. Էմին, օպերատոր՝ Ա. Յավուրյան)։ Դա իսկական հիմն է՝ նվիրված կյանքի բոլոր բնագավառներում Սովետական Հայաստանի աշխատավորների ձեռք բերած հաջողություններին։ Այն նույնպես արժանացավ Ուկրաինայի և Անդրկովկասի հանրապետությունների կինոփառատոնի «Պրոմեթևս» գլխավոր մրցանակին։ Հետաքրքրական է Սիրո բացատրություն երկմաս կինոնկարը (սցենարի հեղինակ՝ Լ. Մկրտչյան, ռեժիսոր՝ Դ. Կեսայան), ուր վառ ու տպավորիչ արտահայտվում է ռուս բանաստեղծների սրտի խոսքը Հայաստան երկրի, նրա բնության, տնտեսության ու կուլտուրայի, մարդկանց մասին։ Այս կինոնկարը ևս արժանացել է Ուկրաինայի և Անդրկովկասի հանրապետությունների կինոփառատոնի առաջին մրցանակին։

Վերջին տարիների ընթացքում հանրապետության կինոաշխատողները, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեի ղեկավարությամբ, կարողացան համախմբել իրենց ուժերը կոմունիստական կուսակցության կողմից դրված նոր խնդիրների կատարման համար։

Հայաստանի կինոաշխատողներն իրենց արժանի լուման մուծեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին, Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակին նվիրված նոր կինոժապավեններ ստեղծելու ասպարեզում։ Շարունակելով իրենց բեղմնավոր գործունեությունը, նրանք որոշակի հաջողություններով են դիմավորում Հայաստանի կոմկուսակցության XXV և ՍՄԿԿ XXIV համագումարները։

Ներկայումս Հայաստանի կինեմատոգրաֆիստները պատրաստվում են իրենց II համագումարին, որն, անշուշտ, նոր խթան կհանդիսանա մեր ժողովրդի կինոարվեստի զարգացման գործում։

* * *

Սովետահայ կինոյի զարգացման պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեր գեղարվեստական ու վավերագրական լավագույն ժապավենները տոգորված են եղել ժամանակի ամենաառաջադեմ գաղափարներով, օգնել են նոր աշխարհի հաստատմանը, կառուցմանը, առաջընթացին։

Հայ կինոարվեստը սովետական կարգերի ծնունդ է, նրա զարգացումը միշտ պայմանավորված է եղել մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական նվաճումներով։ Խոր կուսակցականությամբ, բարձր գաղափարայնությամբ տոգորված մեր կինոն մշտապես եղել և մնում է մասսաների գեղագիտական դաստիարակության, հոգեկան աշխարհի հարստացման լավագույն միջոցը։



Հ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՕՐԵՆՍԴՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ*

*Օրենսդրությունը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի գործունեության հիմնական, գլխավոր ուղղությունն է։ Միաժամանակ, այն հանդես է գալիս որպես Գերագույն սովետի իրավասության կենսագործման կարևոր իրավական ձև։*

*Գերագույն սովետը Հայկական ՍՍՀ միակ օրենսդիր մարմինն է։ Հայկական ՍՍՀ Սահմանադրության 23-րդ հոդվածը պարզորոշ ամրապնդել է Գերագույն սովետի մենաշնորհն օրենսդրության բնագավառում։ Լենինը նշել է, որ մեր երկրում «միայն ընտրվածները կարող են խոսել պետական օրենսդրական լեզվով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26. էջ 411)։ Պետական իշխանության գերագույն ներկայացուցչական մարմնի օրենսդրական գործունեության արդյունքն ու արտահայտությունը օրենքներն են։ Օրենքները, ինչպես նաև Գերագույն սովետի մնացած ակտերը, արտահայտելով ժողովրդի սովորեն կամքը, կարևոր ստեղծագործական դեր են խաղում կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում։ Այդ հանգամանքը պայմանավորում է Գերագույն սովետի օրենսդրական գործունեության սոցիալ-քաղաքական նշանակությունը։ Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXIII համագումարում ընդգծվեց. «ՍՍՀՄ Գերագույն սովետը և միութենական հանրապետությունների գերագույն սովետները կոչված են ուժեղացնելու սովետական օրենսդրության զարգացման, օրենքների կատարման ստուգման աշխատանքը» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, Երևան, 1967, էջ 121)։*

*Ներկա ժամանակաշրջանում սովետական օրենսդրության զարգացման գլխավոր առանձնահատկությունն այն է, որ այդ բնագավառում բարձրացել է միութենական հանրապետությունների դերը, ընդլայնվել են նրանց իրավունքները։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունն ընդգրկում է հանրապետության պետական, տնտեսական, սոցիալ-մշակութային կյանքի բոլոր կողմերը։ Գերագույն սովետն իրավասու է օրենքներ ընդունել Հայկական ՍՍՀ Սահմանադրության 18-րդ հոդվածում թվարկված բոլոր լիազորությունների առնչությամբ, չնայած այն հանգամանքին, որ օրենսդիրը միայն մի քանի կետերում է օգտագործում «օրենսդրություն» կատեգորիան (օրինակ, աշխատանքային օրենսդրությունը, դատարանակազմության և դատավարության մասին օրենսդրությունը, քաղաքացիական, քրեական, ուղղիչ աշխատանքային օրենսդրությունը, օրենսդրություն ամուսնության և ընտանիքի մասին)։ Պրակտիկան ցույց է տալիս, որ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը միայն նշված բնագավառներով չի սահմանափակվում։ Օրենքների միջոցով են լուծվում նաև այնպիսի հարցեր, որոնց կապակցությամբ Հայկական ՍՍՀ Սահմանադրության հոդվածն օգտագործում է «կազմել», «պահպանել», «կարգ սահմանել», «ղեկավարել», «կառավարել» տերմինները։ Անհրաժեշտ է Հայկական ՍՍՀ Սահմանադրության 18-րդ հոդվածից հանել «դ» կետը (Հայկական ՍՍՀ-ի օրենքների հրատարակումն այդ իրավունքն ինքնըստինքյան ենթադրվում է) և մատնանշել օրենքի ձևով լուծվող հարցերի շրջանակը։*

*Ուսումնասիրելով Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը, չի կարելի չնկատել այդ գործունեության հետագա զարգացման փաստը։ ՍՄԿԿ XX—XXIII համագումարների որոշումները լայն հնարավորություններ ընձեռեցին Գերագույն սովետների բարդ ու բազմաբովանդակ գործունեության համար։ Այդ մասին է խոսում առաջին հերթին ընդունվող օրենքների քանակը։ Եթե Հայկական ՍՍՀ 3-րդ գումարման Գերագույն սովետը (1951—1955 թթ.) ընդունել է ընդամենը 16 օրենք, ապա 4-րդ գումարմանը (1955—1959 թթ.)՝ 46 օրենք, 6-րդ գումարմանը (1963—1967 թթ.)՝ 67 օրենք, 5—7-րդ գումարումների ընթացքում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն ընդունել է 180 օրենք։ Բայց գլխավորը միայն օրենքների քանակը չէ։ Գերագույն սովետի օրենսդրական գործունեության զարգացումը բնութագրվում է նաև որակական ցուցանիշներով։ Այդ պրոցեսի էությունը* դրսևորվում է օրենսդրության բովանդակության արմատական փոփոխությունների մեջ։ *Նշվեց, որ Հայկական ՍՍՀ 3-րդ գումարման Գերագույն սովետը ընդամենը ընդունել է 16 օրենք, այդ թվում պետական բյուջեն հաստատելու մասին՝ 4, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հրամանագրերը հաստատելու առթիվ՝ 11, և միայն մեկ օրենք ՀՍՍՀ Հիմնական օրենքի 101-րդ հոդվածում փոփոխություններ մտցնելու վերաբերյալ։ Այլ են, օրինակ, Հայկական ՍՍՀ 5-րդ գումարման Գերագույն սովետի օրենսդրական գործունեության քանակական և որակական ցուցանիշները։ 5-րդ գումարման ընթացքում (1959—1963 թթ.) Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն ընդունել է 54 օրենք, այդ թվում պետական բյուջեն հաստատելու՝ 4, ժողովրդական տնտեսության զարգացման պլանները հաստատելու՝ 4, Հայկական ՍՍՀ Սահմանադրությունում փոփոխություններ մտցնելու վերաբերյալ 5, ինչպես նաև 30 օրենք Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը հաստատելու կապակցությամբ։ Նշված ժամանակաշրջանում Գերագույն սովետն ընդունել է նաև 11 օրենք պետական, տնտեսական և սոցիալ-մշակութային շինարարության տարբեր բնագավառների վերաբերյալ։*

*Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը վերլուծելիս ուշագրավ է այն հանգամանքը, որ օրենքների ընդհանուր քանակի աճին զուգընթաց մեծանում է Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը հաստատող օրենքների թիվը, չնայած վերջինների նվազող տեսակարար կշռին։ Այսպես, երկրորդ գումարման ընթացքում (1947—1951 թթ.) Գերա-*

* Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.:

գույն սովետն ընդունել է ընդամենը 41 օրենք, այդ թվում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը հաստատելու մասին՝ 21։ 4-րդ գումարման ընթացքում (1955—1959 թթ.) ընդունվել է 46 օրենք, որոնցից 23-ը հրամանագրերը հաստատելու մասին։ 6-րդ գումարման ընթացքում (1963—1967 թթ.)՝ 67 օրենք, որոնցից 49-ը Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը հաստատելու մասին։

Բերված տվյալները ցույց են տալիս, որ գումարումից գումարում աճում է ըստ էության ընդունվող օրենքների թիվը (այսինքն Գերագույն սովետն ինքը անմիջականորեն օրենքներ ընդունելու միջոցով կարգավորում է զանազան հասարակական հարաբերություններ)։ Նման օրենքների քանակն ու բովանդակությունը խոսում են այն հասարակական հարաբերությունների շրջանակի ընդարձակման մասին, որոնք օրենսդրական կարգավորման են ենթարկվում Գերագույն սովետի կողմից։ Այդ առումով ավելի է փոքրանում հրամանագրեր հաստատող օրենքների տեսակարար կշիռը։ Տվյալները ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նորմատիվ հրամանագրերը հաստատող օրենքների թիվը նույնպես մեծանում է։ Այդ պրոցեսը հետևանք է նաև Գերագույն սովետի, նրա նախագահության իրավասության իրավական կարգավորման անկատարելության։ Սահմանադրությամբ հստակ ամրապնդված չէ Գերագույն սովետի իրավասությունը։ Ինչ վերաբերում է Գերագույն սովետի նախագահությանը, ապա Հայկական ՍՍՀ Սահմանադրության 30-րդ հոդվածը չի ամրապնդում նրա նորմաստեղծագործական գործունեության շրջանակները։ Այդ է պատճառը, որ զգալի թիվ են կազմում Գերագույն սովետի նախագահության այն հրամանագրերը, որոնք փոփոխություն են մտցնում գործող օրենսդրության մեջ (փաստորեն նաև սահմանադրության) կամ կատարում են հասարակական հարաբերությունների «նախնական», «սկզբնական» կարգավորում։ Ըստ էության Գերագույն սովետի նախագահությունը իրականացնում է օրենսդրական գործունեություն, չունենալով այն իրականացնելու սահմանադրական լիազորություն։ Նման գործունեությունը հավասարանշանակ չէ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությանը, սակայն որոշակիորեն նեղացնում է գերագույն ներկայացուցչական մարմնի օրենսդրական աշխատանքի ոլորտը։ Հետևաբար, հիմնական հասարակական հարաբերությունները ոչ մի պատրվակով չեն կարող կարգավորվել այլ մարմինների (այդ թվում նաև նախագահության) իրավական ակտերով։ Այս սկզբունքի անշեղ կիրառումն անշուշտ կնպաստի Գերագույն սովետի դերի, օրենքների հեղինակության հետագա բարձրացմանը։

Անհրաժեշտ է հրաժարվել Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում «Օրենսդրական հրամանագրեր» ընդունելու պրակտիկայից։ Դրա հիմքը պետք է հանդիսանա Գերագույն սովետի և նրա նախագահության լիազորությունների հստակ սահմանազատումը։ Որոշ հեղինակներ զանազան փաստարկների օգնությամբ փորձում են հիմնավորել Գերագույն սովետի նախագահության «օրենսդրական լիազորությունների», «օրինականացման» անհրաժեշտությունը։ Ի. Ն. Կուզնեցովը, առաջարկելով ամրապնդել Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում օրենսդրության մեջ փոփոխություններ մտցնելու նախագահության իրավունքը, նշում է, որ «Գերագույն սովետի իրավասության առանձին հարցերով հրամանագրեր հրատարակելու պրակտիկայի հիմքում օբյեկտիվ պատ-



ճառներ են ընկած և հենց դրանով է բացատրվում տվյալ պրակտիկայի կայունությունը, որն առաջանալով Գերագույն սովետի նախագահության գործունեության առաջին տարիներին, պահպանում է իր նշանակությունը մեր օրերում։ Նման պրակտիկան ուղղակիորեն բխում է ՍՍՀ Գերագույն սովետի, որպես օրենսդրական ֆունկցիաների ամենօրյա կատարման հնարավորությունը բացասող, աշխատող հիմնարկության բնույթից։ Ուստի, միջնստաշրջանային ժամանակաշրջանում օրենսդրության բնագավառում որոշ անհետաձգելի միջոցառումներ անց են կացվում նախագահության կողմից...» (И. Н. Кузнецов, Компетенция высших органов власти и управления СССР, М., 1969 стр, 133)։

Ստացվում է, որ «օբյեկտիվ պատճառը» Գերագույն սովետի ամենօրյա նիստերի բացակայությունն է։ Սակայն օրենսդրությունը ամենօրյա փոփոխություն չի պահանջում։ Հակառակ պարագայում խոսք չէր կարող լինել նրա կայունության մասին։ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը գիտական հիմունքներով կազմակերպելը, կատարելագործումն ու զարգացումը, Գերագույն սովետի նախագահության, մշտական հանձնաժողովների բարձր մակարդակով կազմակերպված նախապատրաստական աշխատանքը հնարավորություն կտան այդ փոփոխությունները հասցնել նվազագույնի և հիմնականում իրականացնել Գերագույն սովետի կողմից։ Պրոֆ. Դ. Ա. Քերիմովի կարծիքով Գերագույն սովետի նախագահության նման իրավունքը կյանքի է կոչվել «օրենքի այս կամ այն նորմերն արագ փոփոխելու պրակտիկ անհրաժեշտությամբ՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ նստաշրջան հրավիրելու աննպատակահարմարության կամ անհնարինության պայմաններում» (Տե՛ս Д. А. Керимов, Свобода, право и законность в социалистическом обществе, М. 1960 стр. 182)։ Այս փաստարկներն էլ չի կարելի հիմնավոր համարել։ Նախ, դժվար է որոշել կատարվելիք փոփոխությունների անհրաժեշտության արագությունը։ Հազվադեպ են այն պայմանները, երբ անհրաժեշտ է բառացիորեն մի քանի օրվա ընթացքում փոփոխություններ մտցնել գործող օրենսդրական ակտերում։ Այս է վկայում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և նրա նախագահության օրենսդրական և նորմաստեղծագործական գործունեության փորձը։ Այնուհետև, օրենսդրական նորմերի փոփոխությունների մեծ մասը կարելի է կատարել ոչ թե նախագահության հրամանագրերով, այլ Գերագույն սովետի ակտերով։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը 6-րդ գումարման ընթացքում իր նախագահության նորմատիվ հրամանագրերը հաստատելու մասին ընդունել է 49 օրենք (պետք է նշել, որ այդ թիվը ադեկվատ չէ օրենքներով հաստատվող հրամանագրերին, որովհետև հաճախ մեկ օրենքով Գերագույն սովետը հաստատել է մի քանի հրամանագրեր)։ Բոլոր այդ հրամանագրերի և դրանք հաստատող օրենքների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում եզրակացնել, որ այդ հրամանագրերի մոտ կեսը չի բխում օրենքի այս կամ այն նորմերը արագ փոփոխելու պրակտիկ անհրաժեշտությունից։ Այսպես, Հայկական ՍՍՀ 6-րդ գումարման Գերագույն սովետի 3-րդ նստաշրջանը հրավիրվել է 1964 թվականի հունիսի 3-ին։ Նստաշրջանում հաստատվել են նաև երեք հրամանագրեր, որոնք ընդունվել են նույն թվականի մայիսի 29-ին, այսինքն՝ նստաշրջանի բացումից երեք օր առաջ։ Նույն գումարման 4-րդ նստաշրջանը հրավիրվել է 1964 թվականի դեկտեմբերի 23-ին, իսկ դեկտեմբերի 24-ին Գերագույն սովետի նախագահությունը երկու հրամանագիր է ընդունել, որոնք հաստատվել են 5-րդ

*նստաշրջանում (24—25. 5, 1965 թ.)։ Տասնյակ օրինակներ կարել է բերել, երբ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը հրամանագրեր է ընդունել Գերագույն սովետի նստաշրջանից մի քանի օր հետո։ Այսպես, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 8-րդ նստաշրջանից (26—27. 8. 1966 թ.) անմիջապես հետո 1966 թվականի օգոստոսի 31-ին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը չորս հրամանագիր է ընդունել, որոնք հաստատվել են 9-րդ նստաշրջանում (27—28. 12. 1966 թ.)։*

*Բերված օրինակների առնչությամբ չի կարելի ասել, թե Գերագույն սովետի նստաշրջան հրավիրելը «աննպատակահարմար է կամ անհնարին»։ Ուսումնասիրելով Հայկական ՍՍՀ մնացած գումարումների Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը՝ մենք գալիս ենք այն հետևության, որ վերոհիշյալ երևույթն ընդհանուր է։*

*Իրավաբանական գրականության մեջ միութենական հանրապետության Գերագույն սովետի նախագահության կողմից օրենսդրական լիազորություններ իրականացնելու հանգամանքը կապում են նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշ հրամանագրերում բովանդակվող առանձին հանձնարարականների հետ։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը հաճախ իր ակտերում միութենական հանրապետությունների գերագույն սովետների նախագահություններին հանձնարարում է հանրապետությունների օրենսդրությունը համապատասխանեցնել ՍՍՀ Միության նոր օրենսդրական ակտերին։ Այստեղից եզրակացություն է արվում, որ հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը, ձևականորեն օրենսդրական իշխանություն իրականացնելուն լիազորված չլինելով, այնուամենայնիվ պարտավոր է այդ ֆունկցիան կատարել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերի հանձնարարականներին համապատասխան, քանի որ հանրապետության օրենսդրության մեջ միութենական ակտից բխող համապատասխան փոփոխություններ չմտցնելու դեպքում կգործի ընդհանուր միութենական հրամանագիրը։*

*Նման եզրակացությունը անհիմն է։ Չնայած որ այդպիսի հրամանագրերում օրենսդրությունը համապատասխանեցնելու հանձնարարություն տըրվում է միութենական հանրապետության Գերագույն սովետի նախագահությանը, սակայն, դա չի նշանակում, որ հանրապետության օրենսդրության մեջ փոփոխություն նախագահությունը պետք է կատարի։ Համապատասխանեցնել չի նշանակում անձամբ փոփոխություն կատարել։ Նման հանձնարարությունը կարելի է հասկանալ նաև նախապատրաստելու, հարց մտցնելու առումով։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության «Աշխատավորների դեպուտատների գյուղական և ավանային սովետների հիմնական իրավունքների և պարտականությունների մասին» 1968 թվականի ապրիլի 8-ի հրամանագրի 11-րդ հոդվածը հանձնարարել է միութենական հանրապետությունների գերագույն սովետների նախագահություններին՝ աշխատավորների դեպուտատների գյուղական և ավանային սովետների վերաբերյալ միութենական հանրապետությունների օրենսդրությունը համապատասխանեցնել նշված հրամանագրին, սակայն այդպիսի փոփոխություն բոլոր միութենական հանրապետություններում կատարվել է Գերագույն սովետների կողմից, իսկ նրանց նախագահությունները հանդես են եկել միայն օրենսդրական նախաձեռնությունով։*

*Այսպիսով, դժվար է համաձայնել այն հեղինակների հետ, որոնք*



*առաջարկում են «օրինականացնել» ՍՍՀՄ, միութենական ու ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների նախագահությունների կողմից օրենսդրական լիազորություններ իրականացնելու պրակտիկան։ Նման պրակտիկայի գոյությունը անհամատեղելի է գերագույն ներկայացուցչական մարմնի իրավական ստատուսի հետ։*

*ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների գերագույն սովետների օրենսդրական գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ օրենսդրության կատարելագործման համար կարևոր է ոչ միայն նշված մարմինների իրավասության օպտիմալ իրավական կարգավորումը, այլև օրենսդրական աշխատանքի գիտական կազմակերպման նոր սկզբունքների ու մեթոդների հետագա ներդրումը։ Ներկա ժամանակաշրջանում գերագույն ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեության բուռն զարգացման փաստը համատեղվում է որոշ անցանկալի տարրերի հետ (օրինակ, հաճախակի փոփոխությունները օրենսդրական ակտերում, դրանք ժամանակին չընդունելը, այդ ակտերի հեռանկարայնության և արդյունավետության անորոշության հանգամանքը և այլն)։ Թվում է, որ դրանց առկայության հիմնական պատճառներից է օրենսդրական գործունեության սոցիալական-իրավական կանխատեսման ու պլանավորման բացակայությունը։ Հարկ է նշել, որ սոցիալական կանխատեսման պրոբլեմը սովետական իրավաբանական գրականության մեջ միայն վերջին տարիներին է մշակվում։ Ինչ վերաբերում է սոցիալական պլանավորման իրավական ասպեկտին, այն նույնպես քիչ է ուսումնասիրված։ Իրավաբանական գրականության մեջ առայսօր չի դրվել ու հիմնավորվել գերագույն ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեության սոցիալական-իրավական կանխատեսման ու պլանավորման անհրաժեշտությունը։ Փորձենք, ըստ կարելվույն, հիմնավորել այդ ֆունկցիայի նշանակությունն ու անհրաժեշտությունը, տարկան, պրոբլեմատիկան և այլն։*

*Սոցիալիզմի բնույթն ու մարքս-լենինյան տեսությունն անհրաժեշտ պայմաններ ու հնարավորություններ են ստեղծում ինչպես հասարակության, որպես ամբողջական համակարգի, այնպես էլ նրա կառուցվածքային տարրերի զարգացման կանխատեսման համար։ Այդ առումով կարևոր նշանակություն ունի իրավաբանական կանխատեսումը այնպիսի երևույթների առնչությամբ, ինչպիսիք են՝ պետությունը, իրավունքը, դեմոկրատիան, կառավարումը և այլն (տե՛ս* Сафаров Р. А., Прогнозирование-функция социалистического государственного управления, «Советское государство и право», 1969, № 10, стр. 108*)։*

*ՍՄԿԿ ծրագիրը, հիմնվելով մարքս-լենինյան գիտական կանխատեսման վրա, սահմանում է կոմունիստական շինարարության ժամանակաշրջանում սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունն ու այդ զարգացման կոնկրետ արդյունքները տնտեսական, սոցիալական ու քաղաքական բնագավառներում։ Դրանով իսկ, հենց ինքը՝ կուսակցության ծրագիրը, սոցիալիստական պետության և իրավունքի զարգացման սոցիալական կանխատեսման ու պլանավորման արդյունք է։*

*Դեռևս 1923 թվականին «Ինչպես վերակազմենք բանգյուղտեսչությունը» հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է. «... մենք այժմ արմատական սոցիալական փոփոխություններ կատարելու համար անհրաժեշտ ժամկետներ սահմանելու՝ պատմության մեջ բավականին հազվադեպ առիթ ենք ստացել»*

և մենք այժմ պարզ տեսնում ենք, թե ինչ կարելի է անել 5 տարվա մեջ և ինչ բանի համար հարկավոր են ավելի մեծ ժամկետներ» (Երկեր, հատ. 33, էջ 574)։

Իրավական կարգավորման ենթարկվող հասարակական հարաբերությունների սոցիալական կանխատեսման և պլանավորման հնարավորությունն ու անհրաժեշտությունը պայմանավորված են հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքներով։ Հասարակության մեջ գործող սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների հաշվառումը, ուսումնասիրությունն ու ընդհանրացումը հնարավորություն են ընձեռում գիտականորեն կանխատեսելու և պլանավորելու հասարակական երևույթների զարգացումը։

Գոյություն ունեն սոցիալական կանխատեսման և պլանավորման տարբեր տեսակներ, օրինակ, տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական և այլն։ Պետական-իրավական կանխատեսումն ու պլանավորումը խարսխվում են տնտեսական, քաղաքական և գաղափարախոսական կանխատեսման ու պլանավորման վրա։ Եթե տնտեսական կանխատեսման արտահայտություն են ժողովրդա-տնտեսական պլանները, ապա պետական-իրավական կանխատեսման արտահայտություն են գերագույն ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեության պլանները։ Տնտեսական կանխատեսման անխուսափելի ուղեկիցը պետք է դառնա պետական-իրավական կանխատեսումը։ Վերջինիս բացակայությունը վկայում է հասարակական երևույթների գիտական կանխատեսման մարքս-լենինյան միասնական համակարգը կազմող սոցիալական կանխատեսման տարբեր տեսակների միջև արհեստական խզման մասին։ Իսկ դա իր հերթին հանգեցնում է սոցիալիստական հասարակության տնտեսական բազիսի վրա պետական-իրավական վերնաշենքի ակտիվ ներգործության թուլացմանը։ Ուստի, ներկա ժամանակաշրջանում հրատապ է դառնում պետական-իրավական կանխատեսման կազմակերպման պրոբլեմը։ Ավելին, հասարակական պրակտիկայի զարգացմանը զուգընթաց հարկ է ձեռնամուխ լինել կանխատեսման կոնկրետացմանն ու իրավական ձևավորմանը, որպեսզի նորմատիվ կարգավորումը հասարակական հարաբերությունների ավելի մեծ թվով կողմեր ընդգրկի։ Սոցիալիստական հասարակության զարգացումը ենթադրում է սովետական պետության և, առաջին հերթին, գերագույն ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեության կանխատեսում և պլանավորում։ Նման եղանակը օրենսդիր մարմիններին հնարավորություն կտա լիովին գիտական հիմքերի վրա դնել սովետական օրենսդրությունը։

Գերագույն ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեության կանխատեսումն ու պլանավորումը հնարավորություն են ընձեռում ապահովելու իրավունքի յուրաքանչյուր ճյուղի և, վերջին հաշվով, ողջ իրավական համակարգի միասնությունը։ Միասնության ու համաձայնեցվածության ապահովումը հեշտացնում են օրենսդրության համակարգավորման և կոդիֆիկացման հետագա աշխատանքը։ Օրենսդրական գործունեության կանխատեսումն ու պլանավորումը հնարավորություն կտան ժամանակին հրատարակել նորմատիվ ակտերը։ Նորմատիվ ակտի ուշ հրատարակումը կամ ժամանակի խզումը դրանց միջև, բացասաբար է անդրադառնում այդ ակտերի արդյունավետության վրա։ Որպես օրինակ կարելի է բերել դեպուտատներին ետ կանչելու մասին օրենքը կամ Հայկական ՍՍՀ դատարանակազմության մասին 1959 թվականի նոյեմբերի 19-ի օրենքը, որի համաձայն



(հոդված. 32) Հայկական ՍՍՀ գերագույն դատարանն իր ֆունկցիաները իրականացնում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից հաստատվող Հայկական ՍՍՀ Գերագույն դատարանի կանոնադրությանը համապատասխան։ Սակայն անցել է շուրջ 12 տարի, բայց գերագույն դատարանի կանոնադրություն չի ընդունվել, չնայած այն հանգամանքին, որ ՍՍՀՄ գերագույն դատարանի կանոնադրությունը ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից հաստատվել է դեռևս 1957 թվականին։

Օրենսդրական գործունեության սոցիալ-իրավական կանխատեսումն ու պլանավորումը կապահովեն իրավունքի ճյուղերի և իրավական ինստիտուտների կոմպլեքս ներգործությունը հասարակական հարաբերությունների վրա։ Միմյանց լրացնելով՝ նորմատիվ ակտերը կազմում են միասնական իրավական մեխանիզմ։ Երբ այդ մեխանիզմում բացակայում է այս կամ այն նորմատիվ ակտը, խախտվում է իրավական լծակների փոխադարձորեն կապված միասնությունը, որի պայմաններում թուլանում է իրավունքի կոմպլեքս ներգործությունը հասարակական հարաբերությունների որոշակի բնագավառների վրա։ Օրենսդրական գործունեության սոցիալական-իրավական կանխատեսումն ու պլանավորումը ապահովում են օրենքների կայունությունը։ Քիչ չեն փաստերը, երբ օրենսդրական ակտերը հաճախակի փոփոխությունների են ենթարկվում։ Այսպես, Հայկական ՍՍՀ քրեական և քրեական դատավարության օրենսգրքերը հաստատվել են 1961 թվականի մարտի 7-ին։ Մինչև 1966 թվականի դեկտեմբերի 29-ը դրանցում ավելի քան 36 անգամ փոփոխություններ ու լրացումներ են կատարվել։ Նման դեպքերում, երբեմն օրենսդրի կամքից անկախ, պայմաններ են ստեղծվում սոցիալիստական օրինականության սկզբունքները խախտելու համար։

Չափազանց կարևոր նշանակություն ունի օրենսդրական գործունեության սոցիալական-իրավական կանխատեսման և պլանավորման առարկան ու պրոբլեմատիկան սահմանելը։ Այստեղ կարևոր է որոշել այն հասարակական հարաբերությունների և օրենսդրական ակտերի շրջանակը, որոնք համապատասխանաբար պետք է դառնան կանխատեսման ու պլանավորման առարկան։ Անհրաժեշտություն է դարձել ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների նոր սահմանադրությունների ընդունումը։ Այդ առնչությամբ հարկ է պլանավորել այն օրենքների հրատարակումը, որոնց վրա պետք է հենվի սահմանադրությունը։ Իրավական կանոնակարգման կարիք ունի այսպես կոչված ստատուտար օրենսդրությունը, այսինքն՝ Գերագույն սովետի, նրա նախագահության, կառավարության և այլ մարմինների իրավական վիճակն ու գործունեության ընթացակարգը մանրամասն կարգավորող օրենսդրական ակտերի ընդունումը։ Հասարակական պրակտիկան թելադրում է ո՛չ միայն սահմանադրական օրենսդրության (այդ թվում նաև ստատուտար) զարգացման անհրաժեշտությունը, այլև՝ ընթացիկ օրենսդրության բոլոր ճյուղերի։ Ընդհանրապես անհրաժեշտ է մշակել այն անհետաձգելի օրենսդրական ակտերի ցանկը, որոնց բացակայությունը չի կարելի նորմալ համարել։

Իրավական ակտերի սոցիալական արդյունավետության հաշվառումը հնարավորություն կտա էականորեն բարձրացնել իրավական ինստիտուտների և անգամ իրավունքի ճյուղերի օգտակար գործունեության գործակիցը։ Օրենսդրական գործունեության սոցիալ-իրավական կանխատեսման և պլանա-

վորման ճիշտ, գիտականորեն հիմնավորված մեթոդիկան ենթադրում է նաև
օրենսդրական տեխնիկայի կատարելագործում։ Այդ տեսակետից կարևոր
նշանակություն ունի օրենսդրական ակտերի նախագծերի քննարկումը գիտ-
նականների կողմից, այդ ակտերի վերաբերյալ հասարակական կարծիքի բա-
ցահայտումը ինչպես համաժողովրդական քննարկումների, այնպես էլ ան-
կետավորման միջոցով։ Օրենսդրական ակտերի նպատակահարմարությունն ու
արդյունավետությունը որոշելու համար կարևոր նշանակություն ունի պետա-
կան-իրավական էքսպերիմենտների իրականացումը։ Սոցիալիստական դեմո-
կրատիան, ինչ խոսք, ենթադրում է պետական-իրավական շինարարության
դեմոկրատական մեթոդների առկայություն։ Այդպիսի մեթոդներից է էքսպե-
րիմենտը, որի օգնությամբ նախօրոք, սահմանափակ տերիտորիայում գործ-
նականում ստուգվում են համապատասխան հասարակական-քաղաքական
միջոցառումների նպատակահարմարությունն ու արդյունավետությունը։ Այդ
մեթոդն, իր մեջ մարմնավորելով գիտության և պրակտիկայի նվաճումները,
հանդիսանում է հասարակության ղեկավարության գիտական հիմունքների
արտահայտություն։ Լենինը ցույց է տվել, որ «կյանքի, պրակտիկայի տեսա-
կետը պետք է լինի իմացաբանության առաջին և հիմնական տեսակետը» (Վ. Ի.
Լենին, Երկեր, հատ. 14, էջ 179)։ Հասարակական կյանքն ու պրակտիկան
միշտ չէ, որ կարելի է որոշել գիտական վերացարկումների և կանխատեսում-
ների օգնությամբ։ Այստեղ օգնության է գալիս էքսպերիմենտը, որի օգնու-
թյամբ, օրինակ, օպտիմալ ձևով կարելի է որոշել, թե արդյո՞ք հասունացել են
համապատասխան օրենսդրական ակտերն ընդունելու և կիրառելու օբյեկտիվ
պայմաններն ու հնարավորությունները։

Էքսպերիմենտը որպես գիտական մեթոդ չի կարելի համարել միայն տեխ-
նիկական և բնական գիտությունների մենաշնորհը, այն անհրաժեշտ է կիրա-
ռել նաև հասարակական գիտությունների բնագավառում։ Սովետական օրենս-
դրության մեջ կատարվող վերափոխումները կարող են և պետք է հիմնվեն
էքսպերիմենտի վրա։ Այն դեպքում, երբ տվյալ օրենսդրական ակտի նպատա-
կահարմարությունն ու արդյունավետությունը անհնար է հիմնավորել գիտա-
կան վերացարկումների և կանխատեսման օգնությամբ և, երբ առկա հասա-
րակական պրակտիկայով անհնար է այն հաստատել կամ ժխտել, ապա էքս-
պերիմենտ կատարելու հարցը դրականապես պետք է լուծվի։

Այսպիսով, միայն հասարակական զարգացման գիտական ճանաչողու-
թյան և օրենսդրական աշխատանքի բարձր տեխնիկայի հիման վրա կարելի է
ստեղծել հարաբերականորեն կատարյալ օրենսդրություն։ Այդ տեսակետից
կարևոր նշանակություն կունենա ՍՍՀ Միության և միութենական հանրապե-
տությունների գերագույն սովետներին կից հատուկ գիտական կենտրոնների
ստեղծումը (կարելի է անվանել սովետական շինարարության ինստիտուտ
կամ լաբորատորիա), դրանց հանձնարարելով օրենսդրական գործունեության
սոցիալական-իրավական կանխատեսման և պլանավորման ֆունկցիան, պե-
տական-իրավական էքսպերիմենտներ անցկացնելու խնդիրը և այլն։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳԼԽԱՎՈՐԸ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄՆ Է

1968 թվականի հունիսին ՀԿԿ Ապարանի շրջկոմի պլենումը քննարկեց
«Շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության հետագա մաս-
նագիտացման և կուսկազմակերպությունների խնդիրները» հարցը։ Դա ժամա-
նակին և շատ տեղին արված կարևոր քայլ էր։

Հարցի քննարկումից հետո կուսշրջկոմը հետամուտ եղավ իր որոշման
կատարմանը, բարձրացրեց սկզբնական կուսկազմակերպությունների պա-
տասխանատվությունն արտադրության մասնագիտացման գործում։ Ապարանի
կոլտնտեսություններն ու սովխոզներն անցած երկու տարում անասնաբուծու-
թյան զարգացման բնագավառում ձեռք բերեցին որոշակի հաջողություններ.
հանրային հոտում աճեց կովերի գլխաքանակը, բարձրացավ նրանց տեսա-
կարար կշիռը։ Աշխատավորների թափած ջանքերի շնորհիվ կոլտնտեսություն-
ներում և սովխոզներում զգալիորեն ավելացավ անասունների գլխաքանակը։

Նկատելի տեղաշարժ կատարվեց տնտեսությունների մասնագիտացման
ասպարեզում։ Այդ նպատակն էր հետապնդում որոշ տնտեսություններում
անասունների ցեղի բարելավման համար կատարվող աշխատանքը։ 1968 և
1969 թվականներին հանրային հոտը համալրվեց մեծ քանակությամբ ցեղա-
կան կովերով ու երինջներով։ Ցեղաբուծական աշխատանքի և գնման միջոցով
հանրային հոտի բարելավումը շարունակվում է։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար քըն-
նարկում են գյուղատնտեսության զարգացման հրատապ ու պրոբլեմային հար-
ցեր։ Մեզ համար, սակայն, հարցերի քննարկումն ինքնանպատակ չէ, այն
միշտ էլ բխում է եղած հնարավորությունների ու ռեզերվների հայտնաբերման
և օգտագործման շահերից։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները վերջին տարինե-
րին զգալիորեն բարելավել են որոշումների կատարումը, առավել ուշադիր են
վերաբերվում կոմունիստների քննադատական դիտողություններին ու առա-
ջարկություններին։ Մի քանի ամիս առաջ կատարված ուսումնասիրություննե-
րը ցույց տվեցին, որ շրջանի որոշ կոլտնտեսություններ ու սովխոզներ միան-
գամայն անբավարար են օգտագործում մսի արտադրության ավելացման հնա-
րավորություններն ու ռեզերվները։ Մայրական կազմի ստերջության բարձր
տոկոսի պատճառով շրջանում պակաս է ստացվում այնքան մատղաշ, որի

աճեցումը հնարավորություն կտար մսի համախառն արտադրությունն ավելացնել 10—20 տոկոսով։ Թթուջրի, Ղոնդաղսազի, Վարդենիսի, Ջքնաղի կոլտնտեսությունները պետությանը հանձնում են ցածր կենդանի քաշով ու նվազ գիրությամբ անասուններ։ Անցած տարի շրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք անասնապահական մթերքների, մասնավորապես խոզի և թռչնի մսի, արտադրության ու վաճառքի ավելացման գործում կոլտնտեսությունների ու սովխոզների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցերը։ Բյուրոյի անդամներն ու հրավիրված ընկերները հանգեցին այն եզրակացության, որ շրջանի կոլտնտեսություններում կան անասնապահական մթերքների ավելացման ռեզերվներ։ Մասնավորապես ընդգծվեց անասունների բտման ու գիրացման բրիգադների ստեղծման, ինկուբատորային ճտերի աճեցման, խոզաբուծության արդյունավետ զարգացման անհրաժեշտությունն ու կարևորությունը։ Մենք գտանք, որ խոզի և թռչնի մսի արտադրության՝ ՀԿԿ Կենտկոմի և Մինիստրների սովետի առաջադրանքը հնարավոր է իրագործել։ Մեր որոշումն այդ առթիվ լիովին հիմնավորված էր։ Տարակույս չկա, որ դրանք անպայման կիրագործվեն։ Անցած տարվա արդյունքները վկայում են այդ մասին։ Վարդենուտի, Շենավանի, Ծաղկահովտի, Սանգյառի կոլտնտեսությունները, Արագածի, Ջամշլուի, Լուսագյուղի սովխոզները և ուրիշ տնտեսություններ 1970 թ., նախորդ տարվա համեմատությամբ, զգալիորեն ավելացրել են կաթի, մսի ու ձվի արտադրությունը և գերակատարել պետությանն այդ մթերքների վաճառքի ու հանձնման տարեկան առաջադրանքները։ Նրանք առաջին վճռական քայլն են կատարել մեր մշակած միջոցառումներն իրականացնելու ճանապարհին։

Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները քանիցս որոշումներ ունեն արտադրության մեքենայացման մասին՝ քաջ գիտակցելով, որ դրա խելացի լուծումը աշխատանքի արտադրողականության աճի, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման և, վերջապես՝ արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր պայմանն է։ Շրջկոմի բյուրոյի 1969 թ. հունվարի 28-ի որոշումը՝ «Միջոցառումներ շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում անասնապահական ֆերմաների մեքենայացման հետագա բարելավման մասին» կիրառվեց արդյունավետ, երկու տարում կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին կոմպլեքսային մեքենայացման անասնապահական մի շարք շենքեր, մեքենայացվեցին աշխատատար շատ պրոցեսներ։ Այդ ասպարեզում լուրջ քայլեր են կատարվելու նաև ընթացիկ տարում։

Գյուղատնտեսության զարգացման գործում կարևոր դեր են խաղացել նաև կաթի ու կաթնամթերքի որակի բարելավման, կերի արտադրության ավելացման և այլ հրատապ հարցերի վերաբերյալ կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների որոշումները։ Անժխտելի են դրանց կենսագործման շնորհիվ ձեռք բերված հաջողությունները։ Պանրագործարանները հագեցվել են նոր սարքավորումներով, կանխվել են տեխնոլոգիական ռեժիմների խախտումները և ցածրորակ արտադրանքի թողարկումը։ Կոլտնտեսությունների մեծ մասը բարձրորակ կաթ է հանձնում մթերակայան։

Կարելի է շատ օրինակներ բերել, թե ինչպես սկզբնական կուսկազմակերպությունները, հիմնավորված որոշումներ ընդունելուց հետո, հետևողականորեն կենսագործում են դրանք, հարգում իրենց խոսքը։ Վարդենուտ և Վարդենիս գյուղերի բաղնիքների կառուցումը, օրինակ, պետք է համարել կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպությունների որոշումների կատար-



ման հետևելու կոնկրետ արդյունք։ Նույնը կարելի է ասել նաև Շենավանի կոլտնտեսությունում կերային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակելու մասին։ Շենավանի կոլտնտեսային, Արագածի սովխոզային, ռադիոտեխնիկական իրերի գործարանի և ուրիշ կուսկազմակերպություններ միևնույն պատասխանատվությամբ են հետևում վերադաս կուսակցական մարմինների և սեփական որոշումների կատարմանը, դրանով իսկ նպաստում տնտեսությունների առջև ծառացած հրատապ խնդիրների լուծմանը։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում և շրջկոմի պլենումներում կոմունիստները հանդես են գալիս բազմաթիվ և բազմատեսակ քննադատական դիտողություններով ու խելացի առաջարկություններով, առաջ քաշում ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող և անհապաղ լուծում պահանջող խնդիրներ։ Յուրաքանչյուր տարի, որպես կանոն, շրջկոմի բյուրոն հանրագումարի է բերում և քննարկում դրանք, մշակում միջոցառումների լայն պլան։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ստուգում են քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման ընթացքը։ Այդ տեսակետից բնորոշ է «Կուսակցական քաղաքական ինֆորմացիայի վիճակը և այն բարելավելու միջոցառումների մասին» կուսշրջկոմի 1969 թ. ապրիլի 15-ի որոշման կատարման ընթացքը Ծաղկահովտի և Մելիքգյուղի կուսկազմակերպություններում» հարցի քննարկումը։ Կուսշրջկոմը նախապես պարզեց, որ հիշյալ կուսկազմակերպությունները չեն հոգում այդ որոշման կատարման մասին, գործնական քայլեր չեն անում՝ քաղաքական ինֆորմացիայի գործում եղած թերությունները վերացնելու համար։ Դրանից հետո արմատապես բարելավվեց քաղաքական ինֆորմացիայի վիճակը։

Որոշումների և քննադատական դիտողությունների կատարմանը հետևելու կարևոր ձև է սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունը շրջանային կոմիտեի բյուրոյում։ Դա լայնորեն կիրառվում է կուսշրջկոմի աշխատանքի պրակտիկայում։ Շատ կուսկազմակերպություններում բյուրոները հերթական ժողովում կոմունիստներին տեղյակ են պահում, թե ինչպես են կենսագործվել նախորդ ժողովի որոշումները։ Որոշումների կատարման ընթացքի և արդյունքների մասին կուսկազմակերպությունները հաշիվ են տալիս նաև կուսշրջկոմին։

Վերադաս կուսակցական մարմինների, սեփական որոշումների և կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման շնորհիվ տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում մեր կոլտնտեսությունների, սովխոզների արտադրական ձեռնարկությունների ձեռք բերած հաջողություններն զգալի են։ Սակայն պիտի ընդունել, որ այդ գործում կան նաև լուրջ թերություններ, որոնց հաղթահարումը մեծ ջանքեր են պահանջում։

Ցավով պիտի նշել, որ առանձին կուսկազմակերպություններ անբավարար են զբաղվում կուսշրջկոմի և իրենց որոշումների կատարմամբ, չեն մոբիլիզացնում աշխատավորների ուժերը՝ եղած հնարավորություններն ու ռեզերվները հայտնաբերելու և գործողության մեջ դնելու, մշակած միջոցառումներն իրականացնելու համար։

Գյուղատնտեսության զարգացման, բնակչության պահանջմունքների բավարարման շահերը թելադրում են արդյունավետ օգտագործել հողը, ոռոգման և հացահատիկի բերքատվության բարձրացման հնարավորությունները։ Անցած

տարիներին շրջկոմի բյուրոն և մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ անդրադարձան այդ հարցերին, առաջ քաշեցին գյուղատնտեսության ինտենսիվացման լուրջ խնդիրներ։ Շատ տնտեսություններ ճիշտ եզրակացություն հանեցին կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների որոշումներից և վճռական քայլեր կատարեցին այդ ասպարեզում, սակայն նրանց ձեռքբերած ներկա մակարդակը դեռևս հեռու է բավարար համարվելուց։ Թթուջրի, Մռավյան գյուղերի կոլտնտեսությունները վատ են օգտագործում ջրովի հողերը, հաճախ ցանում են նվազ եկամտաբեր կուլտուրաներ։

Ծաղկահովտի կոլտնտեսության կոմունիստներն իրենց ժողովներում բազմիցս քննադատել են ոռոգման և ջրարբիացման սիստեմների շրջանային վարչությանը՝ իրենց ջրանցքի շինարարությունը ձգձգելու համար։ Սակայն վարչության ընկերներն անտարբերություն են հանդես բերում նրանց քննադատական դիտողությունների նկատմամբ։ Շենավան, Մռավյան գյուղերի կոլտնտեսությունների կոմունիստները քննադատական դիտողություններով հանդես են եկել Ապարանի № 13 շարժական մեքենայացված շարասյան ղեկավարության հասցեին՝ պահանջելով արագացնել անասնապահական շենքերի շինարարությունը։ Իսկ շարասյան ընկերներն անհրաժեշտ հետևություն չեն արել դրանցից և վճռական միջոցներ չեն ձեռնարկել վիճակը շտկելու համար։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում քննադատական ճիշտ դիտողություններ են եղել կենցաղսպասարկման կոմբինատի, շրջկոոպի և «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային բաժանմունքի, ավտոգրասենյակի ղեկավարների հասցեին՝ կենցաղային սպասարկումն ու կուլտուրական առևտուրը վատ կազմակերպելու, գյուղատնտեսական մեքենաների նորոգումը ձգձգելու, երթևեկության գրաֆիկը խախտելու համար։ Պետք է խոստովանել, որ այդ դիտողությունների և առաջարկությունների մի մասը լրիվ չի կենսագործվել։

Վերադաս կուսակցական մարմինների որոշումների անշեղ կենսագործումը սկզբնական կուսկազմակերպությունների պարտքն է, ցավոք, նրանց մի մասը, ըստ էության, այդ բանը ճիշտ չի գիտակցում։ Նման շատ օրինակներ կարելի է բերել Թթուջրի, Ղոնդաղսազի կոլտնտեսությունների, Ջարջառիսի, Լուսագյուղի սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններից։

Պատահել են նաև դեպքեր, երբ որոշ կուսկազմակերպություններ (Ապարանի, Մելիքգյուղի, Ալագյազի սովխոզային, Բուժականի, Արայի կոլտնտեսային) անտարբերություն են հանդես բերել կուսշրջկոմի՝ բոլորի համար պարտադիր առանձին որոշումների նկատմամբ, չեն քննարկել դրանք։

Առանձին կուսկազմակերպություններում սովորույթ է դարձել ոչ հիմնավորված որոշումներ ընդունելը։ Այսպես, օրինակ, Ջամշլուի սովխոզի կուսկազմակերպության ժողովների՝ աշխատանքի արտադրողականության, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման վերաբերյալ որոշումները կրում են դեկլարատիվ բնույթ, չեն ելնում տնտեսության կոնկրետ հնարավորություններից։

Ցանկալի արդյունք չեն կարող տալ նաև հարցերի հապճեպ քննարկումն ու, ինչպես ասում են, ոտքի վրա որոշում ընդունելը։ Ահա դրան բնորոշ մեկ օրինակ։ Անցած տարվա մարտին Բուժականի կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպության ժողովում դրված էր ֆերմայի վարիչի զեկուցումը՝ ոչխարների ծնի ընթացքի մասին։ Ժողովի օրը զեկուցողն ինչ-որ պատճառով բացակայում է։ Կուսբյուրոյի քարտուղար Ս. Խաչատրյանը հանպատրաստից օրակարգ է հորինում և քննարկման դնում սերմերի զտման ու ձեռքբերման



հարցը։ Կոմունիստները պասսիվություն են հանդես բերում. քննարկումն անցնում է տաղտուկ։ Պարզ է, նման հապճեպությունը և ձևի համար որոշում ընդունելը բնավ էլ չեն կարող օգնել գործին։

Կուսկազմակերպությունները պարտավոր են կոմունիստներին ակտիվորեն մասնակից դարձնել որոշումների, քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման ստուգմանը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը՝ կոլեկտիվ կերպով մշակված միջոցառումների կենսագործման համար։ Մինչդեռ Մռավյան գյուղի կոլտնտեսության, Ալագյազի սովխոզի, կենցաղսպասարկման կոմբինատի սկզբնական կուսկազմակերպություններն այդպես չեն վարվում։ Իսկ Ղոնդախսազի, Թթուջրի, Ափնայի և Նիգավանի կոլտնտեսային կուսկազմակերպությունները հարկ եղած ուշադրություն չեն նվիրում կոմունիստների քննադատական դիտողություններին ու առաջարկություններին, դրանք հաշվառման չեն վերցնում։

Որոշումների, կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման գործում տեղ գտած վերոհիշյալ աղաղակող թերությունները չէին կարող չմտահոգել կուսշրջկոմին։ Անցած տարվա մայիսին շրջկոմի հերթական պլենումը քննարկեց կոմունիստների կողմից արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների և որոշումների կենսագործման վիճակը շրջանի կուսկազմակերպություններում, մշակեց գործնական միջոցառումներ։ Դրանք ուղղված են թվարկած և մյուս թերությունների վերացմանը։ Ներկայումս գյուղական կուսկազմակերպությունների առջև առավել լուրջ խնդիրներ են ծառացել։ Գյուղատնտեսության զարգացման հերթական խնդիրների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշմամբ անհապաղ լուծման ենթակա լուրջ պրոբլեմներ են առաջադրվում կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպություններին։ Մեր շրջանի կուսկազմակերպությունները, բոլոր կոմունիստները, պարտքի խոր գիտակցությամբ վերաբերվելով այդ պրոբլեմների լուծմանը, սոցիալիստական գործարար մրցություն ծավալեցին ՀԿԿ XXV և ՍՄԿԿ XXIV համագումարները պատվով դիմավորելու համար։

Այժմ արդեն կարող ենք ասել, որ նախընթաց ամիսներին գործադրած մեր ջանքերը լավ արդյունք են տվել, շրջանը այդ համագումարները նշանավորում է ստանձնած պարտավորությունները կատարած։

Ս. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿԿ Ապարանի շրջկոմի երկրորդ քարտուղար



# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

## ԽԹԱՆԵԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Հանրապետությունում ծավալվել են վիթխարի շինարարական աշխատանքներ: Գոյացել է շինարարների մի ստվար բանակ, որն իր շարքերում միավորում է 75 հազար մարդ: Ընդ որում, արդյունաբերական շինարարության մինիստրության սիստեմում ընդգրկված է 45 հազար, իսկ գյուղական շինարարության մինիստրության սիստեմում՝ 13 հազար շինարար: Ամեն տարի նրանք կատարում են ավելի քան 300 միլիոն ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանք: Այս ամենը պահանջում է առավել մեծ ուշադրություն նվիրել շինարարների կարիքների ու պահանջների բավարարմանը, նրանց քաղաքական դաստիարակությանը: Ելնելով դրանից՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկեց հանրապետության շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի վիճակը:

Կենտկոմի բյուրոն նշեց, որ մի շարք քաղաքային և շրջանային կոմիտեներ ու սկզբնական կուսկազմակերպություններ զգալիորեն բարելավել են շինարարների շրջանում տարվող քաղաքական դաստիարակության գործը: Նրանք օգտագործում են մասսայական-քաղաքական աշխատանքի, նյութական և բարոյական խրախուսանքի բազմազան ձևեր ու մեթոդներ, լրջորեն զբաղվում շինարարների կենցաղի ու հանգստի կազմակերպմամբ և գործարար սոցիալիստական մրցություն ծավալում՝ կառույցները ժամանակին ու բարձր որակով շահագործման հանձնելու համար:

Քաղկոմ-շրջկոմների բյուրոներում, պլենումներում և ակտիվի ժողովներում, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1969 թ.) որոշումների լույսի տակ, շինարարական աշխատանքները բարելավելու վերաբերյալ քննարկվել են բազմազան հրատապ հարցեր և միջոցառումներ մշակվել դրանց արդյունավետ լուծման համար:

Վ. Ի. Լենինի ծննդյան հոբելյանական տարում շինարարները ստանձնեցին բարձր պարտավորություններ և պատվով կատարեցին դրանք: Հանրապետության մի շարք շինարարական կազմակերպություններ լավագույն գործունեության համար արժանացան ՀԿԿ Կենտկոմի, Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշներին, հոբելյանական պատվոգրերի, իսկ բազմաթիվ շինարարներ՝ լենինյան հոբելյանական մեդալների: Երքիմշին, № 14, Երարդշին, Լենինականի, Հրազդանի, Ախթալայի, Էջմիածնի № 1, Գյուղշին տրեստները 1969 թ. շինմոնտաժային աշխատանքների առաջադրանքները գերակատարեցին տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով, իսկ 1970 թվականին հասան ավելի բարձր արդյունքների: Այդ հաջողություններին զգալիորեն նպաստել են քաղաքական-դաստիարակչական աշխատանքի պատշաճ կազմակերպումը, առաջավոր փորձի պրոպագանդումն ու արմատավորումը, նյութական ու բարոյական խրախուսման հետևողական կիրառումը: Ուշադրության կենտրոնում են պահվել շինարար բանվորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և հանգստի կազմակերպման հարցերը:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ շինարարական շատ կազմակերպություններում բանվորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքում գոյություն ունեն լուրջ թերություններ: Կուսկազմակերպությունները դեռևս անբավարար են օգտագործում քաղաքական-դաստիարակության այնպիսի ձևեր, ինչպիսիք են, հարց ու պատասխանի, թեմատիկ երեկոները, հանդիպումները, գիտա-արտադրական խորհրդակցությունները, լեկտորիումները, ժողովրդական համալսարանները, առաջավոր փորձի դպրոցներն ու խմբակները: Շինարարական շատ կոլեկտիվներում ագիտատորների ու քաղինֆորմատորների զրույցները կրում են մակերեսային, ձևական բնույթ, իսկ որոշ տեղերում ագիտկոլեկտիվների ու քաղինֆորմատորների խմբերը անգործության են մատնված, հոգ չի տարվում կոմունիստների,



բոլոր աշխատողների տեսական-քաղաքական մտահորիզոնի ընդլայնման մասին, լիովին չեն օգտագործվում քաղաքական ուսուցման սիստեմի հնարավորությունները:

Շինարարական մինիստրությունների, գերատեսչությունների մի շարք ղեկավարներ հեռու են կանգնած քաղաքական-դաստիարակչական աշխատանքից: Նրանք խիստ հազվադեպ են հանդես գալիս դասախոսություններով, զեկուցումներով, զրույցներով, չեն կատարում դաստիարակչի իրենց դերը: Ավելին, շինարարության բնագավառի ղեկավարներից ոմանք, անձնական օրինակ ցույց տալու փոխարեն, երբեմն իրենք են թույլ տալիս կարգապահական խախտումներ ու հանցանքներ, ենթարկվում վարչական և քրեական պատասխանատվության:

Առանձին կուսկազմակերպություններ շինարարներին չեն դաստիարակում աշխատանքի, պետական կարգապահության, սոցիալիստական սեփականության պահպանման նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով: Դրա հետևանքով թուլանում է կոլեկտիվի ուժը, ընկնում կարգապահությունը, վատանում աշխատանքի որակը, թերակատարվում են պետական առաջադրանքները, տեղի են տրվում հավելագրումների, սոցիալիստական սեփականության հափշտակումների ու վատնումների, սոցիալիստական կենցաղավարության, կոմունիստական բարոյականությանը խորթ երևույթների:

Շինարարության առաջադրանքների հաջող կատարումը մեծապես պայմանավորված է բանվորների աշխատանքային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմամբ: Սակայն շինարարական շատ կազմակերպություններում չկան ակումբներ, գրադարաններ, կարմիր անկյուններ, հանգստի սենյակներ, առևտրի, հասարակական սննդի օբյեկտներ, հանրակացարաններ, բաղնիքներ, բժշկական սպասարկման կետեր, սպորտհրապարակներ և այլն:

Մի շարք շինարարական կազմակերպություններ դեռևս լուրջ ուշադրություն չեն նվիրում շինարարական-մոնտաժային աշխատանքի որակին: Օբյեկտների կառուցման ընթացքում թույլ են տրվում տեխնիկական նորմաների խախտումներ, իսկ առանձին դեպքերում դրանք շահագործման են հանձնվում լուրջ թերություններով: Շատ հաճախ խախտվում են կառուցվող օբյեկտների նախագծերը: Նախագծերի խախտումները և կամայական, անթույլատրելի փոփոխությունները վնաս են հասցնում կառույցների ամրությանն ու դիմացկունությանը: Շինարարական ցածրորակ աշխատանքի առանձին փաստեր կան Բարձրաբերձշին, Ջերմուկշին, № 6, Գյուղշին և մի քանի այլ տրեստներում:

Հանրապետության շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու համար ՀԿԿ Կենտկոմի բյուրոն ընդունեց կոնկրետ, գործնական որոշում:

Կենտկոմի բյուրոն կուսակցության քաղկոմ-շրջկոմներին, շինարարական օբյեկտների սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարեց արմատապես բարելավել շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական և կուլտուր-մասսայական աշխատանքը, այն նպատակամղել պետական պլանների կատարմանն ու գերակատարմանը, շինարարության որակի բարելավմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, մեխանիզմների ռացիոնալ օգտագործմանը, ինքնարժեքի իջեցմանը և խնայողության ռեժիմի պահպանմանը: Յուրաքանչյուր շինարարի պարզաբանել տնտեսական ռեֆորմի իրագործման, գիտատեխնիկական պրոգրեսի արագացման, աշխատանքի գիտական կազմակերպման նշանակությունն ու կարևորությունը: Լայնորեն ծավալել սոցիալիստական գործարար մրցություն, կիրառել նյութական ու բարոյական խրախուսանքի բոլոր ձևերն ու մեթոդները:

Կենտկոմի բյուրոն կուսակցական և սովետական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց շինարարության բնագավառում աշխատանքային կարգապահության խախտումների, սոցիալիստական սեփականության վատնում-յուրացումների, հավելագրումների, շռայլումների, անտնտեսվարության դեմ պայքարն ուժեղացնելու վրա:

Բյուրոն կուսակցական, արհմիութենական, ստեղծագործական կազմակերպություններին, ինչպես նաև շինարարական և մի շարք այլ մինիստրությունների ու գերատեսչությունների պարտավորեցրեց լրջորեն զբաղվել շինարարների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմամբ, նրանց հանգստի կազմակերպմամբ, էսթետիկական դաստիարակությամբ, շինարարներին հուզող հարցերի ժամանակին լուծմամբ:

Կենտկոմի բյուրոն շինարարական կազմակերպություններից պահանջեց գործնական միջոցներ ձեռնարկել կադրերի հոսունությունը կանխելու, բանվորական կայուն կոլեկտիվներ ստեղծելու, շինարարների աշխատանքային և ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու, նրանց որակավորումը և արտադրական-տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար: Այդ նպատակով խնդիր դրվեց աշխուժացնել առաջավոր փորձի դպրոցների և խմբակների, մշտական գործող արտադրական խորհրդակցությունների, տնտեսական վերլուծության բյուրոների գործունեությունը, հաճախակի անցկացնել գիտա-տեխնիկական կոնֆերանսներ, դասախոսություններ, զեկուցումներ, շինարարների հավաքներ՝ նվիր—

ված ձեռք բերված նվաճումներին, գիտության և տեխնիկայի նորություններին և առաջավոր փորձի արմատավորմանը: Կազմակերպել էքսկուրսիաներ և արտադրության նորարարների ու առաջավորների հանդիպումներ:

Կենտկոմի բյուրոն հանձնարարեց հանրապետական քաղաքային և շրջանային թերթերի ու ամսագրերի խմբագրություններին, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին՝ սիստեմատիկաբար նյութեր հրապարակել և հաղորդել շինարարական կազմակերպությունների գործունեության մասին, լայնորեն պրոպագանդել առաջավոր փորձը, լուսաբանել սոցիալիստական պարտավորությունների, պետական պլանների ու առաջադրանքների կատարման ընթացքը, շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը:

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարությունը վերջերս քննարկեց «Ժողովրդական վերահսկողության մարմինների նկատմամբ ՀԿԿ Մարտունու շրջկոմի ղեկավարության մասին» հարցը:

Քարտուղարությունը նշեց, որ Հայաստանի կոմկուսի Մարտունու շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, կենսագործելով կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումի որոշումները, ամենօրյա ղեկավարություն են ցույց տալիս շրջանի ժողովրդական վերահսկողության մարմիններին:

Շրջանի կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում ժողովրդական վերահսկողության խմբերի նախագահների և պոստերի ղեկավարների ընտրությանը: Ժողովրդական վերահսկողության խմբերի և ժողովրդական վերահսկիչների թիվը շրջանում, 1969 թ. համեմատությամբ, ավելացել է: Այժմ հաշվվում են 61 խումբ և 180 պոստ, ուր ընդգրկված է 1700 ակտիվիստ:

Կուսկազմակերպությունների գործնական օգնությամբ վերջին մեկուկես տարվա ընթացքում զգալի չափով բարելավվել է նաև ժողովրդական վերահսկողության մարմինների ակտիվի որակական կազմը: Շրջանի ժողովրդական վերահսկիչներից 630-ը ՍՄԿԿ անդամներ են, մոտ 300-ը՝ կոմերիտականներ, 350-ը կանայք են: Ավելի քան 1050-ը առաջավոր բանվորներ ու կոլտնտեսականներ են, 230-ը՝ գյուղատնտեսության մասնագետներ, 26-ը՝ ինժեներա-տեխնիկական, 130-ը՝ առողջապահության, լուսավորության և կուլտուրայի բնագավառի աշխատողներ. 163 ժողովրդական վերահսկիչներ ունեն բարձրագույն և թերի բարձրագույն, 1079-ը՝ միջնակարգ և միջնակարգ մասնագիտական կրթություն:

Իրենց ամենօրյա գործունեության մեջ շրջանային կոմիտեն, ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը շրջանի կուսկազմակերպություններին և տնտեսական ղեկավարներին զգալի օգնություն են ցույց տալիս արտադրական ռեզերվների հայտաբերման, նյութական ռեսուրսների, դրամական միջոցների խնայողաբար օգտագործման, պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման համար, անտնտեսվարության և վատնումների դեմ մղվող պայքարում: Շրջանային կոմիտեն, ժողովրդական վերահսկողության շատ խմբեր ու պոստեր այսօր առավել օպերատիվ են իրականացնում վերահսկողությունը հանուն պետական պլանների ու առաջադրանքների կատարման, խորապես ուսումնասիրում են եղած թերությունների պատճառները, ջանադրաբար հետամուտ լինում դրանց վերացմանը:

Խմբերի ու պոստերի մեծ մասը ճիշտ է ըմբռնում իր խնդիրները, գործուն կերպով վերահսկում տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի վերաբերյալ կուսակցության ու կառավարության ցուցումների կենսագործումը: Շրջանի ժողովրդական վերահսկիչները, կատարելով կուսկազմակերպությունների օգնականի իրենց ֆունկցիան, արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններում սիստեմատիկ ստուգումներ են անցկացնում, ռեյդեր կազմակերպում այնպիսի հարցերի շուրջ, ինչպես գյուղատնտեսական աշխատանքների և բերքահավաքի նախապատրաստումն ու անցկացումն է, հանրային անասնապահության արդյունավետության բարձրացման միջոցառումների կենսագործումը, գյուղատնտեսական տեխնիկայի, հանքային պարարտանյութերի օգտագործումն ու սոցիալիստական սեփականության պահպանումը: Ժողովրդական վերահսկողության մարմինները մեծ ուշադրություն են նվիրում նաև արտադրության կազմակերպման, աշխատանքի վարձատրման գործող սիստեմի ճիշտ կիրառման, տնտեսությունների շահութաբերության բարձրացման հարցերին: Ստուգման արդյունքները, որպես կանոն, քննարկվում են խմբերի ժողովներում և բյուրոների նիստերում, ուր բացահայտված թերությունները վերացնելու նպատակով առաջարկություններ են արվում, հանձնարարություններ տրվում, միջոցառումներ մշակվում: Ստուգման արդյունքների հիման վրա խմբերի ժողովներում հաճախ են լսվում արտադրական պլանների ու առաջադրանքների կատարումը խոչընդոտող, պետական կարգապահությունը խախտող, անտնտեսավարություն, չարաշահումներ թույլ տվող անձանց բացատրությունները, ինչպես նաև ձեռնարկությունների ղեկավարների հաղորդումները՝ ժողովրդական վերահսկիչների բացահայտած թերությունները վերացնելու նպատակով ձեռնարկվող միջոցների վերաբերյալ:

Առավել ակտիվ են գործում ժողովրդական վերահսկողության Վարդենիկի, Աստղաձորի, Ձորագյուղի կոլտնտեսությունների, Թազագյուղի, Երանոսի, Լիճքի սովխոզների, «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորման և շատ այլ խմբեր:

Արդյունավետ գործունեություն է ծավալել Արփա—Սևան թունելի Մարտունու տեղամասի շինարարական վարչության ժողովրդական վերահսկողության խումբը (նախագահ՝ Լ. Սարգսյան): «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի պահանջներն իրագործելու նպատակով՝ խումբը կոնկրետ միջոցառումներ մշակեց և գործուն վերահսկողություն սահմանեց պետական առաջադրանքների կատարման և նյութական ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման նկատմամբ:

Ստուգելով ավտոտրանսպորտի օգտագործման վիճակը՝ խումբն ի հայտ բերեց մի շարք լուրջ խախտումներ: Տրանսպորտն առավել արդյունավետ օգտագործելու և բեռները ժամանակին տեղափոխելու նպատակով ձեռնարկված միջոցների շնորհիվ զգալի չափով պակասեցին ցեմենտի փոխադրման կորուստները, իսկ տրանսպորտի ծախսերը կրճատվեցին 10 հազար ռուբլով: Շինարարությանն սպասարկող տրանսպորտային կազմակերպությունների հետ ճշգրտվեցին փոխադարձ հաշիվները: Վարչությունը բռնագանձեց 20 հազար ռուբլի, որ անօրինական կերպով ստացել էին տրանսպորտային կազմակերպությունները:

Շինարարության ժողովրդական վերահսկիչներն ստուգեցին նաև նյութական արժեքները և հայտաբերեցին շինանյութերի պակասորդ: Շինվարչության ադմինիստրացիան վերականգնեց պակասորդը, իսկ մեղավորները ենթարկվեցին խիստ պատասխանատվության: Էլեկտրաէներգիայի սպառման վիճակի ստուգումից պարզվեց, որ ավանում այն ծախսվում է ոչ խնայողաբար: Բնակիչներից շատերը չեն մուծում օգտագործած էլեկտրաէներգիայի վարձը: Խմբերի առաջարկով տեղադրվեցին հաշվիչներ և միջոցներ ձեռնարկվեցին բնակիչներից էլեկտրաէներգիայի վարձը գանձելու համար: Դրա շնորհիվ շինվարչությունն ստացավ մոտ 8 հազար ռուբլու օգուտ:

Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն պատշաճ ուշադրություն է նվիրում կուսակցության և կառավարության որոշումները ճշտորեն կատարելուն, աշխատավորական լայն մասսաներին վերահսկողության ոլորտն ընդգրկելուն, ժողովրդական վերահսկողության խմբերի կազմակերպական ամրապնդմանն ու նրանց ցույց տրվող օգնությանը, ակտիվի ուսուցմանը: Շրջանային կոմիտեն 1969 թվականին և 1970 թվականի առաջին կիսամյակում անց է կացրել 49 ստուգում, վերստուգում ու ռեյդ, որոնց արդյունքները քննարկվել են կոմիտեի նիստերում, իսկ առանձին կարևոր հարցեր ներկայացվել են կուսշրջկոմի բյուրոյի, կուսակցական ակտիվի ժողովի, շրջսովետի գործկոմի և սեսիաների քննարկմանը:

Ստուգումներից պարզվել է, որ եղել են պետական կարգապահության խախտման, անտնտեսավարության, շռայլումների, հավելագրումների, աչքակապության դեպքեր, ինչպես նաև 15.052 ռուբլու դրամական միջոցների ու նյութական արժեքների վատնում ու հափշտակում: Ստուգումներից հետո մեղավորները կանչվել են պատասխանատվության (վեց հոգի հեռացվել են աշխատանքից, տասներեքը՝ ենթարկվել դրամական տույժի): Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեի նյութերի հիման վրա շրջանի դատախազությունը քրեական գործ է հարուցել գյուղական շինարարության մինիստրության № 7 տրեստի Մարտունու մեքենայացված № 2 շրջիկ շարասյունում տեղի ունեցած սոցիալիստական սեփականության հափշտակումների և այլ խախտումների վերաբերյալ: Ըստ նախնական հաշվումների՝ պակասորդներից և հափշտակումներից առաջացած կորուստները կազմում են մոտ 68 հազար ռուբլի:

Ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեությունը մշտապես գտնվում է շրջանային կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում: Կուսշրջկոմը պարբերաբար քննարկում է ժողովրդական վերահսկողության մարմինների ղեկավարման և գործնական օգնություն ցույց տալու հարցերը:

Կոլտնտեսությունների, սովխոզների, ձեռնարկությունների և հիմնարկությունների կուսկազմակերպությունները մշտական հոգատարություն են ցուցաբերում ժողովրդական վերահսկողության խմբերի և պոստերի կազմակերպական ամրապնդման նկատմամբ, սիստեմատիկ հանձ-

նարարություններ տալիս խմբերին, հետևում դրանց կատարմանը, կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում լսում նրանց հաշվետվությունները կատարած աշխատանքի մասին:

Երանոսի, Ծովինարի սովխոզների, Վարդենիսի, Աստղաձորի և շատ ուրիշ գյուղերի կոլտնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններ ժամանակին քննարկում են ժողովրդական վերահսկողության խմբերի ներկայացրած առաջարկությունները և դրանց հիման վրա ձեռնարկում համապատասխան միջոցներ:

Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն իր պրակտիկ գործունեության ոլորտն է ներգրավում հասարակական կազմակերպություններին, մասնավորապես «Կոմերիտական լուսարձակի» ջոկատներին: Շրջանում գործում է «Կոմերիտական լուսարձակի» 42 ջոկատ, որոնցում ընդգրկված են 150 ՀամԼԿԵՄ անդամ, ինչպես նաև ոչ-կոմերիտական պատանիներ ու աղջիկներ:

Ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը, «Կոմերիտական լուսարձակի» ջոկատների հետ մեկտեղ, սիստեմատիկ ռեյդեր են կազմակերպում, ստուգում մեքենաների ու մեխանիզմների պահպանման, հանքային պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման, մետաղի թափոնների հավաքման ու հանձնման, առևտրական կազմակերպությունների և հասարակական սննդի մատակարարման, բնակարանների և ձեռնարկությունների սանիտարական վիճակը:

Քարտուղարությունը միաժամանակ ընդգծեց, որ ժողովրդական վերահսկողության օրգանների ղեկավարման ասպարեզում կուսակցական կազմակերպության գործունեությունում կան մի շարք թերություններ: Առանձին կուսկազմակերպություններ խոր չեն թափանցում ժողովրդական վերահսկողության խմբերի աշխատանքի մեջ և նրանց պատշաճ օգնություն ցույց չեն տալիս՝ անցկացվող միջոցառումների արդյունավետության բարձրացման և հրապարակայնության ապահովման, աշխատավորական լայն մասսաներին վերահսկողության բնագավառը ներգրավելու գործում: Ոչ բոլոր կուսկազմակերպություններն են կոնկրետ հանձնարարություններ տալիս ժողովրդական վերահսկողության խմբերին, ժողովրդական վերահսկիչներին բավարար չափով մասնակից դարձնում անտնտեսվարության ու շռայլումների, պետական և աշխատանքային կարգապահության խախտումների դեմ մղվող պայքարին, արտադրության ռեզերվների հայտաբերմանն ու օգտագործմանը, նրա արդյունավետության բարձրացմանը: Սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների աշխատանքային պլաններում հաճախ չեն նախատեսվում այնպիսի հարցեր, որոնք կապված լինեն ժողովրդական վերահսկողության խմբերին ու պոստերին ղեկավարելու և գործնական օգնություն ցույց տալու հետ:

Որոշ կուսկազմակերպությունների քարտուղարներ ու տնտեսական ղեկավարներ ժողովրդական վերահսկիչների առջև սակավ են ելույթներ ունենում պետական պլանների կատարման ընթացքի և կոլեկտիվների ստանձնած սոցիալիստական պարտավորությունների, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի առթիվ մշակած միջոցառումների իրականացման և սոցիալիստական սեփականության պահպանման, պետական կարգապահության ամրապնդման վերաբերյալ կուսակցության ու կառավարության ցուցումների շուրջ:

Վերահսկիչների, ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի աշխատանքն աչքի չի ընկնում լայն հրապարակայնությամբ: Շրջանային «Թռիչք» թերթում, ստորին մամուլում, ռադիոյի տեղական հաղորդումներում հազվադեպ են լուսաբանվում ժողովրդական վերահսկողության աշխատանքի հարցերը: Շրջանում սակավ են ֆոտոստենդները, երգիծական թերթերը:

Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի քարտուղարությունը, նշելով ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեությունը ղեկավարելու ասպարեզում ՀԿԿ Մարտունու շրջանային կոմիտեի (առաջին քարտուղար՝ Ս. Խաչատրյան) դրական աշխատանքը, նրան հանձնարարեց անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել եղած թերությունները վերացնելու և ժողովրդական վերահսկողության մարմինների նկատմամբ կուսակցական ղեկավարությունը առավել բարելավելու համար: Կենտկոմի քարտուղարությունը կուսշրջկոմին, սկզբնական կուսկազմակերպություններին պարտավորեցրեց այսուհետև ևս ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեությունն ուղղել տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների, կուսակցության և կառավարության որոշումների կատարմանը, ապահովել ժողովրդական վերահսկիչների ակտիվ մասնակցությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի (1970 թ.) որոշումները կենսագործելու, ՍՄԿԿ XXIV համագումարն արժանավայել դիմավորելու համար:



# ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

## ԲԱՐՁՐԱՑԵԼ Է ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*ՀԿԿ Ղափանի շրջանային կուսկազմակերպության վերջերս տեղի ունեցած հերթական կոնֆերանսը հանրագումարի բերեց կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների անցած ժամանակաշրջանի գործունեության արդյունքները: Նրա մասնակիցները մատնանշեցին, որ կուսկազմակերպությունների ղեկավարությամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները ձեռք են բերել զգալի հաջողություններ, պատվով կատարել պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները: Կուսկազմակերպությունները նշանակալիորեն բարձրացրել են քաղաքական ու կազմակերպական աշխատանքի բովանդակությունը, հետևողականորեն կենսագործել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները:*

*Շրջանի կուսկազմակերպությունները տնտեսական և քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած նվաճումներով են նշանավորում ՍՄԿԿ և Հայաստանի կոմկուսի հերթական համագումարները: Այդ նվաճումները բազմազան են ու նշանակալից: Սակայն հարկ եմ համարում խոսել դրանցից մեկի՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին, ցույց տալ այդ ասպարեզում կատարված գործնական քայլերը:*

*Ղափանի շրջանի կուսկազմակերպությունները լայն աշխատանք են ծավալել շրջանի էկոնոմիկայի զարգացման վիթխարի խնդիրները լուծելու, հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար: Կուսակցության շրջանային կոմիտեի, սկզբնական կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, բանվոր-ծառայողների կոլեկտիվների համատեղ ջանքերը լավ արդյունք են տվել. ժամկետից շուտ կատարվել են հնգամյակի ժողովրդա-տնտեսական պլանները՝ բոլոր հիմնական ցուցանիշներով: Ընդ որում, անցած չորս ու կես տարում շրջանի արդյունաբերության արտադրանքի ծավալը մեծացել է 44 տոկոսով:*

*Ուրախալին այն է, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 31 տոկոսով, մինչդեռ արդյունաբերության մեջ բանվորների թիվն այդ ժամանակամիջոցում ավելացել է միայն 9 տոկոսով: Այսպիսով, արդյունաբերության արտադրության աճը կատարվել է նոր կարողությունների գործարկման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:*

*Պետք է ասել, որ նախորդ տարիներին միշտ չէ, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում գործերը բարեհաջող են ընթա-*

ցել։ Դեռևս 1965 թվականին շրջանային կուսկազմակերպության հերթական կոնֆերանսը լուրջ թերություններ բացահայտեց աշխատանքի արտադրողականության բարձրացման համար կուսկազմակերպությունների գործունեության մեջ։ Սուր և տեղին քննադատություն եղավ շրջանի մի շարք խոշոր կազմակերպությունների, մասնավորապես Քաջարանի պղնձամոլիբդենային, Ղափանի պղնձահանքային ու կենցաղային սպասարկման կոմբինատների, «Քաջարանշին» տրեստի շինարարական վարչությունների հասցեին։ Բանն այն է, որ այդ ձեռնարկություններում լուրջ թերություններ գոյություն ունեին արտադրական հիմնական ֆոնդերի ժամանակին գործարկման, դրանց նախագծային կարողությունների յուրացման, գործող մեխանիզմների ու սարքավորումների և նյութական մյուս ռեսուրսների օգտագործման, աշխատանքի կազմակերպման, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման գործում։ Այդ ամենի պատճառով ինչպես նշված կազմակերպություններում, այնպես էլ շրջանի արդյունաբերության և շինարարության մեջ թերակատարվում էր աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, արտադրողականության նկատմամբ աշխատավարձի ֆոնդն աճում էր ավելի արագ, որը նորմալ երևույթ չէր։

Կոնֆերանսն այդ վիճակը գնահատեց որպես սոցիալիստական տնտեսավարման սկզբունքի խախտում, լուրջ թերություն շրջանի կուսակցական և տնտեսական կազմակերպությունների գործունեության մեջ։ Կուսկազմակերպությունների առջև խնդիր դրվեց ուշադրության կենտրոնում պահել այդ կարևոր բնագավառը, կոնկրետ միջոցառումներ մշակել՝ բոլոր ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման արգելքները հաղթահարելու, ժողովրդա-տնտեսական պլանով սահմանված արտադրանքի աճի առաջադրանքն անթերի կատարելու համար։

Ճիշտ հետևություններ անելով այդ բոլորից՝ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները բանվորների և տեխնիկական մտավորականության ուշադրությունն ու ուժերը նպատակամղեցին արտադրության կազմակերպման բարելավմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական զինվածությանը, դրանք ժամանակակից բարձր արտադրողական մեքենաներով ու սարքավորումներով հագեցնելուն, արտադրապրոցեսների աշխատատարության կրճատմանը։ Կուսկազմակերպությունները քաջ գիտակցում են, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման շահերը պահանջում են՝ բոլոր օղակներում ձեռքի աշխատանքը փոխարինել մեքենայականով, խնայողաբար օգտագործել հումքն ու բազմապիսի նյութերը, հետևողականորեն կատարելագործել արտադրության տեխնոլոգիական պրոցեսները։ Այդ բոլորի հետ մեկտեղ, հարկավոր է բարելավել աշխատանքի կազմակերպումը, լայնորեն տարածել արտադրության առաջավորների փորձը, համակողմանի ու հետևողական պայքար ծավալել աշխատանքային և նյութական նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքներ ձեռք բերելու և պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։

Ղափանի շրջանի էկոնոմիկայում միշտ էլ որոշիչ և վճռական նշանակություն է ունեցել լեռնահանքային արդյունաբերությունը։ Դրա համար էլ մեր կազմակերպությունը լուրջ ուշադրություն է նվիրում լեռնահանքային ձեռնար-



կությունների ընդարձակմանն ու նրանց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի հիմնական արտադրամասերում վերջին տարիներին կատարվել են զգալի վերափոխումներ։ Կոմբինատի առաջին հերթի գործարկումից մի քանի տարի հետո խնդիր է դրվել երկու անգամ մեծացնել դրա կարողությունը, հաշվի առնելով արտադրանքի, հատկապես մոլիբդենի, կարևորությունը ժողովրդական տնտեսության համար։ Այդ նպատակով, տեխնիկական նախագծի իրականացման և բանվորական գծագրերի կազմման ժամանակ, ձեռնարկության մի խումբ աշխատողներ, այդ թվում կոմունիստ ինժեներներ Հ. Սահակյանը, Մ. Բարլախովը, Ց. Պետրոսյանը և ուրիշներ, տեղի կոնկրետ պայմաններից ելնելով, մի շարք առաջարկություններ արեցին (նախագծում որոշակի փոփոխություններ մտցնելու միջոցով)՝ այն ավելի կատարյալ դարձնելու և կոմբինատի կարողությունները նախատեսվածից ավելի մեծացնելու վերաբերյալ։ Նրանց առաջարկությունները պաշտպանեցին համապատասխան նախագծային և գիտահետազոտական ինստիտուտները։ Արդյունքը եղավ այն, որ այդ նպատակի համար հատկացված կապիտալ միջոցներով կոմբինատի կարողությունը մեծացավ ոչ թե երկու, այլ՝ երեք անգամ։ Ընդ որում, վերակառուցման և ընդարձակման մեծածավալ աշխատանքները կատարվեցին սահմանված ժամկետներում, արտադրական նույն տարածության վրա, առանց կոմբինատի գործունեությունը թեկուզ ամենակարճ ժամանակով դադարեցնելու։ Այդ միջոցառումը տվեց տասնյակ միլիոնների տնտեսում և հետագա տարիների արտադրանքի քանակի զգալի ավելացման հնարավորություն։

Կոմբինատի կուսկազմակերպության և ղեկավարության ջանքերի շնորհիվ ինչպես նախագծով, այնպես էլ պետական պլանով սահմանված ժամկետից մեկ տարի շուտ հանքի լեռնագործները հրաժարվեցին հանքավայրի ստորգետնյա շահագործման մեթոդից և անցան Գանձասարի բաց եղանակով շահագործմանը։ Դա հնարավորություն ընձեռեց արտադրության մեջ ներդնել լեռնային նոր տիպի բարձր արտադրողականության մեքենաներ, հորատման հաստոցներ, էքսկավատորներ, որոնց կիրառման և տեխնոլոգիական հաջորդ օղակների վերակառուցման շնորհիվ պայմաններ ստեղծվեցին, հանքաքարի հանույթի ավելացման հետ մեկտեղ, աշխատանքի արտադրողականությունը հանքի տեղամասում բարձրացնել երեք անգամ։

Մեկ ուրիշ օրինակ։ Սկզբնական շրջանում այստեղ հանքաքարի բարձման պրոցեսում օգտագործվում էին «Շկոդա» մակնիշի էքսկավատորներ։ Հետագա տարիներին դրանք փոխարինվեցին հայրենական արտադրության նոր էքսկավատորներով (ՍԷ—3, ԷԳԿ—4), իսկ հնգամյակում հանքերը հագեցվեցին ԷԳԿ—4,6 բարձր արտադրողականության էքսկավատորներով, որոնց շերեփի տարողությունը հասնում է 12—13 տոննայի։ Բացի այդ, հորատանցքերի ամենօրյա փորման հարվածա-ճոպանային հաստոցները 1968—1969 թթ. փոխարինվեցին ժամանակակից տեխնիկայի վերջին խոսքով ստեղծված ՍԲՇ—250 մակնիշի հորատման հաստոցներով։ Դրանց կիրառումը աշխատանքային նույն ժամանակամիջոցում մի քանի անգամ մեծացնում է հորատանցման արագությունը և ամբողջովին լուծում փոշեզերծման դժվարագույն հարցը, առավել նպաստավոր պայմաններ ստեղծում ինչպես հաստոցներն սպասարկող վարպետների, այնպես էլ շրջապատում աշխատող մյուս բանվորների համար։

Պղնձամոլիբդենային կոմբինատում կիրառվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման նաև այլ մեթոդներ։ Այսպես, հանքի ու կոմբինատի մի խումբ մասնագետների և առաջավոր բանվորների, ՆԻԳՄԻ-ի ու «Հայգունարդնախագիծ» ինստիտուտների կոլեկտիվների համատեղ ուժերով հանքապարների հանույթի ելուստների բարձրությունը 10 մետրից հասցվեց 15-ի և հորատանցքերի լիցքավորման ու պայթեցման միաշարք մեթոդը փոխարինվեց երկշարք, իսկ այժմ արդեն՝ բազմաշարք պայթեցման մեթոդով։ Իսկ ելուստների փլուզման թանկարժեք պայթուցիկ նյութերի փոխարեն այժմ օգտագործվում են անհամեմատ էժան և տեղում պատրաստվող պայթուցիկ նյութեր։ Քաջարանի պայմաններում դժվար չէ պատկերացնել, թե այդ նորամուծությունները ու հանքահանման մեթոդի կատարելագործումները ինչպիսի հսկայական լրացուցիչ օգուտ են բերում կոմբինատի կոլեկտիվին ու մեր ժողովրդական տնտեսությանը։

Կոմբինատում աշխատանքի արտադրողականության բարձր աճին մեծապես նպաստել են նաև հանքաքարը հարստացուցիչ ֆաբրիկա փոխադրելը և այնտեղ նրա վերամշակման ու հարստացման պրոցեսում կատարված համապատասխան վերափոխումները։ Մինչև վերջին տարիները հանքաքարի փոխադրման համար օգտագործվող 5 և 10 տոննանոց «ՄԱԶ» և «ՅԱԶ» մակնիշի ավտոմեքենաները փոխարինվել են 27 տոննանոց ինքնաթափերով։ Վերակառուցվել և մի քանի անգամ մեծացվել է նաև ճոպանուղու արտադրամասը։ Նորակառույց չորս ճոպանուղիներով, որոնք գետնից բարձր են ավելի քան 70 մետր, Գանձասարում ամեն օր արդյունահանվող տասնյակ հազարավոր տոննա հանքաքարը փոխադրվում է հանդիպակաց լեռան լանջի հզոր հարստացուցիչ ֆաբրիկան։ Այս տեղամասում մեքենայացված են բոլոր պրոցեսները, իսկ առանձին պրոցեսներ կառավարվում են կիսաավտոմատ սարքերով։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի լեռնային արտադրամասից հանքաքարը մի քանի տարի է, ինչ էլեկտրաքարշերով փոխադրվում է ճոպանուղու ջարդող բաժինը՝ մեկ կիլոմետր երկարությամբ հիանալի ստորգետնյա հանքուղով։ Դա հեղաշրջող նշանակություն ունեցավ հանքաքարի փոխադրման համար։ Այդ վերակառուցումն իրականացվել է բացառապես կոմբինատի կուսկազմակերպության և շրջանային կուսակցական կոնֆերանսի ստեղծագործական մտահղացումներով։

Կոմբինատի դիրեկցիան ու կուսկոմիտեն, հարստացուցիչ ֆաբրիկայի կուսկազմակերպությունը, շինարարների և մոնտաժողների կոլեկտիվների հետ միասին, վերջին տարիներս մեծ ջանքեր են թափել ֆաբրիկայի վերակառուցման ու ընդարձակման, նոր կարողությունների գործարկման ասպարեզում և ձեռք բերել որոշակի հաջողություններ։ Էապես փոփոխվել է նաև ֆաբրիկայի նախագծային սխեման. կատարելագործվել են տեխնոլոգիական մի շարք պրոցեսներ, հակազդիչների ռեժիմի որոշումն ու հանքաքարի հարստացման տեխնիկան։ Ֆաբրիկայի նեղ տեղը մի ժամանակ հանքաքարի մանրացման բաժանմունքն էր. Նրա հնարավորությունները սահմանափակ էին։ Կուսկազմակերպությունը միջամտեց գործին. արտադրական նույն տարածության վրա տեղադրվեցին նոր աղացներ և հիդրոցիկլոններ, պայմաններ ստեղծվեցին հանքաքարի մեկաստիճան մանրացումից անցնելու բազմաստիճան մանրացման։ Դրանով բաժանմունքում արտադրողականությունը բարձրացավ մեկուկես անգամ, ապահովվեց ֆլոտացիայի պրոցես ուղարկվող պուլպայի (մանրացված հանքաքարի) ցանկալի խտությունը, որը բարերար



ազդեցություն է գործում հանքաքարից պղնձի և մոլիբդենի կորզման արդյունավետության բարձրացման վրա։

Ֆաբրիկայի կուսկազմակերպության մշակած միջոցառումների իրականացման շնորհիվ վերջին երկու տարում զգալիորեն բարձրացել է արտադրության կուլտուրան. կարգի է բերվել ներսի ամբողջ տնտեսությունը, մաքրվել փոշուց ու թափուկներից, տեխնիկական սարքին վիճակի է հասցվել հազարավոր մանր ու մեծ միացություններ ունեցող խողովակաշարը, ներկվել են բոլոր սարքավորումները, սյուները։ Ֆլոտատորները ծովի մակերևույթից 2000 մետր բարձրության վրա ստեղծել են իրենց մերձարևադարձային անկյունը, որտեղ խնամքով աճեցնում են ծաղիկներ, բազմապիսի բույսեր։

Վերոհիշյալ միջոցառումների շնորհիվ պղնձա-մոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը հասել է լուրջ հաջողությունների և հանքաքարի արդյունահանմամբ ու վերամշակմամբ գերազանցել է ձեռնարկության նախագծային կարողությունը։ Միայն անցած տարի 295 հազար ռուբլով տնտեսվել է աշխատավարձը, աշխատանքի գիտական կազմակերպումը կոմբինատին բերել է 470 հազար ռուբլու խնայողություն, ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկությունների արմատավորումը տվել է 371,6 հազար ռուբլու պայմանական օգուտ, արտապլանային շահույթը կազմել է 223 հազար ռուբլի։

Տեխնիկական վերազինման, արտադրական կարողությունների ընդարձակման և թողարկվող արտադրանքի ծավալի մեծացման տեսակետից արմատական փոփոխություններ են տեղի ունեցել նաև շրջանի լեռնա-հանքային մյուս ձեռնարկությունում։ Ղափանի պղնձա-հանքային կոմբինատի կուսկազմակերպության, ինժեներա-տեխնիկական աշխատողների, ամբողջ կոլեկտիվի և նախագծային ու գիտահետազոտական ինստիտուտների համատեղ ջանքերով վերջին մի քանի տարում հիմնականում վերակառուցվել է հանքերի ստորգետնյա տրանսպորտի աշխատանքը։ Հնգամյակում գործարկվել են նորագույն տեխնիկայով հագեցված հարստացուցիչ ֆաբրիկան, մոտ վեց կիլոմետր երկարությամբ ստորգետնյա տրանսպորտային հանքուղին, ստեղծվել է բաց եղանակով հանքաքարի հանույթի տեղամաս։ Տեղի է ունենում Լենինյան հանքերի № 7—10, № 6 և նախկինում գոյություն ունեցող № 1—2 հանքերի ինչպես ստորգետնյա, այնպես էլ վերգետնյա ամբողջ բարդ տնտեսության միավորումը մեկ միասնական տնտեսության մեջ, մշակվում է ստորգետնյա հզոր լեռնային մարմինների մշակման նոր, մեծ առավելություններ ունեցող սխեմ, միջհորիզոնային տարածությունները 30 և 40 մետրից հասցվում է 80—120-ի, կիրառվում է սեղմված միջավայրում հանքաքարի պայթեցման և հանույթի նոր մեթոդ։ Հիմնականում ավարտվում է լեռնային անցման, հանքաքարի հանույթի, բարձման և փոխադրման ու վերամշակման արտադրական ցիկլի համարյա բոլոր պրոցեսների մեքենայացումը, որով մեծ չափով թեթևանում է լեռնագործների աշխատանքը։

Այս միջոցառումները հնարավորություն են ընձեռել արդյունահանվող ու վերամշակվող հանքաքարի և թողարկվող պղնձի կոնցենտրատի ծավալը մեծացնել մոտ երկու անգամ, հնգամյակի անցած չորս տարում յուրաքանչյուր լեռնային բանվորին ընկնող արտադրանքի քանակն ավելացնել 97,8, իսկ մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը՝ 24,4 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում դրական աշխատանք են կատարում նաև «Քաջարանշին» տրեստի, Ղափանի կահույքի ֆաբրիկայի կուսկազմակերպությունները։ Կուսկոմիտեի նիստերում,

կուսակցական ընդհանուր և արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում հաճախակի քննարկվում են շինմոնտաժային աշխատանքների ընդլայնման ու կազմակերպման, բանվորական ուժի և շինարարական մեխանիզմների օգտագործման, որակի բարելավման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցեր։

Անցած հնգամյակի ծնունդ է Հայէլեկտրալույս միավորման Ղափանի լուսատեխնիկական գործարանը։ Ձեռնարկության կուսկազմակերպությունը, նրա բյուրոն, դիրեկցիայի հետ միասին, կոլեկտիվի ստեղծման ու ձևավորման առաջին օրերից սկսած, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցը պահում է իր տեսադաշտում։ Այստեղ բանվորները տիրապետում են նոր մասնագիտությունների, բարձրացնում իրենց որակավորումը, արմատավորում աշխատանքի առաջավոր եղանակներ։ Այդ ամենը լավ արդյունք է բերել գործարանին։ Այսպես, եթե 1967 թվականին արտադրվել է 51 հազար լուսատու, 1969 թվականին՝ 156 հազար, ապա 1970 թվականին՝ մոտ 180 հազար հատ։ Այդ կարճ ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունն այստեղ աճել է 124 տոկոսով, յուրացվել է մոտ 20 տեսակի լուսատուների արտադրություն, որից 14-ը ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը գնահատել է որպես առաջին կարգի արտադրանք։

Ղափանի կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մղվող պայքարում բոլորի ուժերն ուղղում են տեխնիկական առաջադիմության արագացմանը, արտադրանքի թողարկման՝ հասարակական աշխատանքի ծախսումների առավելագույն կրճատմանը, հոգում, որպեսզի վերացվեն արտադրության կառավարման ավելորդ և զուգահեռ օղակները, անարտադրողական ծախսերը, նկատվող շռայլումները և անտնտեսվարության երևույթները։

Կադրերի որակավորումը, նրանց տեխնիկական գիտելիքներով զինելը և կուլտուրական մակարդակի աճը դիտելով իբրև աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից մեկը, կուսկազմակերպություններն օգտագործում են աշխատավորների ուսուցման և դաստիարակության բազմապիսի ձևեր և այդ կարևոր բնագավառը պահում իրենց ուշադրության կենտրոնում։

Արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության մեծ թվով աշխատողներ վերջին տարիներին յուրացրել են երկրորդ և երրորդ մասնագիտությունը և աշխատանքի ընթացքում հաջողությամբ համատեղում են այն։ Այդ ցայտուն դրսևորվում է այժմ արդեն լայն տարածում ստացած կոմպլեքսային բրիգադաների գործունեության մեջ։ Նրանք տալիս են բարձր արտադրողական աշխատանքի լավագույն օրինակներ։ Ձեռնարկությունների հարյուրավոր բանվորներ, առանց արտադրությունից կտրվելու, սովորում են երեկոյան դպրոցներում, Ղափանի լեռնամետալուրգիական և շինարարական տեխնիկումներում, Երևանի և Միության քաղաքների բարձրագույն ուսումնական հաստատությունների հեռակա բաժիններում։

Օգտակար շատ բան է տալիս բարձր որակավորում ունեցող արտադրության վարպետների փորձի ցուցադրումը։ Վերջին ժամանակներս ամփոփվել և հատուկ թերթիկներով լայնորեն տարածվել են Քաջարանի կոմբինատի անվանի էքսկավատորավար Ա. Պետրոսյանի, ծեփագործ Գ. Մանասարյանի, խոր փորման հաստոցավար Վ. Մարությանի, Ղափանի կոմբինատի կոմպլեք-



սային բրիգադայի բրիգադավար Ա. Ավետիսյանի, հորատող Ա. Հովակիմյանի, ապարաբարձիչ մեքենայի մեքենավար Գ. Գլադկիխի աշխատանքի լավագույն փորձը։

Աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման խնդիրը շարունակում է մնալ կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների և արտադրական կոլեկտիվների ուշադրության կենտրոնում։ Մեր աշխատանքային գործունեության շատ բնագավառներում գոյություն ունեցող թերությունների հետևողական վերացումը, աշխատանքի ու արտադրության կազմակերպման և կառավարման ժամանակակից ձևերի, գիտության ու տեխնիկայի ընձեռած հնարավորությունների գրագետ ու խելացի օգտագործումը նոր հնարավորություններ կբացեն մեր մարդկանց առջև՝ հասարակական աշխատանքի արտադրողականությունը մի նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու, ՍՄԿԿ XXIV համագումարը նորանոր նվաճումներով դիմավորելու, սոցիալիստական հասարակարգի տնտեսական, հասարակական ու քաղաքական կյանքի զարգացման ասպարեզում խոշոր առաջընթաց կատարելու համար։

Ռ. Ա. ՄԻՆԱՍՅԱՆ
ՀԿԿ Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար

## ԴԱՐՁԵԼ Է ՇԱՀՈՒԹԱԲԵՐ

Մեր երկրում նախապատրաստական լայն աշխատանք է կատարվում Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը արժանավայել գործերով դիմավորելու համար։ Յուրաքանչյուր կոլեկտիվ, մտնելով նախահամագումարյան համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, զեկույց է տալիս հարազատ կուսակցությանը՝ կատարած գործերի ու ձեռք բերած հաջողությունների մասին։

ՍՄԿԿ XXIII համագումարը գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առաջնահերթ խնդիրներից մեկը համարեց՝ անասնապահական մթերքների արտադրության ավելացումը և որակի բարձրացումը։ «Դրա լուծման գլխավոր ուղին,— իր զեկուցումում նշեց ընկ. Ա. Կոսիգինը,— կերի կայուն բազա ստեղծելն է և դրա հիման վրա անասունների մթերատվության բարձրացումը, այն է՝ կենդանիների քաշի ու գիրության, կաթնատվության, բրդատվության ավելացումը, ինչպես նաև անասունների ու թռչունների գլխաքանակի աճը («ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը», էջ 225)։

Կուսակցության համագումարի ծրագրային այդ պահանջի անթերի կատարման համար անցած հնգամյակում իրագործվեցին մի շարք միջոցառումներ, որոնք մեծապես նպաստեցին հանրային անասունների գլխաքանակի ավելացմանն ու մթերատվության բարձրացմանը։ Այդ գործում հաջողություններն զգալի են ինչպես մյուս, այնպես էլ մեր՝ Մարալիկի Ձերժինսկու անվան կոլտնտեսությունում, որոնց մասին ցանկանում եմ համառոտակի կերպով ծանոթացնել ընթերցողներին։

Կոլտնտեսության վարչությունն ու սկզբնական կուսակցական կազմակերպությունը իրենց աշխատանքի հիմքում ունենալով ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի ետհամագումարյան պլենումների՝ գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պատմական որոշումները, անհետաձգելի մի շարք միջոցառումներ իրականացրին գյուղատնտեսության և, առանձնապես, անասնաբուծության հետագա զարգացման համար։

Ինչպես գյուղատնտեսության մյուս ճյուղերի, այնպես էլ անասնապահու-

թյան արագ զարգացումը պահանջում է նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդում, անասնապահների նյութական ու բարոյական խրախուսում։ Գիտականորեն ու գործնականում ապացուցված է, որ որքան հարմարավետ լինեն գոմերն ու փարախները, բարձր լինի անասնապահության մեքենայացման մակարդակը, այնքան շատ արդյունք կստացվի։ Այդ է ասում նաև մեր կոլտնտեսության փորձը։ Հնգամյակի ընթացքում կոլտնտեսության միջոցներով կառուցվեց ու շահագործման հանձնվեց 20 անասնաշենք՝ 1200 գլուխ խոշոր և 7800 գլուխ մանր եղջերավոր անասունների համար։ Բոլոր գոմերում տեղադրվեցին գոմաղբի հեռացման, կերի մատակարարման փոխադրիչներ, ավտոխմոցներ և այլ ավտոմատ սարքավորումներ։

Անասունների տոհմի բարելավման, մթերատվության բարձրացման հետ զուգընթաց, մենք մեծ ուշադրություն ենք նվիրում գլխաքանակի աճին ընդհանրապես, մայրական կազմի ավելացմանը մասնավորապես։ Հնգամյակի ընթացքում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է 20, մանր եղջերավորներինը՝ 32, թռչուններինը՝ 250 տոկոսով։ Ներկայումս կոլտնտեսությունը պահում է 1100 գլուխ խոշոր, 5100 գլուխ մանր եղջերավոր անասուն և 15.350 թև թռչուն։

Անասունների բուծման առաջավոր մեթոդների կիրառման շնորհիվ ավելացել է դրանց մթերատվությունը։ Անցյալ տարի, 1965 թվականի համեմատությամբ, մեկ կովի միջին կաթնատվությունն աճել է 50 տոկոսով, մեկ ոչխարի բրդատվությունը՝ մոտ 1,3 կիլոգրամով։

Անասունների մայրական կազմի ստերջությունը նվազագույնի հասցնելու, մատղաշի խնամքը լավ կազմակերպելու շնորհիվ անցյալ տարի մեր կոլտնտեսությունում յուրաքանչյուր 100 կովից ստացանք և պահպանեցինք 88 հորթ, 100 մաքուց՝ 96 գառ։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով անասնապահության հարցին, նշեց, որ շատ տնտեսություններ մսի կոմբինատներին են հանձնում շատ ցածր քաշ ու ցածր գիրություն ունեցող անասուններ, որը չի նպաստում մսի արտադրության արագ աճին։ Ընկեր Բրեժնևը խորհուրդ տվեց տնտեսություններին՝ լուրջ ուշադրություն նվիրել անասունների գիրացմանը, որը մսի արտադրությունն ավելացնելու կարևոր ռեզերվ է։ Դրա համար հարկավոր է անասուններին լավ խնամել, նորմալ կերակրել։

Մեր կոլտնտեսությունը մեծ ջանքեր գործադրեց և բավականին միջոցներ հատկացրեց այդ նպատակին։ Արդյունքը գոհացուցիչ է։ Եթե 1965 թվականին մթերակայան հանձնված խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը կազմում էր 192 կգ, մանրինը՝ 38 կգ, ապա 1970 թվականին խոշորի միջինը կազմեց 314 կգ, մանրինը՝ 45,5 կգ։ 1965 թ. մթերակայան հանձնած անասունների միայն 30 տոկոսն էր միջակից բարձր գիրության, 50-ը՝ միջակ և 20-ը՝ միջակից ցածր, իսկ 1970 թվականին հանձնած անասունների 75 տոկոսը միջակից բարձր գիրության էր։ Այդ նույն տարում միջակից ցածր գիրությամբ ոչ մի անասուն մթերակայան չհանձնվեց։

Հնգամյակում նախատեսված 5380 ցենտների դիմաց արտադրվեց 6700 ցենտներ միս, 17287 ցենտների դիմաց՝ 18350 ցենտներ կաթ, 662 ցենտների դիմաց 730 ցենտներ բուրդ, 364 հազարի դիմաց 395 հազար հատ ձու։

Անասնաբուծական մթերքների արտադրության աճի շնորհիվ տարեց-



տարի ավելանում է պետությանը վաճառվող մթերքների քանակը, որը հիմնալի նախապայման է հանրային տնտեսության և կոլտնտեսականների ռեալ եկամուտների բարձրացման համար։

Հնգամյակում կոլտնտեսությունը հարազատ պետությանն է վաճառել 5700 ցենտներ միս, 11 հազար ցենտներ կաթ, 864 ցենտներ բուրդ (հաշվարկային քաշ) և 333 հազար հատ ձու, կամ մսի վաճառքի առաջադրանքը կատարվել է 145, կաթինը՝ 106, բրդինը՝ 108, ձվինը՝ 124 տոկոսով։

Միայն հնգամյակի ավարտական տարում՝ 1970 թվականին կոլտնտեսությունը պետությանը վաճառեց 1250 ցենտներ բարձրորակ միս, 2300 ցենտներ կաթ, 180 ցենտներ բուրդ և 151 հազար հատ ձու։ Անասնաբուծական մթերքների արտապլանային վաճառքից կոլտնտեսությունը 1970 թվականին պետությունից ստացավ 40 հազար ռուբլի լրացուցիչ գումար։

Կոլտնտեսության վարչության և անասնապահության բնագավառում յուրաքանչյուր աշխատողի ամենօրյա ուշադրության կենտրոնում է անկումների դեմ տարվող պայքարը։ Պետք է նշեմ, որ այդ գործում նույնպես տնտեսությունը հասել է լավ արդյունքների։ 1965 թվականին կոլտնտեսությունում խոշոր եղջերավոր անասունների անկումը կազմել է 35 գլուխ, մանրինը՝ 380 գլուխ։ Հաշվարկները ցույց տվեցին, որ միայն անասունների անկումներից տնտեսության տարեկան վնասը կազմում էր 25 հազար ռուբլի։ Անասունների կերակրման, խնամքի ու բուծման գործը բարելավելու շնորհիվ անկումները տարեց-տարի կրճատվեցին։ 1970 թվականին կոլտնտեսությունում խոշոր եղջերավոր անասունների անկումները կազմեց 12 գլուխ, մանրինը՝ 64, թռչուններինը (ճտերինը) 1200, 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, անասունների անկումները կրճատելու շնորհիվ կոլտնտեսությունը ստացել է 18 հազար ռուբլու օգուտ։

Անասնաբուծության զարգացման գործի հաջող կազմակերպումը, հասկանալի է, իր հետ բերել է նաև արտադրվող մթերքների ինքնարժեքի իջեցում։ Խոսենք փաստերով։ Եթե 1965 թվականին արտադրված մեկ ցենտներ մսի ինքնարժեքը կազմում էր 280 ռուբլի, կաթինը՝ 200, բրդինը՝ 600, ապա 1970 թվականին մսինը կազմեց 102 ռուբլի, կաթինը՝ 140, բրդինը՝ 440 ռուբլի։ Եվ եթե կաթնապրանքային ֆերմայի տարեկան պայմանական օգուտը 1965 թվականին կազմում էր 23 հազար ռուբլի, իսկ ոչխարաբուծական ֆերման աշխատում էր վնասով, ապա 1970 թվականին կաթնապրանքային ֆերմայի օգուտը հասավ 80 հազար, ոչխարաբուծականինը՝ 60, թռչնաբուծականինը՝ 30 հազար ռուբլու։

Արտադրվող մթերքների ինքնարժեքի իջեցման կարևոր ուղիներից մեկն էլ կերի սեփական արտադրությունն է, որի վրա նույնպես հատուկ ուշադրություն է նվիրվում։ Յուրաքանչյուր տարի կոլտնտեսությունում արտադրվում է 1300 տոննա խոտ (կորնգան), 1400 տոննա ծղոտ և առանձնացվում 200 տոննա հատիկաֆուրաժ։ Սեփական կերի հետ միասին ծախսվում է նաև 300 տոննա գնովի համակցված կեր։

Տարիներ շարունակ կոլտնտեսությունում (որպես օժանդակ ճյուղ) կար թռչնաբուծական ֆերմա՝ 1200 թև թռչունով, որը տնտեսությանը գրեթե օգուտ չէր տալիս։ Այդ ֆերման կա՛մ պետք է վերացվեր, կա՛մ խոշորացվեր ու շահութաբեր դարձվեր։ Դրա համար մանրակրկիտ հաշվարկ կատարվեց և պարզվեց, որ եթե ֆերման ունենա ամենապակասը 10—15 հազար թև թռչուն, ապա այն կոլտնտեսությանը մեծ եկամուտ կբերի։ Եվ այդ ճշմար-

տության քաջ գիտակցությամբ էլ 1969 թվականից կոլտնտեսությունը ձեռնամուխ եղավ թռչնանոցների և ինկուբացիոն կայանի կառուցմանը, այսինքն՝ թռչնաբուծական ֆերմայի խոշորացմանը:

Կառուցվեց և շահագործման հանձնվեց ինկուբացիոն կայանը, 4 ճտանոց 30 հազար գլխի և 1 թռչնանոց՝ 10 հազար գլխի համար: 1970 թվականի մայիս ամսին գործարկվեց ինկուբացիոն կայանը: Կոլտնտեսությունը երեք ամսվա ընթացքում արտադրեց և իրացրեց 87000 ճուտ: Ստեղծվեց կոլտնտեսության թռչնաբուծական խոշոր ֆերման՝ 30 հազար ճտով, որը հնարավորություն ստեղծեց արտադրելու 160 ցենտներ թռչունի միս և 161 հազար հատ ձու. դրանից պետական մթերակայան հանձնվեց 105 ցենտներ միս և 151 հազար հատ ձու:

Թռչնաբուծական խոշորացված ֆերմայի ստեղծումը հիանալի արդյունք է տալիս նախ այն պատճառով, որ թռչունները վաղահաս են և զարգանում են արագ կերպով, երկրորդ՝ հնարավորություն է ստեղծվում կոմպլեքսային մեքենայացման ենթարկել աշխատատար պրոցեսները:

Անցած հնգամյակում կոլտնտեսությունը անասնաբուծության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար չորս անգամ արժանացել է համամիութենական և հանրապետական փոխանցիկ դրոշների, դրամական առաջին կարգի մրցանակի, պարգևատրվել է միութենական երկու դիպլոմներով, ու բացի այդ, համամիութենական ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակից է: 1970 թվականին Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի առթիվ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմը, ՀՍՍՀ Գերագույն սովետը, հանրապետության Մինիստրների սովետը և ՀԱՄԽ կոլտնտեսությանը պարգևատրեցին հոբելյանական հուշամեդալով:

Կոլտնտեսությունում անասնաբուծության բնագավառում ձեռք բերած ցուցանիշներն արդյունք են այն բանի, որ կոլտնտեսային սկզբնական կուսակցական կազմակերպությունը, կոլտնտեսության վարչությունը հետևողականորեն զբաղվում են կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերով: Կոլտնտեսությունն ապահովված է որակյալ մասնագետներով, արտադրական ճյուղերը ղեկավարում են միջնակարգ-մասնագիտական կրթություն և աշխատանքի մեծ փորձ ունեցող մարդիկ: Ֆերմաներում աշխատող բոլոր մարդիկ բարեխղճությամբ ու պարտքի բարձր գիտակցությամբ են կատարում իրենց պարտականությունները: Կթվորուհիներից Լենինի շքանշանակիր Կալիպսե Ասլանյանը, «Պատվո նշան» շքանշանակիր Անթելինա Հայրապետյանը, անասնապահներ Սերյոժա Հայրապետյանը, Մուրազ Բրուտյանը, հովիվներ Շահեն Հայրապետյանը, Գրիգոր Առաքելյանը, Լինթոր, Լեոնիկ Սարգսյանները, Ավետիք, Հրաժաժ Փիլոյանները, թռչնապահներ Սաթենիկ Սահակյանը, Արաքսյա Ղազարյանը, Տիգուշ Հակոբյանը և ուրիշներ դարձել են իրենց գործի իսկական գիտակներ: Նրանք փորձով համոզվել են, որ միայն աշխատանքի գիտական կազմակերպման և առաջավոր մեթոդների կիրառման շնորհիվ է հնարավոր հասնել բարձր արդյունքների: Եվ ահա այդպիսի գիտակցությամբ էլ նրանք մեծ սիրով մասնակցում են ֆերմաներում կազմակերպված զոոտեխնիկական ուսուցման խմբակների պարապմունքներին, օրավուր հարստացնում իրենց մասնագիտական գիտելիք-



ները և ձգտում ավելի բարձր ցուցանիշների: Մեր կոլտնտեսությունում սահմանված է առաջադրանքները կատարած անասնապահների աշխօրերը տարվա վերջում ավելացնել 10 տոկոսով:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անցյալ տարվա հուլիսյան պլենումին տված իր զեկուցման մեջ ընկեր Լ. Բրեժնևն ընդգծեց, որ անասնապահական մթերքների պետական գնման գները բարձրացնելու շնորհիվ ստացած լրացուցիչ միջոցները կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները պետք է առաջին հերթին ծախսեն արտադրությունն ընդլայնելու, կերի բազան զարգացնելու և ամրապնդելու, անասնապահության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու նպատակով:

Նկատի ունենալով այդ, մեր կոլտնտեսությունը ընթացիկ հնգամյակում ավելի շատ գումար է հատկացնելու անասնապահության զարգացմանը: Ներկայումս կառուցվում է Սառնաղբյուրի ջրամբարը, որը ոռոգելի կդարձնի մեր կոլտնտեսության շուրջ 250 հեկտար հողատարածություն: Դրանից 60 հեկտար հատկացվելու է սիլոսային կուլտուրաների մշակությանը, որից հնարավոր է ստանալ շուրջ 1800 տոննա հյութալի կեր: Դա կնպաստի անասնաբուծական մթերքների արտադրության բարձրացմանը և ինքնարժեքի իջեցմանը: Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը կհասցվի 2300—2500 կգ, որը կոլտնտեսությանը կբերի լրացուցիչ 120 հազար ռուբլու եկամուտ: Նախատեսվում է նաև հոտում ավելացնել կովերի գլխաքանակը, այն հասցնել մինչև 42—45 տոկոսի:

1971 թվականին շահագործման կհանձնվի թռչնանոցը՝ 10 հազար գլխի համար. դա պայմաններ կստեղծի թռչնաբուծության էլ ավելի զարգացման, տնտեսության շահութաբերության բարձրացման համար:

Կոլտնտեսությունը ձեռնամուխ է եղել խոզաբուծական ֆերմայի ստեղծմանը: Կառուցվում է նոր խոզանոց, որտեղ կպահվի մոտ 50 գլուխ մերուն: Յուրաքանչյուր տարի պետությանը կվաճառվի 350—400 ցենտներ խոզի միս:

Նախատեսված է կոմպլեքսային մեքենայացման ենթարկել աշխատատար շատ պրոցեսներ: Անասնաբուծության զարգացման այս և մի քանի այլ միջոցառումների իրականացման շնորհիվ զգալիորեն կբարձրանա դրա եկամտաբերությունը, կիջեցվի արտադրվող մթերքների ինքնարժեքը, և՛ ավելի կբարելավվի հոտի ընդլայնված վերարտադրությունը:

Մեր կոլտնտեսության բոլոր կոմունիստները և ամբողջ աշխատավորությունը լի են վճռականությամբ՝ ՍՄԿԿ XXIV և ՀԿԿ XXV համագումարները արժանավայել գործերով դիմավորելու համար:

Մինչև Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարը կոլտնտեսությունը կկատարի 1971 թվականի առաջին եռամսյակի համար նախատեսված մսի, կաթի, ձվի արտադրության և վաճառքի առաջադրանքները: Իսկ ՍՄԿԿ XXIV համագումարը կդիմավորենք կիսամյակի բոլոր առաջադրանքները գերակատարած:

Ս. Ե. ՆԱԶԱՐՅԱՆ
Անիի շրջանի Մարալիկի Ձերժինսկու անվան
կոլտնտեսության նախագահ

# ՀԱՎԱՏՈՎ ԼԵՑՈՒՆ

Դիրեկտորի առանձնասենյակում կարմիր դրոշ է կախված՝ «Սոցիալիստական մրցության մեջ հաղթող սովխոզին»։ Հայաստանի Մինիստրների սովետն ու ՀԱՄԽ-ն են շնորհել՝ 1969-ի բարձր արդյունքների համար։ Դա, իհարկե, Կալինինոյի շրջկենտրոնի սովխոզի միակ պարգևը չէ։ Այդ նույն տարում նա արժանացել է նաև Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի, դարձել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակից։ Հաջորդ տարին ևս տնտեսությունն առատ հունձք է ունեցել. պարգևատրվել է միութենական լենինյան հոբելյանական պատվոգրով, հանրապետական դրամական մրցանակով, նորից դարձել ՍՍՀՄ ԺՏՆ ցուցահանդեսի մասնակից։

— Այս պարգևները,— ասում է սովխոզի դիրեկտոր, Լենինի շքանշանակիր Գ. Ավդալյանը,— մեր մարդկանց ջանքերի արժանի գնահատումն են։

Հետո նա ընդգծում է, որ այդ մարդկանց խանդավառողը կուսկազմակերպությունն է. կոմունիստները մրցության առաջավորներ են, օրինակ են ծառայում ամենուրեք։

Հաշվառման գրքում կոմունիստների ցուցակը եզրափակում է 62 թվանշանը։ Հայերի ու ռուսների, ադրբեջանցիների ու քրդերի, հույների ու ուկրաինացիների անուններ կան այստեղ։ Նրանցից 44-ն անմիջականորեն աշխատում են արտադրության ոլորտում։

Տարբեր լեզուներով խոսող կոմունիստներին միավորում է մեկ ընդհանուր նպատակ՝ ապահովել տնտեսության անշեղ վերելքը։ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո կուսկազմակերպությունը ծավալել է արգասավոր գործունեություն։ Չկա հանրային արտադրության՝ լուծման կարոտ որևէ խնդիր, որին նա անդրադարձած չլինի։

## ԳԻՏԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ

Սովխոզի արտադրության առաջատար ճյուղը և վճռական տեղամասը անասնաբուծությունն է։ Այն տալիս է ընդհանուր դրամական եկամտի մոտ 80 տոկոսը։ Ֆերմաներում հաշվվում է 2760 գլուխ տավար, 5800 գլուխ ոչխար, 600-ից ավելի խոզ։ Ահա թե ինչու այս առաջատար բնագավառը գտնվում է կուսկազմակերպության ամենօրյա ուշադրության կենտրոնում։ Ամենուրեք զգացվում է կոմունիստների նախաձեռնությունը։ Նրանք կիրառում են աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակներ, ապահովում իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ։

Կուսբյուրոյի քարտուղար Մ. Ռեշետովի հետ ուղևորվում եմ անասնապահական ֆերմաները՝ կոմունիստներին ու նրանց գործերին տեղում ծանոթանալու համար։

Կաթնապրանքային ֆերմայի՝ Մուսա Ուսուբովի ղեկավարած բրիգադայում ենք։ Կթի ժամն է։ Շուրջը՝ մեղվաջան աշխատանք։ Փրփուր-փրփուր կաթով լեցուն դույլերն ստեպ-ստեպ դատարկվում են բիդոնների մեջ։ Բրիգադավարը գոհ է օրվա արդյունքներից. առաջադրանքը զգալիորեն գերակատարված է։ Հինգ տարի առաջ երիտասարդ կոմունիստին հանձնարարեցին այս գործը։ Իսկ նա իրեն արդարացրեց։ Բրիգադան ժամկետից 1,5 տարի շուտ կատարեց կաթի արտադրության հնգամյա պլանը, կովերի միջին կաթնատվությունը հասցրեց 3300 կիլոգրամի։

«Աշխատանքի արիության համար», Լենինյան հոբելյանական և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի բրոնզե մեդալները առաջավոր կոմունիստ Մ. Ուսուբովի աշխատանքային խիզախումների արժանի հատուցումն են։

Քուրդ Մ. Ուսուբովի մասին քիչ է ասել՝ առաջավոր։ Նա իր բրիգադայում սահմանել է կոմունիստական համակեցության, փոխադարձ օգնության լավ և ուսանելի ավանդույթներ։ Ծնունդ լինի կամ հարսանիք բրիգադայի անդամների տանը, կամ՝ տարեմուտի տոն, միասին են նշում, անշահախնդիր օգնում միմյանց բնակարան կառուցելիս ու հիվանդության դեպքում։ Ու ոչ ոք չզարմացավ, երբ 1967-ին առաջին անգամ սովխոզում այդ բրիգադային շնորհվեց կոմունիստականի բարձր կոչումը։

Գործերը բարեհաջող են նաև կովաբուծական այն բրիգադաներում, որոնց ղեկավարում են կոմունիստներ Վ. Ստրելնիկովը, Ն. Կոպիլովը, Վ. Դանիլովը։

...Տարիներ առաջ խոզաբուծությունը ետ մնացող բնագավառ էր այստեղ։ Անկումներն զգալի չափերի էին հասնում, չէին կատարվում մատղաշների ստացման ու մսի արտադրության առաջադրանքները, թույլ ղեկավարության պատճառով ցածր էր աշխատանքային կարգապահությունը։ 1969-ի սկզբներին խոզաբուծական ֆերմայի վիճակը քննարկվեց կուսժողովում, բացահայտվեցին շատ այլ թերություններ։ Կուսկազմակերպությունը վերանայեց ֆերմայի կադրերը, որոնք հետևողականորեն կիրառեցին մսացու խոզերը սեռահասակային խմբերով աճեցնելու առաջավոր եղանակը, ցեղաբուծությունը դրեցին գիտական հիմքերի վրա։ Եվ ահա արդյունքը. ֆերման դարձավ շահութաբեր ու անցած երկու տարում տնտեսությանը բերեց ավելի քան 30 հազար ռուբլու զուտ օգուտ։ 1968-ի համեմատությամբ մսի համախառն արտադրությունն աճեց երկու անգամ։

Սովխոզի գլխավոր անասնաբույժ Յուրի Քիթյուկովին հանդիպեցի մասնագետների առանձնասենյակում. կաթի արտադրության ամենօրյա ամփոփագիրն էր աչքի անցկացնում։ Երևանի անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտն է ավարտել հույն երիտասարդը։ Յոթերորդ տարին է՝ այս տնտեսությունում է։ Այդ ժամանակամիջոցում կոմունիստ անասնաբույժը շատ բան է արել կաթի, մսի ու բրդի արտադրությունն ավելացնելու համար։ Նրա անբասիր գործունեության արժանի գնահատականը հանրապետության վաստակավոր անասնաբույժի պատվավոր կոչումն է, որին արժանացավ երեք ամիս առաջ։

Ի. Քիթյուկովի ղեկավարությամբ տնտեսությունում հետևողականորեն զբաղվում են ցեղաբուծությամբ և հոտի վերարտադրությամբ։ Տավարի «կովկասյան գորշ» ցեղի էլիտա և էլիտա-ռեկորդ դասի մատղաշներն այստեղ առաջին իսկ օրից առանձնացվում են, աճեցվում առանձնահատուկ պայմաններում։ Նրա նախաձեռնությամբ տնտեսությունում արմատավորվեց մինչև մեկ տարեկան հորթերի մսուրային աճեցման առաջավոր եղանակը։ Դրա շնորհիվ բացառվում են հիվանդությունները, մատղաշները դառնում են ավելի քան 400 կգ քաշով բարձրարժեք կովեր։ Ցեղական ցուլիկների ու էգ մոզիների վաճառքը դրամական եկամտի կարևոր աղբյուր է տնտեսության համար։ Ամեն տարի սովխոզը հանրապետության կոլտնտեսություններին ու սովխոզներին վաճառում է 300 գլխից ավելի մատղաշ, հատուցում դրանց վրա կատարված ծախսը և ստանում 130—140 հազար ռուբլու զուտ օգուտ։ Բարեխիղճ, իրենց գործին նվիրված կոմունիստներ են մատղաշների բրիգադայի բրիգադավարներ Հ. Սուքիասյանը, Ն. Գրիգորևը, Ն. Մարգարյանը, անասնապահ Ի. Ժաբինը։ Կուսկազմակերպության հանձնարարությամբ նրանք եկել են այս խիստ պատասխանատու բնագավառը և հիմա աշխատում են խղճի թելադրանքով, կատարում ու գերակատարում մատղաշների քաշաճի առաջադրանքները։

Մսի արտադրության արդյունավետ կազմակերպման մեջ ևս մեծ է գլխավոր անասնաբույժի ներդրումը։ Ամեն տարի այստեղ ստեղծվում են տավարի ու ոչխարի գիրացման խմբեր։ Տնտեսությունը մեծապես շահում է պետությանը պլանից դուրս և բարձրորակ մթերքներ հանձնելուց։ Միայն անցած տարի կաթի, մսի ու բրդի հանձնումից ստացվեց 40.700 ռուբլու լրացուցիչ օգուտ։ Առաջին հինգ ամսում բարձր յուղայնության շնորհիվ տնտեսությունը շահեց 5500 ցենտներ կաթ։

Առիթ եղավ ծանոթանալու առաջատար ճյուղի նաև մյուս կոմունիստների գործունեությանը։

— Անգնահատելի է,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— նրանց դերը ֆերմաներում աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորման, անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում։

## ՆՈՐԸ ՃԱՄՓԱ Է ՀԱՐԹՈՒՄ

— Մեր դաշտավարությունը,— ասում է գլխավոր գյուղատնտես Գ. Դոխոլյանը,— հիմնականում սպասարկում է անասնապահությանը, ծառայում կերի բազայի ստեղծմանը։ Այս բնագավառում իրագործվել են մի շարք միջոցառումներ։

Ահա դրանց ոչ լրիվ թվարկումը։ Արմատավորվել է խոտադաշտային ցանքաշրջանառությունը, ընդարձակվել են ցանովի (բազմամյա և միամյա) խոտաբույսերի ցանքատարածությունները, արմատական և մակերեսային բարելավման են ենթարկվել նվազ բերքատու մարգագետիններն ու թույլ բու-

սածածկով արոտավայրերը։ Բարելավվել է նաև պարարտացումը. հանքային ու օրգանական պարարտանյութերն օգտագործվում են ըստ ցանքաշրջանառության փոխանցիկ պլանի և ագրոքիմիական քարտեզի։ Պարարտացման ժամանակ խստագույնս հաշվի են առնըվում գյուղատնտեսական կուլտուրաների հաջորդականությունը, բույսերի պահանջը, հողի բերրիության աստիճանն ու քիմիական առանձնահատկությունները։

Հանրային հոտի կերի բազայի ամրապնդման լավագույն պայմանն են կերային նոր կուլտուրաների ներդրումը, նոր կերատեսակների արտադրությունը։ Կալինինոյի բնակլիմայական պայմաններում լավ քննություն բռնեցին միամյա երեքնուկը (շաբդար), բազմամյա մի շարք խոտաբույսեր (տիմոֆեևկա, շյուղախոտ և այլն), կերի արմատապտուղներից՝ գոնգեղկուուզիկուն և կիսաշաքարային ճակընդեղը, խոտախառնուրդները, որոնք այստեղ ունեն 3—5 տարվա պատմություն։ Բերքը սպասածից ավելի է։

— Ամեն մի կովի համար մենք կուտակում ենք հինգ տոննա արմատապտուղ,— ասում է սովխոզի դիրեկտորը և ավելացնում,— կաթը դրա մեջ է։

— Երկար տարիների պրպտումներից հետո,— շարունակում է գլխավոր գյուղատնտեսը,— եկանք այն եզրակացության, որ սիլոսի լավ զանգված է վարսակի, վիկայի, արևածաղկի ու շաբդարի խառնուրդը։ Մեկ հեկտարից այն տալիս է 250—450 ցենտներ կանաչ զանգված, մինչդեռ եգիպտացորենից ստացվում էր 150—200 ցենտներ։ Ահա թե ինչու մենք առաջնությունը տվեցինք կերային կուլտուրաների համատեղ ցանքին։

Գ. Դոխոլյանը պատմում է, որ նորույթներից մեկի հեղինակը սովխոզի դիրեկտոր Գ. Ավդալյանն է։ Մամուլից տեղեկանալով, որ Մոսկվայի և Կալուգայի մարզերում կիսաչոր խոտից մանրացման եղանակով պատրաստում են սենաժ նոր կերատեսակը՝ առաջարկեց իրենց մոտ ևս անցնել դրա արտադրությանը։ Երբ անցած տարվա ամառնամուտին կուսժողովում քննարկվում էր կերի կուտակման հարցը, որոշվեց իրագործել այդ առաջարկությունը։ Եվ հանրապետությունում առաջին անգամ այստեղ պատրաստվեց 250 տոննա սենաժ։

Ընդամենը մի քանի տարի առաջ այստեղ սկսեցին արտադրել նաև վիտամինային խոտալյուր՝ և՛ սեփական կարիքների, և՛ Երևանի համակցված կերի գործարանի համար։

— Ճիշտ է,— ընդգծում է Գ. Դոխոլյանը,— մեր դաշտավարության հիմնական խնդիրը կերի արտադրությունն է, բայց տեսակարար մեծ կշիռ ունեն նաև հացահատիկն ու կարտոֆիլը։ Չորրորդ տարին է՝ այստեղ ցանվում է «Բեզոստայա—1» ցորենի սորտը, որը հեկտարից տալիս է 30 ցենտներից ավելի միջին բերք։ Անցած տարի Կրասնոդարի երկրամասից ձեռք բերվեց «Ազեր» սորտի աշնանացան գարու սերմացու և ցանվեց 4 հեկտարի վրա։ Ամեն մի հեկտարից ստացվեց 45 ցենտներ բերք։

— Ճիշտ ագրոտեխնիկայի դեպքում, — հավաստում է գլխավոր գյուղատընտեսը,— գարու այդ սորտը հեկտարից 60 ցենտներից պակաս բերք չի տա։

Տնտեսությունն ամեն տարի կարտոֆիլին տրամադրում է 150—160 հեկտար և երկու տարին մեկ կատարում սերմնափոխանակություն։ Հիմնական սորտը «լորխն» է։ Ներդրվել է նաև «բերլիխինգենը»։ Արդյունքը գոհացուցիչ է. միշտ էլ ստացվում է կայուն բերք։ Անցած տարի հեկտարի բերքատվությունը կազմեց 210 ցենտներ։

Նորույթներից է նաև հերբիցիդների օգտագործումը մոլախոտերի դեմ։ Հինգերորդ տարին է, որ այդ քիմիկատներով ոչնչացվում են հացահատիկի ու կարտոֆիլի ցանքադաշտերի մոլախոտերը։

Զրույցը գլխավոր գյուղատնտեսի հետ որքան երկարում, այնքան դառնում է հաճելի, հետաքրքրական։ Դա պատմություն է հարուստ տնտեսության աշխատասեր մարդկանց, կոմունիստների լավ նախաձեռնությունների մասին։

## ԼԱՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Մեքենայացումն առաջնակարգ նշանակություն ունի այս բազմաճյուղ խոշոր տնտեսության համար։ Չէ՛ որ այստեղ հաշվվում է 2828 հեկտար վարելահող, 1364 հեկտար մարգագետին։ Գյուղատնտեսական մեծածավալ աշխատանքների կատարման համար պահանջվում է մեքենատրակտորային



պարկն անընդհատ հագեցնել նոր տեխնիկայով, ձեռքի ծանր գործերը փոխարինել մեքենայականով։ Նախընթաց տարիներին կուսկազմակերպությունը բազմիցս անդրադարձել է այս խնդիրներին, գործնական մասնակցություն ցույց տվել դրանց լուծմանը։

Այժմ սովխոզն ունի տարբեր մակնիշի ու հզորության 45 տրակտոր, հացահատիկի և սիլոսի 11 կոմբայն, 21 բեռնատար ավտոմեքենա և բազմազան այլ մեքենաներ ու հարմարանքներ։ Հզոր տեխնիկան դյուրին է դարձրել մարդկանց գործը։ Այստեղ լրիվին մեքենայացվել են հացահատիկի, 85—90 տոկոսով՝ կարտոֆիլի և կերի արմատապտուղների արտադրության հետ կապված աշխատանքները։ Սիլոսացումը, խոտի բերքահավաքը, պարարտանյութերի բարձումը, բեռնաթափումն ու ցրումը և բազում այլ գործեր վստահված են մեքենաներին ու դրանք սանձողներին։

Հաճելի նորույթներ ու նախաձեռնություններ շատ կան մեքենայացման ասպարեզում, մեքենատրակտորային բրիգադայում։ Դրանց հեղինակները կոմունիստ մեխանիզատորներն են, իսկ վերջիններիս ոգեկոչողը՝ գլխավոր ինժեներ Նիկոլայ Կրիուլենկոն։ Երիտասարդ, բարձրահասակ տղամարդ է՝ աչքերում ժպիտ, սրտում՝ արարելու անմար հուր։ 1961-ին ավարտել է Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի մեխանիզացիայի ֆակուլտետը և հանգրվանել այս տնտեսությունում, դարձել նրա սրտացավ անդամը։ Մանկուց է սիրել տեխնիկան։

Զրուցում եմ կոմունիստ Ն. Կրիուլենկոյի հետ։ Նրա խնդիրն է՝ ապահովել տեխնիկայի անխափան աշխատանքը, արտադրության մեջ նոր մեքենաների ներդրումը։ Եվ այդ խնդիրը նա պատվով է լուծում։ Դրա վկայությունը բարձր արդյունքներն են, լավ գործերը։ Մեկ պայմանական տրակտորի տարեկան արտադրողականությունը, փափուկ վարի վերածած, 380—400 հեկտար է, մեկ հեկտարի ինքնարժեքը՝ 3,5—4 ռուբլի։ Դրանք հանրապետությունում լավ, առաջավոր տնտեսությանը պատիվ բերող ցուցանիշներ են։

Գլխավոր ինժեները ջերմորեն է արտահայտվում մեխանիզատորների մասին։

— Գերազանց, գրագետ մեխանիզատոր է,— այսպես է որակում կոմունիստ Յակով Դրոբիշևին։— Ձմեռը փականագործություն է անում նա, գարնանը հող նախապատրաստում ցանքի համար, կարտոֆիլ ցանում ու մշակում, ամռանը մամլում սիլոսի խրամատները, խոտ մոտեցնում դեզերին, աշնանը՝ քանդում կարտոֆիլի մարգերը։ Եվ այդ ամենը մի տրակտորով ու յոթ կախովի հարմարանքով։

Բրոնզափայլ դեմք ունի Յակով Դրոբիշևը, իր մշակած հողի գույնի կոշտացած, ամուր ձեռքեր, պրպտող միտք ու աշխատանքային անսպառ եռանդ։ Անցած տարի, գարնանը հանդես եկավ մի կարևոր նախաձեռնությամբ. միայնակ իր ագրեգատով մշակեց 40 հեկտար կարտոֆիլի ցանքադաշտ։ Տնտեսության ղեկավարներն ընդառաջեցին։ Անկուսակցական մեխանիզատորներ Ա. Լուկինովն ու Վ. Իվանովը հետևեցին նրա օրինակին։ 40-ական հեկտարի մշակությունն էլ իրենք ստանձնեցին։ Բարեխղճությամբ կատարեցին նրանք այդ գործը. 120 հեկտարին պարզապես ձեռք չկպավ, ամեն ինչ արեց մեքենան։ Արդյունքն սպասածից վեր էր. Յա. Դրոբիշևն ամեն մի հեկտարից ստացավ 250 ցենտներ պալար։ Բերքատվության առաջադրանքն զգալիորեն գերակատարեցին նաև մյուս մեխանիզատորները։ Նրանց շնորհիվ անցած տարի տնտեսվեց 2000 ռուբլու աշխատավարձ։

Ուշագրավ է Յա. Դրոբիշևի նաև մյուս նորամուծությունը։ Մեքենայական մշակությունից հետո, կարտոֆիլի դաշտում մոլախոտեր էին մնում։ Շուտով, գլխավոր ինժեների ու արհեստանոցի վարիչ Զ. Ժաբինի օգնությամբ, նա պատրաստեց կախովի փոցխ՝ վերասարքավորելով գործարանային փոցխը, օգտագործելով ԿՐՆ—4,2 կուլտիվատորի կախովի սիստեմը։ Ռացիոնալիզատորական այդ առաջարկության արմատավորմամբ կարտոֆիլի ցանքադաշտերի մեծ մասի մշակությունը լրիվին վստահվեց մեքենային։ Եթե նախկինում ձեռքով մշակելու դեպքում մեկ հեկտարի ծախսը կազմում էր 130 ռուբլի, ապա այժմ, լրիվ մեքենայացնելուց հետո՝ 15—20։ Կամ մեկ հեկտարի մշակությունը առաջ պահանջում էր 25 մարդ-օր, իսկ հիմա՝ մեկ։

Մեխանիզատորների մշտական օգնականն է կոմունիստ Մ. Յա. Պավլո-

վը՝ շրջիկ արհեստանոցի ղեկավարը։ Գարնանացանի առաջին իսկ օրից մինչև ցրտահերկի ավարտը շրջում է հանրային դաշտերում, ուր մեքենա կա, երբեմն էլ հրավիրում են։ Ու ամեն տեղ հասնում է ժամանակին, սրտացավորեն «ապաքինում» մեքենաների «հիվանդությունը»։

— Տեխնիկայի շտապ օգնությունն է, — այսպես են որակում նրան կատակով։

Տեխնիկան սանձող մարդիկ հեղինակ են նաև այլ լավ գործերի ու նախաձեռնությունների։ Բոլորը չես թվարկի։ Դրանց մեջ կա գլխավոր ինժեների պատկառելի ավանդը։ Իսկ շատ նախաձեռնություններ էլ պարզապես, ոչ ավել, ոչ պակաս, նրա պրպտող մտքի արգասիքն են։ Նշեմ մեկը։ Միության մի շարք տնտեսություններում տարիներ առաջ ծնունդ էին առել տեխնիկական սպասարկման օղակներ ու բրիգադներ։ 1968-ին գլխավոր ինժեներն առաջարկեց իրենց տնտեսությունում ևս ստեղծել այդպիսիք։ Սովխոզի դիրեկտոր Գ. Ավդալյանը հավանություն տվեց։ Հետո այդ հարցը քննարկեցին կուսբյուրոյի նիստում ու մեխանիզատորների արտադրական խորհրդակցությունում։ Որոշվեց փորձի համար ստեղծել մեկ օղակ՝ բաղկացած երեք մարդուց։

Այդ նորամուծությունը շոշափելի արդյունք տվեց. սպասարկման նոր եղանակի խելացի կիրառմամբ տրակտորների պարապուրդները կրճատվեցին 40 տոկոսով։ Հաջորդ տարում ստեղծվեց նման երկրորդ օղակը։ Նախկինում տրակտորների տեխնիկական խնամքը կատարում էին իրենք՝ տրակտորիստները, որոնք, սակայն, ունեին ցածր որակավորում, զուրկ էին անհրաժեշտ փորձից, և, բնականաբար, ի վիճակի չէին գործը կատարել ըստ պատշաճի։ Իսկ հիմա սպասարկումը կատարում են այդ օղակների անդամները՝ տրակտորիստի մասնակցությամբ։

— Մեր հաջողության հիմնական նախապայմաններից մեկը մեքենայացումն է, լինի դա դաշտավարության, թե անասնաբուծության ասպարեզում, — ասում է գլխավոր ինժեները։

Կուսկազմակերպությունը պարբերաբար քննարկում է մեքենայացմանը վերաբերող հարցեր, ուսումնասիրում մեքենա-տրակտորային պարկի գործերի վիճակը, ձեռնարկում այն բարելավելու միջոցներ։

## ՎԵՐԵԼՔԻ ԿԱՐԵՎՈՐ ԱԶԴԱԿԸ

Արտադրության մարդկանց նյութական. շահագրգռվածության բարձրացումն ու բարոյական խրախուսումը խթանում են տնտեսության վերելքը։ Կուսկազմակերպությունն ու սովխոզի դիրեկցիան կարևոր նշանակություն են տալիս դրան։ Որպես լրացուցիչ վարձատրություն, այստեղ անասնապահներին տրվում է պլանից ավելի ստացված կաթի, մսի և բրդի, դաշտավարներին ու մեխանիզատորներին՝ հացահատիկի, կարտոֆիլի և արմատապտուղների զգալի մասի արժեքը։ Լավ աշխատողը լավ էլ վարձատրվում է։ Այսպես, 1969-ին դաշտավարական № 2 բրիգադան, որպես լրացուցիչ վարձատրություն, վաստակած յուրաքանչյուր ռուբլու դիմաց լրացուցիչ ստացավ 32 կոպեկ։

Կուսկազմակերպությունն ու դիրեկցիան երկու տարի առաջ սահմանեցին «Անասնապահության վարպետ» կոչումը, որը շնորհվում է երեք տարի անընդմեջ լավագույն ցուցանիշների հասած կթվորուհուն և անասնապահին։ Ընդ որում, առաջին կարգի վարպետի վաստակը բարձրացվում է 20, երկրորդ կարգինինը՝ 10 տոկոսով։

Կուսկազմակերպությունը բանիմացորեն է գլխավորում սոցիալիստական մրցությունը։ Արհմիության տեղկոմի և դիրեկցիայի հետ նա մշակել է մրցության հաղթողներին խրախուսելու արդյունավետ միջոցառումներ, որոնք դարձել են ավանդույթ։ Ժյուրին յուրաքանչյուր ամսվա վերջում ամփոփում է անասնապահների, սեզոնի վերջում՝ դաշտավարների ու մեխանիզատորների սոցիալիստական մրցության արդյունքները և փոխանցիկ դրոշը, 100-ական ռուբլի դրամական պարգևի հետ, հանձնում հաղթող բրիգադային։ Այդ պարգևին պարբերաբար արժանացել են կոմունիստներ Մ. Ոսուբովի և Ի. Մարկոսյանի ղեկավարած բրիգադները։

Մոռացության չի տրվել նաև ներճյուղային մրցությունը։ «Առաջավոր կթվորուհուն», «Առաջավոր անասնապահին», «Առաջավոր մեխանիզատորին» հուշագրոշների և համապատասխան դրամական մրցանակների համար պայքարում են այստեղ ամեն ամիս։

1967-ին էր։ Սովխոզի դիրեկտորն ու կուսբյուրոյի քարտուղարն ընթերցում էին «Сельская жизнь» թերթը։ Նրանց ուշադրությունը գրավեց մի կարևոր հաղորդում այն մասին, որ ինչ-որ տնտեսությունում արտադրության առաջավորներին տրվում է «Սովխոզային մրցանակի դափնեկիր» կոչում։

— Իսկ ինչո՞ւ մեզ մոտ չունենալ, Ալեքսեյ Մատվեյիչ,— դիմեց կուսբյուրոյի քարտուղարին սովխոզի դիրեկտոր Ավդալյանը։

— Ինչ կա որ, Գուրգեն Միխայլովիչ, կարելի է,— հավանություն տվեց քարտուղարը։

Նրանք համաձայնության եկան, ու շուտով այդ հարցը քննարկվեց կուսբյուրոյի նիստում։ Այստեղ ևս այդ առաջարկությունը հավանության արժանացավ, մշակվեցին համապատասխան կանոններ, որոնք միահամուռ հաստատվեցին կուսակցական դռնբաց ժողովում։ Եվ այսպես, ծնունդ առավ խրախուսման մի կարևոր միջոց ևս՝ սահմանվեց «Սովխոզային արտադրության դափնեկիր» կոչումը։ Այն շնորհվում է պլանից դուրս առավելագույն արդյունքի հասած բրիգադավարին, կթվորուհուն, անասնապահին, մեխանիզատորին ու դաշտավարին։ Դափնեկիրներին միաժամանակ տրվում են իրային թանկարժեք նվերներ, իսկ երկրորդ անգամ նվաճողին՝ հեռուստացույց։ Առաջին դափնեկիրը դարձավ կոմունիստ բրիգադավար Մ. Ոսուբովը։ Ի դեպ, այդ կոչմանը մինչև այժմ արժանացած 36 մարդուց 15-ը նրա բրիգադայից են։

## ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐ

Գլխավոր տնտեսագետ, կոմունիստ Կ. Մարտիրոսյանը, հակված հաշվեմատյաններին, գրանցումներ է կատարում։ Իրենց տարերքի մեջ են և հաշվային աշխատողները։ Հնգամյակն ավարտվել է, հարկ է գումարել թվերը, ամփոփել նախընթաց տարիների ջանքերի արդյունքները։ Ու հառնում են թվերը, արտացոլում տնտեսության վերելքը, արտադրական ճյուղերի զարգացման աստիճանը։ Պերճախոս են դրանք ու հիմա ասես լեզու են առել և պատմում են սովխոզի մարդկանց, կոմունիստների հայրենանվեր գործերի մասին։

— Արտադրության բոլոր ճյուղերն,— ասում է սովխոզի դիրեկտորը,— անցել են տնտհաշվարկի, դարձել շահութաբեր։

Եվ ահա ծանոթանում եմ շահույթն արտացոլող թվերին. 1965-ին 95 հազար, 1969-ին՝ 283, 1970-ին՝ 662 հազար ռուբլի։ Կրկնակի ավելացել է իրացումը՝ հնգամյակի անդրանիկ տարվա 914 հազար ռուբլուց եզրափակիչ տարում հասնելով մոտ երկու միլիոնի։

Սովխոզի մարդիկ, կուսկազմակերպության ղեկավարությամբ, աշխատանքային հրաշքներ են գործել, պատվով կատարել իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։ Համոզվելու համար դարձյալ դիմենք նվաճումներն արտացոլող թվերին։ 1964-ի համեմատությամբ հնգամյակի վերջին տարում կաթի համախառն արտադրությունն աճել է 65 տոկոսով, մսինը՝ 153 տոննայով, կովերի միջին կաթնատվությունը՝ 1100 կիլոգրամով։ Հնգամյա պլանից դուրս պետությանն է հանձնվել կաթ՝ 2860 տոննա, միս՝ 766, բուրդ, 0,9, հացահատիկ՝ 570, կարտոֆիլ՝ 1500 տոննա։ Է՛լ չենք խոսում այն մասին, որ մեծ չափերով ավելացել է հանրային անասունների գլխաքանակը, մսի ու կաթի արտադրության և պետությանը հանձնելու հնգամյա ծրագրերը կատարվել են 3,5—4 տարում։ Այդ տարիներին ներդրված ռուբլին առավելագույն արդյունք է տվել։ Անցած տարի միայն կաթի ինքնարժեքի իջեցումից ստացվել է 250 հազար ռուբլու օգուտ։

Ֆինանսական կայուն վիճակը հնարավորություն է ընձեռում նշանակալիորեն մեծացնելու հիմնական ֆոնդերը, ծավալելու շինարարական լայն աշխատանքներ, բարելավելու բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային սպասարկումը։ Անցած տարի լավ նվեր ստացան երեխաները. կառուցվեց մսուր-մանկապարտեզի տիպային շենքը։ Նախատեսվում է նոր հնգամյակի տարիներին շահագործման հանձնել նոր շատ օբյեկտներ։

## ՊԱՅԾԱՌ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Նորից սովխոզի դիրեկտորի առանձնասենյակում եմ։ Անկաշկանդ զրույց է ծայր առնում։ Խոսելով ձեռք բերած հաջողությունների, առօրյա հոգսերի

մասին՝ դիրեկտորը միաժամանակ թըվարկում է տնտեսության զարգացման հեռանկարները։

Այստեղ հնգամյակի գլխավոր խընդիրը հանրային անասունների գլխաքանակի ու դրանց մթերատվության աճի ապահովումն է։ Նախատեսվում է 1975-ի վերջում տավարի գլխաքանակը հասցնել 3000-ի, այդ թվում կովերինը՝ 1200—1500-ի (այժմ 1020 է), խոզերինը՝ 700-ի (1970-ի պլանը 300 էր), թռչուններինը՝ 17 հազարի (հիմա չկա)։ 1975 թվականին 3000 ցենտներ միս ու 51 հազար ցենտներ կաթ են ստանալու անասնապահները։ Այդ նըրանակում է անցած հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ համախառն արտադրանքը կավելանա 40—60 տոկոսով։

Սովխոզի փորձված ու բանիմաց դիրեկտոր Գ. Ավգալյանը գտնում է, որ տնտեսության հնարավորությունները մեծ են, տակավին կան թաքնված ու չօգտագործված շատ և շատ հնարավորություններ, լուծման կարոտ բազմազան խնդիրներ։

— Արդեն,— ասում է նա,— նախագծվում է ստեղծել կուլտուրական (վանդակային) արոտավայր։ Այն կունենա ջրարբիացման ու արհեստական անձրևացման և այլ հարմարանքներ, որոնք հնարավորություն կտան մշտապես ունենալու թարմ և առատ բուսածածկ, մեքենայացնելու կովերի կիթը նաև ամռան ամիսներին։

Անցած տարվա մայիսին սովխոզի դիրեկտորը եղավ Մոսկվայի մարզի Կոտովոյի կաթնային տնտեսությունում։ Նրան անչափ դուր եկավ այնտեղի կաթնային համալիրը, որտեղ կաթը կովի կրծքից փակ խողովակներով միանգամից գնում է պաստերիզացման և ուղարկվում պատվիրատուներին։ Այդ եղանակի կիրառմամբ տասնյակ անգամ պակասում է միկրոբների քանակությունը կաթի մեջ։ Հիմա սովխոզի դիրեկտորի միտքը պրպտումների մեջ է. ցանկանում է իրենց տնտեսությունում ևս ունենալ այդպիսին։ Նա ուրվագծում է նորամուծությունը։

— Ծաղիկներ կլինեն կովանոցների շուրջբոլորը,— ասում է նա,— կովը բակ չի մտնի։ Համալիրը գրադարան կունենա անասնապահների համար, հանգստի սենյակ ու բաղնիք... կարող ենք անել. տեղը կա, փողը կա։ Կիրովականի նման քաղաքին օրական 20 տոննա կաթ կտանք։

Բազմազան են ու պայծառ առաջավոր տնտեսության հեռանկարները։ Հավատում ես, որ այս առողջ, ինտերնացիոնալ կուսկազմակերպությունը պատվով կլուծի իր առջև ծառացած տնտեսական նոր և վիթխարի խնդիրները, որոնք կառաջադրեն Հայաստանի կոմկուսի XXV և ՍՄԿԿ XXIV համագումարները, կշարունակի արմատավորել նորն ու առաջավորը։ Հավատում ես, որովհետև նրա անդամներն իրենց կոչման բարձրության վրա են, սիրում ու գնահատում են աշխատանքը, վստահ են իրենց ուժերին, հավատում են գործի հաջողությանը։

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀՄՏՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

Գյուղատնտեսության մեջ արտադրության շահութաբերության բարձրացման գործոնները բազմաթիվ են։ Դրանք են՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը, արտադրության մեքենայացումը և դրա հիման վրա կատարված ծախսերի իջեցումը միավոր արտադրանքի հաշվով, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների գների մակարդակը, արտադրանքի որակը և այլն։ Այս գործոնների լավագույն զուգակցումը հնարավորություն է տալիս ստանալ գյուղատնտեսական մթերքների առավելագույն քանակություն, ապահովելով արտադրության բարձր շահութաբերությունը։

Ինչպես հայտնի է, շահութաբերության նորման հաշվարկվում է շահույթի և արտադրության ընթացիկ ծախսումների կամ շահույթի ու արտադրաֆոնդերի հարաբերությամբ։ Շահութաբերության նորմայի որոշումը՝ շահույթի և արտադրաֆոնդերի գումարի հարաբերությամբ գործնականորեն հնարավոր է միայն տնտեսությունում ամբողջությամբ վերցրած, որովհետև կոլտնտեսություններում միևնույն արտադրաֆոնդերը ծառայում են տնտեսության մի քանի ճյուղերի, իսկ դրանց բաշխումն ըստ առանձին կուլտուրաների և մթերքների, պայմանական կարող է լինել։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսություններում խաղողագործության, ինչպես և գյուղատնտեսական մյուս ճյուղերի շահութաբերության հարցերի ուսումնասիրության ժամանակ ելնում ենք շահույթի և արտադրության ընթացիկ ծախսումների կամ ինքնարժեքի հարաբերությունից։

Տվյալ հարցի առնչությամբ հետաքրքրական են հետևյալ տվյալները.

Հանրապետության բուսաբուծության ճյուղերի շահութաբերությունը

| | 1962 թ. | | | | 1967 թ. | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Շահույթը | | | | Շահույթը | | |
| | Բերքատվութ. (ցենտներ) | մեկ հեկտարից (ռուբ.) | մեկ մարդ-օր հաշվ. (ռուբ.) | Շահութաբեր. նորման | Բերքատվ. (ցենտներ) | մեկ հեկտար. (ռուբ.) | մեկ մարդ-օր հաշվով | Շահութաբեր. նորման |
| Հացահատիկ | 11,0 | 2,5 | 0,1 | 19,8 | 14,4 | 71 | 0,4 | 55 |
| Շաքարի ճակնդեղ | 278,9 | 50,0 | 0,3 | 8,5 | 296,4 | —21 | —1,37 | —21 |
| Ծխախոտ | 16,7 | 1201 | 2,1 | 71,8 | 18,9 | 159 | 0,3 | 5 |
| Կարտոֆիլ | 81,0 | 59 | 0,5 | 63,0 | 105,9 | 581 | 1,1 | 56 |
| Բանջարեղեն | 183,4 | 200 | 0,8 | 21,2 | 237,9 | 179 | 0,7 | 11 |
| Բոստանային | | | | 121,3 | 161,7 | 424 | 4,5 | 51 |
| կուլտուրաներ | 161,6 | 918 | 6,5 | | | | | |
| Պտուղ | 19,9 | 226 | 3,2 | 104,4 | 27,7 | 376 | 5,4 | 107 |
| Խաղող | 97,7 | 1281 | 5,6 | 120,0 | 51,4 | 147 | 0,9 | 12 |

Ինչպես տեսնում ենք, հանրապետության գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերի՝ խաղողագործության, ծխախոտագործության, բանջարաբուծության և շաքարի ճակնդեղի արտադրության շահութաբերությունը (ծախսված մարդ-օրի հաշվով) իջել է։ Ստացվում է այնպես, որ մեր ամենաշահավետ կուլտուրայից՝ խաղողից ստացված եկամուտը հազիվ է ծածկում արտադրածախսերը։ Դա տեղիք է տալիս լուրջ մտածության։ Ուստի, անհրաժեշտ է հաշվի առնել և հմտորեն օգտագործել այն բոլոր գործոնները, որոնք նպաստում են խաղողի բերքատվության բարձրացմանը, ինքնարժեքի իջեցմանը և, վերջապես, շահութաբերության ապահովմանը։

Խաղողի ինքնարժեքի իջեցման կարևոր աղբյուրը բերքատվության բարձրացումն է։ Սովորաբար որքան բարձր է խաղողի բերքատվությունը, այնքան ցածր է ինքնարժեքը։ Պետք է նկատի ունենալ, որ կատարվող աշխատանքային այնպիսի ծախսումները, ինչպիսիք են՝ վարը, փխրեցումը, այգիների խնամքը և ագրոտեխնիկական այլ միջոցառումները, ինչպես նաև ամորտիզացիոն հատկացումները կամ ընթացիկ վերանորոգումը, բարձր և ցածր բերքատվության դեպքում մնում են անփոփոխ։ Բարձր բերքի դեպքում աշխատանքային ծախսումները, մեկ հեկտարի հաշվով, կարող են բարձրանալ միայն որոշակի չափով, մինչդեռ ընդհանուր ծախսերը միավոր արտադրանքի հաշվով պակասում են, այլ կերպ ասած, ինքնարժեքն իջնում է։ Ասածը ակներև երևում է հետևյալ տվյալներից, որոնք վերաբերում են հանրապետության կոլտնտեսություններին.

Խաղողագործության հիմնական տնտեսական ցուցանիշների շարժը (տոկոսներով)

| | 1962 թ. | 1967 թ. |
|---|---|---|
| Բերքատվությունը | 100 | 52,6 |
| Ինքնարժեքը | 100 | 195,0 |
| Ծախսումները մեկ հեկտարին | 100 | 102,4 |
| Մեկ հեկտարին մարդ-օրերի ծախս. | 100 | 80,0 |
| Մեկ մարդ-օրի հաշվով արտադրվել է խաղող | 100 | 62,8 |
| Մեկ մարդ-օրի վարձատրությունը (ռ.) | 100 | 107,5 |

Այսպիսով, նշված 6 տարիների ընթացքում չնայած խաղողի այգիների, յուրաքանչյուր հեկտարի հաշվով, ընդհանուր ծախսերը գրեթե անփոփոխ են, իսկ կենդանի աշխատանքինը (մարդ-օրերի) նույնիսկ կրճատվել է $^1/_5$-ով, սակայն բերքատվության իջեցումը հանգեցրել է այն բանին, որ աշխատանքի արտադրողականությունն այս ճյուղում իջել է 37,2 տոկոսով, իսկ մեկ ցենտներ խաղողի ինքնարժեքը բարձրացել է մոտ երկու անգամ։

Որո՞նք են խաղողի ինքնարժեքի բարձրացման հիմնական պատճառները։ Նախօրոք նկատենք (ինչպես երևում է աղյուսակից), որ խաղողագործության ասպարեզում ծախսած մեկ մարդ-օրվա վարձատրությունը 1967 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, բարձրացել է ընդամենը 7,5 տոկոսով։ Այստեղից պարզ է, որ այս գործոնի ազդեցությունը շատ չնչին է եղել ինքնարժեքի բարձրացման վրա։ Մեկ հեկտարի հաշվով խաղողի արտադրության ծախսերի վերլուծությունը ցույց է տալիս, որ 1962—1967 թթ. չնայած այդ ծախսերի մակարդակը հիմնականում չի փոխվել, բայց փոխվել է աշխատանքային և նյութական ծախսումների հարաբերակցությունը հօգուտ նյութականի։ 1962 թվականին այդ հարաբերակցությունը 83:17 էր, իսկ 1967 թ.՝ 70:30։ Եթե 1962 թվականին մեկ հեկտար տնկարկների հաշվով նյութական ծախսումները կազմել են 242 ռուբլի, ապա 1967 թ. այն հասել է 427 ռուբլու կամ ավելացել 1,8 անգամ։ Սրա շնորհիվ էլ խաղողի ինքնարժեքում բարձրացել է նյութական ծախսումների տեսակարար կշիռը։ Այսպիսով, խաղողի ինքնարժեքի բարձրացման հիմնական պատճառը կամ գործոնը մնում է բերքատվության անկումը և աշխատանքի արտադրողականության նվազումը։



Խաղողագործության շահութաբերության անկման և, ընդհանրապես, խաղողի մշակության նկատմամբ շահագրգռվածության թուլացումը, դրա արտադրության տեմպերի նվազումը բացատրվում են մի շարք հանգամանքներով։ Ամենից առաջ պետք է նշել այն առանձնահատկությունը, որ խաղողագործությունը մեզանում ամենաաշխատատար ճյուղն է, դրա նորմալ խնամքը պահանջում է որակյալ և միաժամանակ ֆիզիկական ծանր, ձեռքի աշխատանք։ Հայաստանում մեքենայացված է խաղողագործության աշխատանքների մոտ 10 տոկոսը, իսկ նյութական բոլոր ծախսումները կազմում են ընդհանուր ծախսումների միայն 20 տոկոսը։ Հատկապես աշխատատար է խաղողագործության թմբային սիստեմը, որը թույլ չի տալիս լայնորեն մեքենայացնել այգիների մշակությունը։ Հայտնի է, որ թմբային սիստեմի այգու 1 հեկտարը մշակելու համար, հենասյունային սիստեմի այգու համեմատությամբ, 1,5—2 անգամ ավելի աշխատանք է պահանջվում։ Թմբային սիստեմի այգիների մշակության համար պահանջվող ֆիզիկական ծանր աշխատանքները (այգեփորը, այգեբացը, այգեթաղը և այլն) կատարվում են ձեռքով, որն այժմ քիչ է հրապուրում մարդկանց և դրա պատճառով ամեն տարի անբավարար են մշակվում այգիների մեծ մասը։ Հետևապես թմբային սիստեմի այգիների վերակառուցումը, որ ապահովի աշխատատար պրոցեսների մեքենայացումը, անհետաձգելի հարց է։ Մեքենայացման մասին պետք է հոգալ այգիները հիմնելու առաջին իսկ օրից։ Առաջին հերթին անհրաժեշտ է վերափոխել մասնավոր տնտեսություններից ժառանգված փոքր և ցածր եկամտաբեր այգեկտորները։

Մյուս գործոնը, մեր կարծիքով, խաղողի պետական գնման գներն են։ Պետք է նկատի ունենալ, որ խաղողագործական հիմնական շրջաններում գների հարաբերակցությունը փոխվել է հօգուտ այլ կուլտուրաների (պտուղ, բանջարեղեն, խորդենի և այլն), որով դրանք առավել շահութաբեր են դարձել, քան խաղողը։

Խաղողագործության արդյունավետության վրա ազդող մյուս գործոններից են կլիմայական անբարենպաստ պայմանները (ցրտահարություն, կարկտահարություն, երաշտ և այլն), որոնք երբեմն ազդում են ո՛չ միայն տվյալ, այլև դրան հաջորդող տարիների բերքատվության վրա։

Վերջապես, խաղողի բերքատվության և համախառն արտադրանքի վրա մեծ չափով ազդում է խաղողի տնկարկների խտության նվազումը։ Խաղողի վազերի քանակությունը մեկ հեկտար տնկարկների հաշվով, ըստ ցուցակագրության տվյալների, կոլտնտեսություններում 1940 թվականին եղել է 2090, իսկ 1964 թվականին՝ 1793 վազ[1], այսինքն պակասել է 14,2 տոկոսով։ Բայց եթե հաշվենք, որ 1940 թվականին այգիները լիարժեք չեն եղել (ըստ նորմայի պետք է լինի 2666 վազ), ապա այն ավելի մեծ տոկոս կկազմի։

Միության առումով, 1968 թվականի հունվարի մեկի դրությամբ, սովխոզներում խաղողի այգիների նոսրությունը հասնում է 11,9 տոկոսի։ Վերջին տարիներին մեր հանրապետությունում այն հասնում է 15—20 տոկոսի, առանձին շրջաններում ավելի բարձր է (Հոկտեմբերյանում 30, էջմիածնում 28 տոկոս)։ Եթե խաղողի ամբողջ տնկարկները վերահաշվենք ըստ նորմայի, ապա այն, ամբողջությամբ վերցրած, հանրապետությունում փաստորեն 5—7 հազարով պակաս է, այսինքն՝ յուրաքանչյուր տարի պակաս է ստացվում մոտ 25—35 հազար տոննա խաղող, որը պետական գնման գներով հաշված կկազմի 8—11 միլիոն ռուբլի։ Ահա թե ինչու, որպեսզի այգիները լինեն լիարժեք և արդյունավետ, անհրաժեշտ է այգիների տնկման համար օգտագործել պահանջվող քանակությամբ բարձրորակ և մաքրասորտ տնկանյութ։

Կոլտնտեսությունների ստացած շահույթը մեծ չափով կախված է նաև իրացվող խաղողի որակից։ Խաղողագործության մեջ, ինչպես գյուղատնտեսության ոչ մի ճյուղում, առաջին պլանում հանդես է գալիս արտադրանքի որակի հարցը։ Խաղողի որակի կարևորագույն ցուցանիշը շաքարի պարունակությունն է։ Քանի որ Հայաստանի գինեգործությունը մասնագիտացված է թունդ և դեսերտային գինիներ արտադրելու համար (որոնք աչքի են ընկնում

1 Խաղողի այգիների վերջին ցուցակագրությունը տեղի է ունեցել 1964 թ.։

իրենց որակով), ապա խաղողի նկատմամբ հիմնական պահանջն առավելագույն քանակի շաքարի կուտակումն է։ Այդ խնդրի հույժ կարևորությունը բացատրվում է ո՛չ միայն արտադրանքի արտադրության ավելացման անհրաժեշտությամբ, այլև խաղողի վերամշակումից ստացվող ավելի որակյալ արտադրանքի արտադրության բարձր տնտեսական արդյունավետությամբ։ Հանրապետությունում խաղողի շաքարայնությունն ըստ տարիների տատանվում է, իսկ վերջին տարիներին, մշակության ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով, այն ունի նվազման տենդենց։ Օրինակ, 1930—1940 թվականներին մթերված խաղողի միջին շաքարայնությունն առանձին տարիներին եղել է 30 տոկոս, 1946—1950 թթ. 22,7, 1967 թ.՝ 17,5, 1969 թ.-ին՝ 17,7 տոկոս։

Ցածր շաքարայնությամբ խաղողը վարձատրվում է ցածր գներով և, հետևապես, ցածր է լինում դրա շահութաբերությունը։ Անգամ բարձր բերքատվության և ցածր ինքնարժեքի պայմաններում, երբ խաղողի մեջ շաքարայնությունը քիչ է, անհրաժեշտ շահութաբերություն չի ապահովվում։

Այս առումով հարկ ենք համարում նշել, որ հանրապետությունում խաղողի միայն մեկ տոկոս շաքարայնության բարձրացման դեպքում կարելի է ստանալ մոտ 9 հազար ցենտներ խաղողաշաքար։ Համեմատության կարգով ասենք, որ այդպիսի քանակությամբ խաղողաշաքար ստանալու համար, գոյություն ունեցող բերքատվության մակարդակի դեպքում, կպահանջվի լրացուցիչ մոտ 840 հեկտար խաղողի բերքատու այգի։

Միայն նրա համար, որ խաղողի փաստացի շաքարայնությունը վերջին տարիներին հանրապետությունում 1—2,5 տոկոսով ցածր է հնարավորից (պայմանական շաքարայնությունը 20 տոկոս է), հանրապետությունը յուրաքանչյուր դեկալիտր սեղանի գինու մշակման վրա կորցնում է 0,6—1,5 աստիճան սպիրտ (քաղցուի մեկ տոկոս շաքարի խմորումը տալիս է 0,6 աստիճան սպիրտ)։

Ինչպես տեսնում ենք, գյուղատնտեսական մթերքների որակի բարելավումը հավասարազոր է դրա քանակի ավելացմանը, որը բերում է կենդանի և մարմնացած աշխատանքի խնայողություն, արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացում։ Դրան մեծ չափով կնպաստեն գյուղատնտեսության պլանավորման կատարելագործումը և կարգավորման տնտեսական լծակների ճիշտ գործադրումը, որոնք առանձին տնտեսությունների և պետության փոխհարաբերության ասպարեզում կուժեղացնեն նյութական շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը։ Այսպես, օրինակ, կոլտնտեսությունները ցածրորակ խաղող հանձնելու դեպքում չնայած վնաս են կրում, բայց այդ չի արտացոլվում նրանց տնտեսական գործունեության գնահատման և պլանների կատարման ցուցանիշում։ Այդ բացը լրացնելու համար նպատակահարմար է կիրառել հանձնվող խաղողի վերահաշվառում, ելնելով հանձնվող արտադրանքի որակից։

Գյուղատնտեսական մթերքների որակը պետք է դառնա կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական գործունեությունը բնութագրող կարևոր ցուցանիշներից մեկը։ Այս սկզբունքն անհրաժեշտ է կիրառել ո՛չ միայն արտադրանքի վաճառքի (հանձնման) պլանների կատարողականը ճշտելու, այլև դրանք սահմանելու ժամանակ։

Խաղողի վաճառքի պլանը պետք է սահմանել այնպես, որ դրանում արտացոլվի արտադրանքի որակի ցուցանիշի դերը, ինչպես դա կատարվում է գյուղատնտեսական մի շարք այլ մթերքների գծով։ Խաղողի տեխնիկական բարձրորակ (տվյալ դեպքում ի նկատի ունենք շաքարայնությունը) սորտերի արտադրության վրա վերահսկողություն սահմանելու համար անհրաժեշտ է որպես պլանավորման ցուցանիշ ընտրել ո՛չ թե համախառն արտադրանքը, այլ տոննա-տոկոս շաքարայնությունը։

Ինչպես հայտնի է, կուտակված շաքարի քանակությունը կախված է սորտերի ճիշտ ընտրությունից և դրանց տեղաբաշխումից, կուլտուրայի մշակության պայմաններից, կիրառվող ագրոտեխնիկայից։ Միևնույն սորտը տարբեր տնտեսություններում կուտակում է անհավասար քանակությամբ շաքար։ Արտադրվող գինիների որակի վրա բացասաբար է անդրադառնում այգիների բազմասորտությունը։ Անգամ նոր հիմնադրվող տնկարկների որոշ



մասը կազմում են սորտախառնուրդներ, չշրջանացված սորտեր։ Դա դժվարացնում է կիրառել սորտային ագրոտեխնիկան և գինեգործների աշխատանքը, չապահովելով բարձրորակ բերքի ստացումը։ Խաղողի որակի բարձրացումը, որն այդ կուլտուրայից ստացվող եկամուտների ավելացման կարևոր ռեզերվն է, կարող է բարձրանալ կազմակերպական որոշ միջոցառումների շնորհիվ, որոնք լրացուցիչ ծախսեր չեն պահանջում։

Խաղողի արտադրության ընդլայնման և որակի բարձրացման վրա մեծ ազդեցություն ունեն խաղողի գնման գները։ Վերջին տարիներին խաղողի պետական գնման գները տնտեսապես չէին ապահովում ոչ միայն նորմալ շահույթը, այլև արտադրության ծախքերի հատուցումը, չէին խթանում կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ բարձրացնելու խաղողի շաքարայնությունը։ 1969 թվականին հանրապետությունում բարձրացվեցին խաղողի գնման գները՝ խաղողի տեխնիկական սորտերինը՝ 16 տոկոսով (մեկ տոննայի համար 320 ռուբլուց մինչև 370 ռուբլի), իսկ սեղանի սորտերինը՝ 29 տոկոսով (350-ից մինչև 450 ռուբլի մեկ տոննայի համար)։ Դա բարենպաստ պայմաններ է ստեղծում սեղանի խաղողագործության զարգացման համար։ Խաղողի արժեքավոր շամպայն սորտերի (պինո սպիտակ, պինո սև, ալիգոտե, կաբերնե) և մուսկատի մշակությունը տնտեսապես խթանելու համար գնման գները բարձրացրել են 45—50 տոկոսով։ Դրանով ռեալ պայմաններ են ստեղծվել այդ արժեքավոր կուլտուրայի շահութաբերության բարձրացման համար։

Շահութաբերության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի նաև սորտերի տնտեսական գնահատումը։ Միության խաղողագործական մի շարք շրջանների առաջավոր տնտեսություններում կատարել են սորտերի տնտեսական գնահատում։ Սորտերի տնտեսական արդյունավետության ավելի ճիշտ որոշման համար անհրաժեշտ է հաշվի առնել հետևյալ ցուցանիշները՝ մի քանի տարվա միջին բերքատվությունը, շաքարայնությունը, համախառն արտադրանքի արժեքը և ծախսումները մեկ հեկտարից (արժեքային արտահայտությամբ), զուտ եկամուտը, շահութաբերության նորման։ Սորտերի տնտեսական գնահատումը հնարավորություն կընձեռի նոր տնկումներ կատարելիս սորտերի ընտրության ժամանակ ուշադրություն դարձնել ո՛չ միայն դրանց բիոլոգիական առանձնահատկությունների, այլև սորտերի տնտեսական արդյունավետության վրա։ Սորտերի այդ կարգի ընտրությունը կապահովի հողի, նյութական, աշխատանքային և այլ ռեսուրսների ամենից ավելի նպատակահարմար օգտագործումը և կլուծի միանգամից երկու խնդիր՝ կապահովվի բերքատվության բարձրացումը և կբարելավվի արտադրանքի որակը։

Խաղողագործության շահութաբերության բարձրացման ռեզերվների լրիվ և ժամանակին օգտագործումը հնարավորություն կտա արտադրության վրա կատարվող ծախսումները հատուցելու մեծ հավելումով, որը և կնպաստի գյուղատնտեսության զարգացման տեմպերի արագացմանը և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը։

ՍՈՖՅԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի կրտսեր գիտաշխատող



# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԵՎԱՆԻ ՋՐԱՄԱՏԱԿԱՐԱՐՄԱՆԸ

Երևանի ջրամատակարարման բարելավումը մեր հանրապետության մայրաքաղաքի տնտեսության բարդ պրոբլեմներից մեկն է։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի՝ «Երևան քաղաքի ջրամատակարարման հետագա բարելավման միջոցառումների մասին» հայտնի որոշումից հետո վերջին չորս տարում քաղաքի կուսակցական կազմակերպությունները, Երքաղսովետի գործկոմը զգալի աշխատանք են կատարել այդ բնագավառում։ Ներկայումս Երևան քաղաքի խմելու ջրի ընդհանուր ծավալը կազմում է 8000 լ/վ՝ 1967 թվականի 6000 լ/վ դիմաց, որից 5750 լ/վ աղբյուրի ջուր՝ 1967 թվականի 4700 լ/վ դիմաց։ Չնայած որ քաղաքի բնակչությունն զգալիորեն աճել է, ամեն տարի շահագործման են հանձնվում նոր ձեռնարկություններ, բնակելի տներ և կոմունալ ու կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ, բնակչության մեկ շնչին ընկնող ջրի օրական սպառումը 1967 թվականի 200 լիտրից այժմ հասել է 250-ի։

Անցած հնգամյակի վերջին չորս տարում Արարատյան դաշտի ստորերկրյա ջրերից գոյացող Կապույտ լճի ջրատարի գործարկման հետ մեկտեղ, Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի նախօրյակին ավարտվեց Գառնի—Երևան ջրատարի առաջին հերթի կառուցումը, որի շնորհիվ երևանցիները լրացուցիչ ստացան 400 լ/վ ջուր։ Այդ ժամանակամիջոցում քաղաքում կառուցված էր ջրմուղի ցանց՝ 100 կմ ընդհանուր երկարությամբ. օրական կարգավորման ջրատարների կարողությունն ավելացվել է 25 հազար խոր. մետրով։

Քաղաքում որոշ աշխատանք է կատարված արդյունաբերական ձեռնարկություններում օգտագործվող ստորերկրյա ջրերի դեբիտն ավելացնելու և տեխնիկական նպատակներով օգտագործվող խմելու ջուրը բնակչության սպառման կարիքներին հատկացնելու համար։ Ներկայումս Երևանի արդյունաբերության մեջ օգտագործվող ստորերկրյա աղբյուրների ջրի ծավալը կազմում է 600 լ/վ՝ 1967 թվականի 170 լ/վ դիմաց։ Քաղաքի ջրամատակարարումն ավելի օպերատիվ և ճկունորեն կազմակերպելու համար կառավարության որոշմամբ 1968 թվականից Երքաղսովետի գործկոմին կից ստեղծված է ջրմուղ-կոյուղի տնտհաշվարկային գլխավոր վարչություն՝ ջրմուղ, կոյուղի տրեստներով և նրա իրավասությանը ենթակա այլ ձեռնարկություններով ու կազմակերպություններով։

Սակայն, չնայած այդ բոլորին, Երևանի բնակչության ջրամատակարարումը դեռևս անբավարար է։ Քաղաքի առանձին շրջաններ և թաղամասեր



գրաֆիկով են ջուր ստանում։ Ջրամատակարարման մեծ ընդհատումներ են լինում Նորքի նոր զանգվածներում, Շահումյանում, Լենինի, Օրջոնիկիձեի և քաղաքի այլ շրջանների առանձին թաղամասերում։ Բազմահարկ շենքերի մեծ մասի վերին հարկերում շարունակ ջրի պակաս է զգացվում։

Բնակչության ջրամատակարարման այդպիսի աննորմալ վիճակը չէր կարող չմտահոգել ՀԿԿ Երևանի քաղկոմին։ Վերջինիս հանձնարարությամբ տեխնիկական հատուկ հանձնաժողովը (որի կազմում էին փորձված մասնագետներ, գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունների ներկայացուցիչներ), 1970 թվականի հուլիս-սեպտեմբերին մանրամասն ուսումնասիրելով Երևանի բնակչության ջրամատակարարման վիճակը, համապատասխան նյութեր ներկայացրեց քաղկոմի քննարկմանը։

Ստուգումը ցույց տվեց, որ աննորմալ ջրամատակարարման հիմնական պատճառներից մեկը ջրմուղի տնտեսության տեխնիկական անբավարար-վիճակն է։ Քաղաքի ջրմուղի ցանցը (մոտ հազար կմ երկարությամբ), որի հիմնական մասը կառուցված է նախապատերազմյան տարիներին, ունի թողարկման ցածր կարողություն, բացակայում է ցանցի օղակավորումը, ջրամատակարարումն իրագործվում է առանց գոտիների բաժանելու, օրական կարգավորման ջրամբարների կարողությունը և տեղաբաշխումը չեն բավարարում քաղաքի աճած պահանջմունքները։ Ջրմուղի ցանցի ցածրորակության, պատշաճ խնամքի բացակայության և ժամանակին չվերանորոգելու պատճառով մի շարք հատվածներում խողովակաշարը սիստեմատիկորեն շարքից դուրս է գալիս։

Քաղաքի ջրի պաշարների կուտակման, կորուստները նվազեցնելու և անհավասարաչափ սպառումը կարգավորելու գործում մեծ դեր են խաղում օրական կարգավորման ջրավազանները։ 1970 թվականին Երևանում կար 17 նման ավազան՝ 55,7 հազար խոր. մետր ընդհանուր տարողությամբ, որոնցից գործում էին 15-ը, ընդ որում, դրանցից 3-ը (Աբովյանի վերին մասի, Սարի-Թաղի և Շահումյանի ավազանները)՝ 12,4 հազար խոր. մետր ծավալով, փաստորեն չէին մասնակցում ջրամատակարարման գրաֆիկի կարգավորմանը և օգտագործվում են միայն վթարի դեպքում։ Եթե հաշվի առնենք, որ այդ կարգի բոլոր ավազաններում, որպես կանոն, մեկ մետր ջրաշերտ պաշար է մնում, ապա քաղաքի բոլոր գործող ավազանների օգտակար կարգավորող ծավալը այդ ժամանակ և հենց այժմ էլ չի անցնում 32 հազար խոր. մետրից, որը կազմում է կարգավորող անհրաժեշտ ծավալի քառորդ մասը։ Չնայած գործող ավազանների այդպիսի փոքր ծավալին, որոնցում սարքեր չկան ստացվող և սպառվող ջրի քանակը հաշվի առնելու համար, Երևանի քաղսովետի գործկոմը անբավարար ուշադրություն է նվիրում կարգավորող նոր ջրավազանների կառուցմանը։ Քաղաքի ջրմուղի ցանցի և կարգավորվող կարողությունների տեղաբաշխման այդպիսի անսիստեմ զարգացման պատճառներից մեկն այն է, որ Երևանը չունի ջրամատակարարման գլխավոր սխեմա։

Դեռ 1967 թվականի սկզբներին «Երևաննախագիծ» ինստիտուտին հանձնարարվեց սեղմ ժամկետում կազմել և հաստատման ներկայացնել քաղաքի ջրամատակարարման գլխավոր սխեման։ Ցավոք, նախագծողներն անթույլատրելի կերպով ձգձգեցին այդ կարևոր գործը, որի հետևանքով Երևանը, ի տարբերություն միութենական մյուս հանրապետությունների մայրաքաղաքների, չունի ինչպես խմելու, այնպես էլ տեխնիկական ջրամատակարարման

հաստատված գլխավոր սխեմա։ Այս բոլորից հետո զարմանալի չէ, որ դեռ չի սկսվել քաղաքի ջրմուղի հին ցանցի վերակառուցումը, իսկ ջրամբարների և կարգավորող ջրավազանների կառուցումը կատարվել է աննշան ծավալով և այն էլ անսխտեմ, առանց հաշվի առնելու մեր քաղաքի ռելիեֆը և մյուս բնորոշ առանձնահատկությունները։

Ջրմուղի ցանցի և կարգավորող կառուցվածքների անմխիթար վիճակի հետ մեկտեղ, Երևանի ջրամատակարարման ամենագլխավոր հարցը, թերևս այն է, որ անբավարար պայքար է մղվում խմելու ջրի կորստի, այն ոչ խնայողաբար ծախսելու դեմ։ 9 աղբյուրներից (մինչև Գառնիի ջրատարի գործարկումը) Երևանն ստանում էր 5350 լ/վ ջուր, որից 3120 լ/վ բաց էր թողնվում բնակչության կարիքների համար և 1650 լ/վ՝ արդյունաբերական ձեռնարկություններին։ Մնացած 580 լ/վ որպես մագիստրալային գծերում ու ցանցերում տեղի ունեցող պլանային կորուստ, քաղաքի ջրամատակարարման հաշվեկշռի մեջ չի մտնում։

Բայց Երքաղսովետի գործկոմին կից ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչության տվյալներով, 1970 թվականի սեպտեմբերի 1-ի դրությամբ, քաղաքի բնակչության կարիքների համար փաստորեն բաց է թողնվել 2050 լ/վ, այսինքն՝ նախատեսվածից 1070 լ/վ պակաս, այլ կերպ ասած՝ ջրմուղի սիստեմներում ջրի կորուստն ընդհանուր առմամբ հասել է 1650 լ/վ-ի կամ 31 տոկոսի, պլանով նախատեսված 10 տոկոսի դիմաց։

Այսպիսով, բնակչության մեկ շնչի կարիքների համար նախատեսված օրական 350 լիտրի դիմաց նշված ժամանակաշրջանում բաց է թողնվել 230—240 լիտր։ Բայց բնակչության ջրամատակարարման աննորմալ վիճակը բացատրվում է ո՛չ միայն այդ կորուստներով, այլև բնակելի տների, հասարակական, կուլտուր-կենցաղային և այլ շենքերի սանիտարական հանգույցներում, ինչպես նաև պոմպային սարքեր ունեցող շենքերում տեղի ունեցող կորուստներով ու գերածախսով։ Բավական է բերել հետևյալ տվյալները։ Երևանի վեց շրջանների 87 բնակելի տներում, որոնք ունեն 3550 բնակարան, 1970 թվականի հուլիս-օգոստոսին անսարք վիճակում էր սանհանգույցների ջրի բաքերի 45, իսկ ծորակների՝ 15 տոկոսը։ Այսպիսով, եթե այդ տվյալները համապատասխանաբար տարածենք քաղաքի բոլոր կոմունալ և բնակելի շենքերի վրա, ապա կստացվի, որ Երևանում անսարք վիճակում են 40 հազար ջրի բաք և 25 հազար ծորակ, որի հետևանքով նվազագույն հաշիվներով քաղաքում վայրկյանում անտեղի կորչում է 400—450 լիտր ջուր։ Եթե դրան ավելացնենք այն կորուստները, որ առաջանում են քաղաքացիների զգալի մասի կողմից ջուրը սառեցնելու և ամռան ամիսներին բակերը, ծառեր ու ծաղիկներ ջրելու նպատակով, ապա պարզ կլինի, թե ինչու երևանցիներն ամռանը վատ են ապահովված խմելու ջրով։ Այդ ժամանակ բնակչության մեկ շնչին բաց թողնվող ջրի ծավալն իջնում և հասնում է օրական 140—150 լիտրի, որն ընդունված նորմայից պակաս է 2—2,5 անգամ։

Չնայած ռեալ հնարավորություններ կան սեղմ ժամկետում մոտ 350 լ/վ-ով ավելացնելու քաղաքում ստացվող ջրի ծավալը, առաջին հերթին Արզնի—Արզական—Գյումուշի աղբյուրների հաշվին, սակայն ձգձգվեց շինարարության նախագծի կազմումը և շինարարություն սկսելը, մինչդեռ հիշյալ աղբյուրների ջրերն արդեն մի քանի տարի է, ինչ թափվում են Հրազդան գետը։ Անտեղի կորչում են գործող աղբյուրների ջրերը, քանի որ աղբյուրակալման կառուցվածքները լրիվ չեն պատնեշված, իսկ մագիստրալային խողովակաշարերի պատնեշում տարողությունը որոշ տեղերում այդ ջրերի հոսքն ուղղելու է Երևան։



Ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչության, նրա ջրմուղ տրեստի և մայրաքաղաքի շրջսովետների գործկոմների անպատասխանատվությամբ միայն կարելի է բացատրել այն, որ քաղաքի տնային կառավարչությունները չեն նախաձեռնում ջրմուղ տրեստի օգնությամբ ստեղծելու սանիտարական հանգույցները հսկելու, ստուգելու, դրանք վերանորոգելու, բնակելի տներում և այլ շենքերում ջրի հսկայական կորուստը կանխելու ծառայություն։ Ջրմուղ-կոյուղու գլխավոր և Երքաղսովետի գործկոմի բնակարանային տնտեսության վարչությունները, չնայած որ բազմիցս ցուցումներ են ստացել սանտեխնիկական սարքերի և դրանց պահեստամասերի արտադրության բազա ստեղծելու մասին, փաստորեն մինչև օրս ոչինչ չեն արել։ Բնակելի տների սանիտարական հանգույցների սարքերի վերանորոգման համար բաց թողնված միջոցները հիմնականում ոչ միշտ են նպատակին օգտագործվում։ ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյում, մայրաքաղաքի ջրամատակարարման հարցը քննարկելիս, ընդգծվեց, որ, չնայած Երևանի արդյունաբերական ձեռնարկություններին բաց թողնվող խմելու ջուրը պակասեցնելու վերաբերյալ հանրապետության կառավարության որոշմանը, քաղաքի ջրի զգալի մասը (31 տոկոսը) դեռևս ծախսվում է տեխնիկական նպատակներով։ Երևանի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում՝ կաբելի, ժամացույցի, Կանազ, էլեկտրալամպերի գործարանները, մահուդի ֆաբրիկան և այլն միջոցներ չեն ձեռնարկում խմելու ջուրը խնայողաբար ծախսելու համար։ Արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների և տրանսպորտային հիմնարկությունների կուսակցական կազմակերպությունները պատշաճ պայքար չեն մղում խմելու ջուրը խնայելու համար, միջոցներ չեն ձեռնարկում տեխնիկական նպատակներով ջրի կրկնակի և բազմակի օգտագործման համար։ Արտեզյան ջրհորներից ջրահավաքման ընդհանուր պլանն արդյունաբերական ձեռնարկությունները կատարել են 70 տոկոսով։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների զգալի մասը նախապատրաստված չէ ստորերկրյա և ոչ-աղբյուրային ջրերը տեխնիկական նպատակներով օգտագործելու համար։ Այսպես, արդյունաբերության մեջ օգտագործվող 1650 լ/վ խմելու ջրից 630 լ/վ-ն օգտագործում է Կիրովի անվան կոմբինատը՝ տեխնոլոգիական հիմնական նպատակների համար։ Հասկանալի է, որ եթե կիրովցիները այդ ջուրը փոխարինեն Կապույտ լճի աղբյուրների ջրերով, ապա Երևան քաղաքի և, առաջին հերթին Լենինյան շրջանի ջրամատակարարումը զգալիորեն կբարելավվի։ Մեծ քանակությամբ խմելու ջուր է օգտագործվում կաթսայանոցներում, սանիտարական-կենցաղային օբյեկտներում, մինչդեռ դրանցում կարելի է ազատ օգտագործել ստորերկրյա ջրերը։ Երևանի ջերմաէլեկտրակայանում Կապույտ լճի ջրերի օգտագործմանն անցնելու և Լենինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասը ջերմությամբ ապահովելու վերաբերյալ որոշումը նույնպես չի կատարված՝ ջերմակայանի ջրի քիմիական մաքրման ընդարձակման աշխատանքները չավարտելու պատճառով։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների խմելու ջրի օգտագործման լիմիտները ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչությունը խիստ վերահսկողության չի ենթարկել, դրանք չի վերանայել։ Բավական է նշել, որ անցած երեք տարվա ընթացքում այդ վարչությունն անբավարար էր զբաղվել քաղաքի ջրամատակարարման կազմ-տեխնիկական հարցերով. նրա իրավա-

սության ենթակա կազմակերպությունների օպերատիվ ղեկավարությունը և նրանց ցույց տրվող օգնությունն այնքան թույլ էր, որ հատկապես ջրմուղ տրեստի աշխատանքում որևէ էական տեղաշարժ չէր կատարվել։ Գլխավոր վարչության ապարատը կոմպլեկտավորվել էր զգալի ուշացումով և տեխնիկապես ոչ-բավականաչափ գրագետ, իրենց գործն իմացող աշխատողներով։ Գլխավոր վարչության բաժինները վատ էին կատարում իրենց պարտականությունները, ոչ բոլոր աշխատողներն էին բարձր պատասխանատվություն զգում հանձնարարված գործի համար։ Խմելու ջրի ծախսման հաշվառումը, բաշխումն ու հաշվետվությունը պատշաճ բարձրության վրա չեն գտնվել գլխավոր վարչությունում և նրա իրավասությանը ենթակա կազմակերպություններում։ Գիտության ու տեխնիկայի արդի նվաճումների հիման վրա ջրամատակարարման ծառայության դիսպետչերավորումը փաստորեն չէր կիրառվել, նոր տեխնիկա չէր արմատավորվել։ Կուսակցության քաղկոմը վերանայեց տրեստի ղեկավար կազմը և թարմացրեց այն։

Երքաղսովետի գործկոմն անհրաժեշտ նյութա-տեխնիկական բազա չի ստեղծել ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչության համար, նրան չի ապահովել համապատասխան մեխանիզմներով ու սարքավորումներով։ Գործկոմն անբավարար վերահսկողություն է սահմանել քաղաքի ջրամատակարարման հարցերի վերաբերյալ ընդունված որոշումների կատարման նկատմամբ։ Կուսակցական ու պետական վերադաս օրգանների ցուցումների և Երքաղսովետի գործկոմի որոշումների ձախողման համար մեղավոր անձինք պատասխանատվության չեն կանչվել։

Մայրաքաղաքի ջրամատակարարման գործը պատշաճ կազմակերպելու համար ՀԿԿ Երևանի կոմիտեն կոնկրետ միջոցներ է ձեռնարկել լիովին իրագործելու Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի՝ 1967 թ. ապրիլի 5-ի որոշումը։

Ընթացիկ տարում պետք է ավարտվի Գառնի—Երևան ջրատարի երկրորդ հերթի շինարարությունը և 1971 թվականի առաջին կիսամյակում նրա կարողությունը 400 լ/վ-ից հասցվի 800 լ/վ-ի։ Բացի դրանից, Գողթի աղբյուրների ջրերը հավաքելու և Գառնիի ջրատարով Երևան մղելու շնորհիվ լրացուցիչ կստացվի ևս 400 լ/վ։ Գողթի աղբյուրների ջրերը (որոնցով այժմ ոռոգվում են Գառնի գյուղի հողերը), փոխհատուցելու համար նախատեսված է կարճ ժամկետում Ազատ գետի վրա ջրհան կայան կառուցել և երկու անգամ ավելի շատ ջուր բարձրացնել Գառնի՝ ոռոգման նպատակների համար։ Շուտով ՀՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը ձեռնամուխ կլինի ջրհան կայանի կառուցմանը։

ՀԿԿ քաղկոմի բյուրոյի որոշմամբ Ապարան—Երևան ջրատարի կառուցումն սկսված է. այս տարի կսկսվի Արարատյան դաշտի (Մարմարաշեն գյուղի մոտ) գործող ստորերկրյա ջրհորներից 1500 լ/վ կարողությամբ նոր ջրատարի կառուցումը։ Այդ ջուրը շատ քիչ է տարբերվում աղբյուրի ջրից և պետք է օգտագործվի ոչ միայն արդյունաբերության կարիքների, այլև խմելու համար։ Առաջարկված է նաև 1971 թվականին 1000 լ/վ կարողությամբ նոր ջրատարի կառուցումը՝ Մայակովսկի-Կաթնաղբյուրի ստորերկրյա ջրերը Երևան փոխադրելու համար։

ՍՍՀՄ արդշինմինիստրության ջրմուղ հատուկ վարչությանն առաջարկված է մինչև 1971 թվականի մարտ ամիսը ավարտել Արզնու ջրատարի շրջանցիկ տեղամասի շինարարությունը, որը հնարավորություն կընձեռի լրացուցիչ Երևան փոխադրել 300—350 լ/վ ջուր։



Քաղաքի ջրամատակարարման գլխավոր սխեմայի համաձայն, 1971—1972 թթ. շինարարության պլանի մեջ կմտցվի ջրմուղի կենտրոնական և առաջնահերթ գոտիների ցանցի վերակառուցումը։ Ներկայումս կառուցվող 25 հազար խոր. մետր տարողությամբ օրական կարգավորման ջրամբարները 1970—1971 թթ. շահագործման հանձնելու հետ մեկտեղ, կսկսվի գոտիավոր ջրամբարների շինարարությունը, որոնք լիովին կապահովեն ջրի սպառման և անհրաժեշտ պաշարների ստեղծման գրաֆիկի կարգավորումը։

Ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչությանը հանձնարարված է 1971 թ. վերանորոգել բոլոր գործող աղբյուրակալման կառուցվածքները, դրանցում տեղակայել չափիչ սարքեր։ Միաժամանակ 5 աղբյուրների ջրհան կայաններն ապահովել ռեզերվային էլեկտրասնուցումով, շուտափույթ մեքենայացնել և ավտոմատացնել ջրհան կայանների կառավարումը, ջրամբարների կարգավորումը և դիսպետչերական ծառայությունը։ Միջոցառումներ են նշված նաև գործող ջրամբարների տերիտորիան բարեկարգելու, աղբյուրների սանիտարական գոտիներում պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար։

Երևանում ստեղծվելու է սանիտարական-տեխնիկական սարքերի ու դրանց պահեստամասերի արտադրությունը։ Կուսակցական կազմակերպությունների, շրջսովետների գործկոմների և ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչության ամենակարևոր խնդիրն է՝ պայքար կազմակերպել ջրմուղի քաղաքային ցանցերում, բնակելի տներում, կոմունալ-կենցաղային օբյեկտներում և արդյունաբերական ձեռնարկություններում՝ ջրի կորուստները կանխելու համար։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական կարիքների համար խմելու ջրի օգտագործումը նվազագույնի հասցնելու նպատակով այդ ձեռնարկությունների ղեկավարները պետք է կոնկրետ միջոցառումներ մշակեն առաջիկա տարիներին ստորերկրյա ջրերի գործածությանն անցնելու համար, կազմակերպելով դրանց կրկնակի և բազմակի օգտագործումը։

Քաղաքի շրջանային սովետների գործկոմները, քաղսովետի ջրմուղ-կոյուղու գլխավոր վարչությունը պետք է մտահոգվեն ոռոգելի ջրի ցանցի ընդլայնման և կարգավորման հարցով, հասնեն այն բանին, որպեսզի ամռան տոթին ծառ ու ծաղիկ ապահովվեն ջրով։ Իսկ այդ մեծ չափով կնպաստի խմելու ջուրը խնայելու գործին։

Տարակույս չկա, որ նշված միջոցառումները կենսագործելուց հետո մեր քաղաքի ջրամատակարարումը զգալիորեն կնորմալանա, դրանով իսկ կլուծվի կուսակցության ու կառավարության առաջադրած կարևորագույն խնդիրներից մեկը՝ բնակչության կենցաղային պայմանները բարելավելու մասին։

ԷԴ. Պ. ՇԱՀԻՆՅԱՆ
ՀԿԿ Երքաղկոմի շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՍԵՄԻՆԱՐՆԵՐԻ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ ԵՎ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ:

## ԱՄՆ-Ի ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԷՔՍՊԱՆՍԻԱՆ: ՁԵՎԵՐՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Ս. ՎԱԼՅՈՒԺԵՆԻՉ

**ԱՄՆ-Ի ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԷՔՍՊԱՆՍԻԱՅԻ ՆՊԱՏԱԿՆԵՐՆ ՈՒ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՕՏԱՐԵՐԿՐՅԱ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆՆԵՐԸ՝ ՅՈՒՍԻԱ, ՊԵՆՏԱԳՈՆ, ՊԵՏԱԿԱՆ ԴԵՊԱՐՏԱՄԵՆՏ. ԴՐԱՆՑ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ ● ԱՄՆ-Ի ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԴԻՎԵՐՍԻԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ**

Մեր ժամանակները բնորոշվում են առավել սուր գաղափարական պայքարով՝ իր դարն ապրած կապիտալի աշխարհի և պատմական առաջխաղացման մեջ գտնվող սոցիալիզմի աշխարհի միջև: Լուրջ ցնցումներ և խոշոր ձախողումներ կրելով իր ներքին ու արտաքին քաղաքականության մեջ, իմպերիալիզմը և, առաջին հերթին, ԱՄՆ-ի իմպերիալիզմը, գաղափարական և քաղաքական դիվերսիաներ է կազմակերպում սոցիալիստական երկրների, կոմունիստական ու ողջ հակաիմպերիալիստական շարժման դեմ: Կեղծելով փաստերը, դիմելով մոլորեցնող ինֆորմացիայի և զրպարտության, կապիտալի գաղափարական սպասավորները փորձում են արատավորել սոցիալիզմը, միևնույն ժամանակ ամեն կերպ գունազարդելով բուրժուական ապրելակերպը, փտած բուրժուական կարգերը:

Գաղափարական լայն էքսպանսիայի օգնությամբ ամերիկյան իմպերիալիզմը հույս ունի հասնելու իր ներքին և արտաքին քաղաքական նպատակներին, սակայն դրանք չի կարող իրագործել համաշխարհային ասպարեզում՝ արդի ուժերի դասավորման պայմաններում, չի կարող նվաճել ո՛չ «տաք պատերազմ» սանձազերծելու, ո՛չ խաղաղ գոյակցության պայմաններում սոցիալիզմի հետ տնտեսական մրցակցության միջոցով:

Հեռավոր նշանառության խնդիրները, որ երկրի կառավարող շրջանները դնում են ամերիկյան արտասահմանին ուղղված պրոպագանդայի առջև, բավական բացահայտ ձևակերպել է ներկայացուցիչների պալատի միջազգային կազմակերպությունների և շարժումների հանձնաժողովի նախագահ Դ. Ֆասելը, որը տարիներ շարունակ գլխավորում է «սառը պատերազմում» ԱՄՆ-ի «գաղափարական գործողությունները» ուսումնասիրող փորձագետների խումբը: XX դարում գիտության մեջ, ռազմական գործերում, կոմունիկացիաներում, կրթության և կյանքի մյուս ասպարեզներում տեղի ունեցող հեղափոխությունները իրենց հերթին փոխել են դիվանագիտական պրակտիկան,— բացատրել է Ֆասելը կոնգրեսին:— Արտաքին քաղաքական գործողությունները ընդունել են նոր չափանիշներ՝ գաղափարախոսական և հոգեբանական... կապի ժամանակակից միջոցների ու տեխնիկայի օգտագործմամբ այժմ հնարավոր է դարձել շոշափելի, եթե ոչ վճռական ազդեցություն գործել այս կամ այն պետության կառավարության վրա»:

ԱՄՆ-ի գաղափարական էքսպանսիան, որի հիմքը հակակոմունիզմն է, արտացոլվում է ինչպես արտաքին քաղաքական ապարատի նոր օղակների ստեղծման, այնպես էլ ամերիկյան կառավարական՝ միջազգային ասպարեզ ելնող կազմակերպությունների ու հիմնարկների պրոպագանդիստական ֆունկցիաների ուժեղացման մեջ: Կարևոր դեր են խաղում նաև մասնավոր և «կիսապաշտոնական» զանազան կազմակերպություններ, բարեգործական ֆոնդեր, լուսավորչական, կուլտուրական և այլ հիմնարկներ: ԱՄՆ-ի գաղափարական էքսպանսիայի ձևերն ու մեթոդները առավել հստակ են երևում օտարերկրյա պրոպագանդա մղող երեք հիմնական կենտրոնների՝ Ինֆորմացիոն գործակալության (ՅՈՒՍԻԱ), Պենտագոնի և ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի պրոպագանդիստական գործունեության օրինակով:

●

Արտաքին քաղաքական պրոպագանդիստական ծրագրի և գործողությունների մշակման ու կենսագործման անմիջական խնդիրը ԱՄՆ-ի պրեզիդենտը դրել է ՅՈՒՍԻԱ-ի վրա: Հենց այդ կազմակերպությանն է հանձնարարված կոորդինացնել Միացյալ Նահանգների պրոպագանդիստական մյուս հիմնարկությունների (բացի Պենտագոնից և ԿՀՎ-ից) պրոպագանդիստական գործունեությունը: ՅՈՒՍԻԱ-ն սերտորեն համագործակցում է նաև իմպերիալիստական մյուս պետությունների, մասնավորապես Անգլիայի և ԳՖՀ-ի պրոպագանդիստական ծառայությունների հետ:

Բնականաբար. 1953 թվականին ԱՄՆ-ի արտաքին քաղաքական մեխանիզմի մի շարք անջատ-անջատ ծառայություններից կազմված ՅՈՒՍԻԱ-ի հիմնադիր փաստաթղթերում ակնարկումներ չկան ոչ «հոգեբանական պատերազմի» և ոչ «պրոպագանդայի» մասին ընդհանրապես: Այդ հասկացությունները փոխարինված են ավելի «չեզոք» «ինֆորմացիա» հեղհեղուկ տերմինով: Դրանով իսկ ամերիկյան օրենսդիրները ձգտել են կարելվույն չափ սահմանազատվել դեռևս պրեզիդենտ Տրումենի ժամանակներում իրեն վարկաբեկած «հոգեբանական պատերազմի» մեթոդներից, քողարկել իրենց պրոպագանդայի դասակարգային էությունը, օտարերկրյա ժողովուրդների մեջ սերմանել այն պատրանքը, թե իբր ԱՄՆ-ը զբաղվում են անաչառ և օբյեկտիվ «ինֆորմացիայով»: Զուր չէր թմբկահարվում ՅՈՒՍԻԱ-ի «գլխավոր» խնդիրը. «ամբողջ աշխարհին ներկայացնել Ամերիկայի պատմությունը»:

Ամերիկյան արտաքին պրոպագանդայի տեսաբաններից և պրակտիկներից Պերուսը, որ երկար տարիներ աշխատել է ՅՈՒՍԻԱ-ում, նկատել է, թե «օտարերկրյա ժողովուրդների հետ շփման խնդիրը շատ ավելի պարզ կընդառնա», եթե ԱՄՆ-ի համապատասխան ծառայությունները հենվեն հասարակական կարծիքի վրա «ինչպես իրենց տանը, այնպես էլ արտասահմանում և լիովին դուրս նետեն «պրոպագանդա» բառը... Զուտ պրոֆեսիոնալ տեսակետից, ճշգրտեց Պերուսը, «այն սովորական և անտարակույս հոգեբանական պատերազմ է, ինչպես կանվաներ այդ գործողություններին մասնակցող յուրաքանչյուր ոք»:

Որ «հոգեբանական պատերազմի» պրոֆեսիոնալների նման հանձնարարականները հաշվի են առնվում, վկայում է այն փաստը, որ տարիներ շարունակ ՅՈՒՍԻԱ-ի պրոպագանդան խիկապես անվանվել է «արտաքին քաղաքական շփում», «միջազգային հաղորդակցության ուղիներ», «օտարերկրյա ինֆորմացիա» և այլն: Եվ միայն Ջ. Քենեդիի կառավարության օրոք սկսեցին նրա գործունեությունը բացե ի բաց «պրոպագանդա» անվանել: Իսկ ՅՈՒՍԻԱ-ի մասնակցությունը Վիետնամում ամերիկյան զինվորականության «հոգեբանական գործողություններին» համաշխարհային հասարակական կարծիքի առաջ բացահայտեց ԱՄՆ-ի Ինֆորմացիոն գործակալության անհրապույր դերը, գործակալություն, որն իրականում զբաղվում է կեղծ փաստեր հորինելով և ամեն տեսակ զրպարտություններ տարածելով, որպեսզի ժողովուրդների աչքում արդարացնի ԱՄՆ-ի հանցավոր ագրեսիան Հնդկաչինում:

ԱՄՆ-ի ռազմա-քաղաքական ստրատեգիայի շահերով թելադրված և ըստ էության սուվերեն պետությունների ներքին գործերին միջամտելու նույն նպատակներով են ղեկավարվում ՅՈՒՍԻԱ-ի պրոպագանդիստները «Ամերիկայի ձայն» գործակալության ռադիոկայանների, հեռուստատեսային հաղորդումների, ցուցահանդեսների, ինչպես և ժուռնալների, բրոշյուրների և այլ հրատարակու-

թյունների համար ստանդարտ նորություններ ու մեկնություններ թխելիս: Այդպիսի հանձնարարություններ են ստանում նաև ԱՄՆ-ից արտասահմանյան երկրներ մեկնող դասախոսները, դասատուները, տուրիստները և ուրիշներ:

Սակայն պրոպագանդիստական այն գործողությունները, որոնք կարող են ԱՄՆ-ի կառավարությանը բացահայտորեն վարկաբեկել համաշխարհային հասարակական կարծիքի առաջ, շատ հաճախ իրականացվում են ոչ թե ՅՈՒՍԻԱ-ի, այլ այնպիսի կազմակերպությունների ու կենտրոնների միջոցով, որոնք կրում են «Ազատություն» կամ «Ազատ Եվրոպա» մակնիշները: Առավել պատասխանատու գաղափարական դիվերսիաները հանձնարարվում են Կենտրոնական հետախուզական վարչությանը, որը սերտորեն կապված է ՅՈՒՍԻԱ-ի հետ:

Ինչպես գրում է ամերիկյան պատմաբան Կոմաջերը, «ՅՈՒՍԻԱ-ն արգելում է տարածել այնպիսի գրքեր, ուր քննադատվում է ամերիկյան արտաքին քաղաքականությունը: Միաժամանակ խելահաս փորձագետների ընտրած անվտանգ ֆիլմերում ու գրքերում փառաբանվում են Նիքսոնի ադմինիստրացիան և վիետնամական պատերազմը»: Հայտնի է այն խայտառակ դեպքը, երբ փորձ արվեց արտածման նպատակով նկարահանել մի գունավոր վավերագրական ֆիլմ, որտեղ մարտնչող Վիետնամի մարտիկներին ներկայացնում էին հագուստը փոխած ամերիկյան զինվորները, իսկ ռազմական գործողությունները բեմականացվում էին ճայթուկների, հրավառումների և հրարվեստի օգնությամբ»:

Ամենօրյա օպերատիվ նորությունները, որ հաղորդում են ՅՈՒՍԻԱ-ն և պրոպագանդայի ամերիկյան մյուս ծառայությունները գիտական շրջանառության մեջ ստացել են «թրխվածներ» կամ «կառավարվողներ («managed news») կոչումը: Այդ «արտադրությունը» քաջատեղյակ ժուռնալիստ-միջազգայնագետ Ջոնսոնը գրել է, որ դրանք «այն բոլոր ուղղակի և անուղղակի միջոցներն են, որպիսիք կառավարությունն օգտագործում է ինֆորմացիա ստեղծելու, դրան վերահսկելու, մանիպուլյացիա կատարելու և դրանց այնպիսի ձևեր տալու համար, որ ներգործեն իր իսկ երկրում կամ արտասահմանում»:

ԱՄՆ-ի ղեկավար շրջանների «ինֆորմացիոն քաղաքականության» կարծեցյալ օբյեկտիվության բացահայտ քննադատությամբ է տրենց **Ամեն ինչ, բացի ճշմարտությունից** գրքում հանդես եկան վաշինգտոնյան ժուռնալիստներ Ու. Մագհեֆին և Է. Նոլը: Բնութագրելով 60-ական թվականների ամերիկյան արտաքին քաղաքականությունը, գրքի հեղինակները գրել են. «Միացյալ Նահանգների կառավարությանը կեղծիքի մեջ մերկացրել են ինչպես իր քաղաքացիները, այնպես էլ ամբողջ աշխարհը: Խոսքը վերաբերում է ոչ թե մեղմասացություններին, չափազանցություններին, հմուտ խարդախումներին կամ ճարպիկ պարզեցումներին, որոնք կազմում են պրոպագանդայի արվեստը, այլև կանխամտածված և բացահայտ կեղծիքին: Վերջին երեք կառավարությունները միջազգային ճգնաժամերի ընթացքում գործել են ուղղակի խաբեության մեթոդով:

Ամերիկյան պրոպագանդան այժմ ավելի ու ավելի հաճախ է զինվում, այսպես կոչված, «ոչ պարտադիր համոզման» («soft sell») եղանակով՝ ի տարբերություն «ամեն մի համոզման» («hard sell») եղանակների, որպիսիք ԱՄՆ-ի գաղափարախոսները կիրառում էին «սառը պատերազմի» թեժ պահին, երբ ազդարարվել էր «սանձահարման», «ետմղման», «ազատագրման» բացահայտ ագրեսիվ արտաքին քաղաքական ստրատեգիան:

«Ոչ պարտադիր համոզման» բազմաթիվ տարբերակներ կան: Դրանք բոլորը, սակայն զերծ են կոպիտ արտահայտություններից և հայհոյանքից: Այդ եղանակն ամենից հաճախ կիրառվել և կիրառվում է սոցիալիստական համագործակցության երկրների դեմ գաղափարական դիվերսիաների ժամանակ: Նման եղանակներն ու մեթոդները նկատի ունեն սոցիալիստական համագործակցության երկրներում սոցիալիզմի դանդաղ «էրոզիան», նրա հիմքերի աստիճանական քայքայումը, այլ խոսքով, հանդիսանում են «կամուրջներ գցելու» անփառունակ ստրատեգիայի մի մասը:

Սոցիալիստական երկրների նկատմամբ համապատասխանորեն փոխվել է ԱՄՆ-ի պրոպագանդայի բովանդակությունը: Եթե առաջ այդ պրոպագանդան մեծ մասամբ նկատի էր ունենում սոցիալիզմի հակառակորդներին, շահագործողական դասակարգերի մնացորդներին և իրենց սոցիալապես տուժած համարող մարդկանց, ինչպես այդ երկրների բնակչության այն խավերը, որոնք ըստ ամերիկյան ստրատեգների, պետք է դրանց ներքուստ քայքայեին, ապա վերջին տարիներս կողմնորոշումը փոխվել է: Սկսեցին նկատի ունենալ սոցիալիզմի ժամանակ աճած բնակչության մյուս խավերն ու խմբերը, հույսը դնելով սոցիալիզմի «տրանսֆորմացիայի», փոփոխությունների» երկարատև պրոցեսի վրա: Ընդ որում, մնայուն նշանակություն է տրվում կապիտալիստական երկրների գիտա-տեխնիկական առաջադիմության նվաճումների ջատագովությանը, որը պետք է, իբր, բնակչության այդ խավերին հիասթափեցնի սոցիալիստական կարգերից, նրանց մղի դեպի «ինտեգրացում» Արևմուտքի երկրների հետ, մի խոսքով, «քայքայի» սոցիալիստական պետությունը: Իրենց նյութերն ու հաղորդումները կարելվույն չափ ճշմարտանման և համոզիչ դարձնելու համար ամերիկյան պրոպագանդիստները հաճությամբ ընդունում են «իսկական սոցիալիստական իդեալների» պաշտպանների կերպարանք, կեղծավորաբար դատափետելով «պահպանողականության», «աղանդավորության», «դոգմատիզմի» կողմնակիցներին և այլոց: Սոցիալիզմի երկրների հանդեպ իմպերիալիստական պրոպագանդայում հիմնական դերը միշտ հատկացվել է նացիոնալիստական ու շովինիստական զգացմունքներին, տրամադրությունների գրգռմանը՝ ի հակակշիռ սոցիալիստական, պրոլետարական ինտերնացիոնալիզմի զգացմունքների:

ՅՈՒՍԻԱ-ի գործունեությունը պլանավորվում է՝ հաշվի առնելով ԱՄՆ-ի արտաքին քաղաքական պրոպագանդայի ստրատեգիական ու տակտիկական խնդիրները: Եթե ստրատեգիական պրոպագանդան ուղղված է ԱՄՆ-ի արտաքին քաղաքական նպատակների՝ տվյալ էտապին համապատասխան, վերջնական նվաճումների համար բարենպաստ պայմաններ ստեղծելուն, ապա տակտիկական պրոպագանդան ջանքերը կենտրոնացնում է ընթացիկ քաղաքական խնդիրների լուծման վրա: ԱՄՆ-ի ստրատեգիական պրոպագանդան հասցեագրվում է համեմատաբար նեղ շրջանի մարդկանց, որոնք հնարավորություն ունեն ազդելու այս կամ այն երկրի հասարակական կարծիքի կամ կառավարության վրա: Դրանց համար, որպես կանոն, նախատեսվում են գրքեր, գիտական ժուռնալներ և այլ հրատարակություններ՝ զանազան հարցերի շատ թե քիչ խոր մեկնություններով: Հենց այդ նպատակներին են ծառայում կուլտուրական և կրթական փոխանակումները: ԱՄՆ-ի տակտիկական պրոպագանդայի հիմնական ֆունկցիան օպերատիվ միջամտությունն է ընթացիկ իրադարձություններին՝ կոնկրետ հարցերի մեկնաբանումը, թերթերի, ռադիոյի, հեռուստատեսության միջոցով ապահովելով առավել լայն լսարան:

ԱՄՆ-ի պրոպագանդիստական ծառայությունը հատուկ ուշադրություն է նվիրում պրոպագանդայի անհրաժեշտ օբյեկտին, ինչպես նաև դրա համար առավել հարմար կապի միջոցներին: Օրինակ, գրագիտության բարձր մակարդակ ունեցող պետություններում շեշտը դրվում է տպագիր հրատարակությունների լայն տարածման վրա: Իսկ գրագիտության ցածր մակարդակ ունեցող երկրներում՝ ռադիոյի և հեռուստատեսության, պրոպագանդիստական կինոժապավենների վրա:

Վաթսունական թվականներին «Արձագանք —1» արբանյակի արձակման առնչությամբ ամերիկյան մամուլում սկսեցին քննարկել տիեզերքի օգտագործման հնարավորությունները օտարերկրյա հեռուստադիտողներին և ռադիոլսողներին պրոպագանդիստական նյութեր հաղորդելու համար: Նկատի է առնվում արբանյակների ապահովումը կապի այնպիսի նորագույն էլեկտրոնային սարքավորմամբ, որը, մշակելով հզոր ազդանշանները, հնարավորություն կընձեռեր այդ հաղորդումները ռադիոընդունիչներով ու հեռուստացույցերով ընդունել ուղղակի արբանյակից՝ շրջանցելով ետհաղորդման կայանները: Այսպես, «Ջեներալ էլեկտրիկ»-ի հաշվումներով, 70-ական թվականների սկզբին ՅՈՒՍԻԱ-ն իր տրամադրության տակ կունենա կապի այնպիսի արբանյակների մի սիստեմ, որոնք ընդունակ լինեն կայուն ռադիո և հեռուստացուցային հաղորդումներ տալ այնպիսի հաճախականությամբ և տողերի այնպիսի ծավալով, որոնցով հագեցած են ընդունող հարմարանքները թե՛ Ամերիկայում, թե՛ Եվրոպայում:

1968 թվականի պրեզիդենտական ընտրություններից ոչ շատ առաջ ԱՄՆ-ում մի զեկուցում պատրաստվեց՝ **Ամերիկայի կերպարը արտասահմանում** թեմայով, որ կազմել էր հանրապետական կուսակցության կոորդինացիոն կոմիտեն: Զեկուցումն արձանագրում էր վերջին տարիներին այդ «կերպարի» վատացման մասին և պարունակում էր մի շարք հանձնարարականներ այն բարելավելու նպատակով կատարելագործելու «ինֆորմացիոն քաղաքականությունը»: Միացյալ Նահանգների հեղինակության անկման մեղքը հանրապետականները բարդեցին դեմոկրատների վրա, որոնք, ըստ հանրապետականների, իբր ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը մշակելիս և կենսագործելիս թերագնահատել են հոգեբանական միջոցների նշանակությունը:

Նույն թվականին հրապարակվեց **Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականությունը** գիտական ուսումնասիրությունը: Այդ ծավալուն մենագրության հեղինակ պրոֆեսոր Շ. Էպլտոնը, վերլուծելով ամերիկյան «ինֆորմացիոն քաղաքականության» բնույթն ու ուղղությունը, գրել է. «...Միացյալ Նահանգների պրոպագանդայի նպատակները կարող են փոխակերպվել՝ գոյություն ունեցող կառավարությանն աջակցելուց մինչև նրա տապալմանն աջակցելը կամ նրա քաղաքացիներին սեփական երկիրը լքելու կոչ անելը. մինչև հասարակական կարծիքի հրահրումը, որ բարեկամական երկրի կառավարությունը զոր-

քեր ուղարկի Վիետնամի դեմ պատերազմելու, կամ Արևելյան Եվրոպայի կոմունիստական պետություններին մղի ավելի անկախ լինել Սովետական Միությունից, աֆրիկյան նոր պետության տնտեսական զարգացմանը նըպաստելու դրական վերաբերմունքից մինչև կաստրոիզմին աջակցելը նվազագույնի հասցընելը Լատինական Ամերիկայի տարբեր մասերում»:

Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, Միացյալ Նահանգների արտաքին քաղաքական պրոպագանդայի հենց այդ քայքայիչ նպատակներն են համառորեն կենսագործում Ռ. Նիքսոնի կառավարության պրոպագանդիստական ծառայությունները: Փոխվել են կառավարությունները, իշխանության ղեկի մոտ դեմոկրատներին փոխարինել են հանրապետական ադմինիստրացիան, սակայն ԱՄՆ-ի «ինֆորմացիոն քաղաքականությունը» առաջվա նման ենթարկված է ամերիկյան իմպերիալիզմի գլոբալ ձգտումներին: Առաջվա պես ապարդյուն է այդ քաղաքականությունը, որը ջանում է ուրիշ ժողովուրդների մոտ ստեղծել ԱՄՆ-ի՝ «համաշխարհային լիդերի» պճնած կերպարի պատկերացումը: Այնուամենայնիվ, ամերիկյան իմպերիալիզմի գաղափարախոսների բոլոր «հոգեբանական ճիգերը» ցանկացած արդյունքը չեն տալիս:

1969 թվականի գարնանը ԱՄՆ-ի կոնգրեսը հրապարակեց ամերիկյան առաջավոր փորձագետների արտասահմանում ԱՄՆ-ի «կերպարի» ուսումնասիրության արդյունքները արտացոլող փաստաթղթերի ժողովածու, որը պարունակում է նաև դրա բարելավման հանձնարարականները: Ինչպես ԱՄՆ-ի սեփական պճնած կերպարին, այնպես էլ ԱՄՆ-ի կառավարող շրջանների քաղաքական դիրքորոշմանն ու շահերին համապատասխան, գաղափարական հակառակորդի կեղծված «կերպարի» ստեղծումը մշտապես եղել է ամերիկյան պրոպագանդայի կարևորագույն նկրտումը:

Կոնգրեսի **Միացյալ Նահանգների հրապարակային դիվանագիտության ապագան** խորագրի տակ ամփոփված փաստաթղթերն ու նյութերը պարունակում են բազմաթիվ փաստեր, որոնք վկայում են վերջին տարիներին ԱՄՆ-ի «կերպարի» վատթարացման, ամերիկյան արտաքին քաղաքական պրոպագանդայի ձախողումների մասին: Դատելով ըստ այդ տվյալների, արտասահմանյան պետություններում ԱՄՆ-ի մասին կարծիքը խիստ վատացավ այնպիսի իրադարձությունների պատճառով, ինչպես՝ ամերիկյան ագրեսիան Հնդկաչինում, ռասայական հուզումները և հարանուն հանցագործությունը Միացյալ Նահանգներում: «Միացյալ Նահանգների պատկերը օտարերկրացիների աչքում,— ասվում է կոնգրեսի փորձագետների եզրակացությունում,— տպավորվում է որպես բռնի. անօրինական, բռնապետական ու, նույնիսկ, ճիվաղի հասարակություն»:

ԱՄՆ-ի «կերպարի» վիճակի այդպիսի անբավարարության մեղքը կոնգրեսի փորձագետները բարդում են «մասսայական հաղորդակցության միջոցների» վրա, որոնք իբր թե հակված են «հակադրվելու»: Սակայն վերլուծման եզրակացություններում հնչում է նաև մի այլ, ավելի ռացիոնալ նրբերանգ: Մի շարք հանձնարարականների թվում նշվում է, որ արտաքին քաղաքականությունը «սկսվում է տանը», որ արտասահմանյան երկրներում ԱՄՆ-ի մասին մարդիկ դատում են ըստ նրանց գործերի և ոչ թե խոսքերի, որ «գործի պրոպագանդան խոսքի պրոպագանդայից շատ ավելի ուժեղ է, արտահայտիչ ու համոզիչ»: Կոնգրեսի փորձագետները միաժամանակ կոչ են անում՝ բազմապատկել ջանքերը արտաքին քաղաքական պրոպագանդայի նախապատրաստման ու կենսագործման բոլոր ասպարեզներում. հանգամանք, որը, նրանց կարծիքով, կբարելավի ԱՄՆ-ի «կերպարն» արտասահմանում, ինչպես նաև հնարավորին չափ բացասական պատկերացում կստեղծի սոցիալիզմի և սոցիալիստական համագործակցության երկրների մասին:

Ամերիկյան իմպերիալիզմի գաղափարական էքսպանսիայի նպատակների իրագործման բնագավառում մեծ է Պենտագոնի, այսինքն՝ ռազմական մինիստրության, երկրի ռազմաարդյունաբերական կոմպլեքսը կազմող ուժերի ձայնափողի դերը: Պենտագոնի պրոպագանդիստական ծրագրերին ներհատուկ է ոչ միայն ռազմական կամ միլիտարիստական բնույթը. դրանք ամբողջովին արտացոլում են այդ կոմպլեքսը կազմող ուժերի հայացքներն ու շահերը, իրենց գաղափարներով սնուցում այն:

Ինչպես ճիշտ ընդգծել է ամերիկյան հրապարակախոս Պերենտին իր **Հակակոմունիստական իմպուլս** աշխատությունում, ուր քննարկվում է Միացյալ Նահանգների հարաճուն ռազմականացման պրոցեսը, «...ոչ թե զինվորականներն են ընտրել հակակոմունիզմը, այլ հակակոմունիզմն է ստեղծել միլիտարիստական պետություն»: Վերջինս արտասահմանյան երեսուն երկրներում ներկայումս պահում է 429 խոշոր և 2.297 «մանր» ռազմական բազաներ, որոնք ամերիկյան հարկատուների վրա նստում են տարեկան 8 միլիարդ դոլար:

Պենտագոնի արտասահմանյան պրոպագանդիստական գործողությունները հետապնդում են երկակի նպատակ—բարոյական



անհրաժեշտ մակարդակի վրա պահել ամերիկյան զինվորներին ու սպաներին, միաժամանակ «մշակել» այն երկրների հասարակական կարծիքը, որտեղ գտնվում են այդ զորքերը:

Հենց Պենտագոնի տվյալներով, Միացյալ Նահանգների սահմաններից դուրս գտնվող ամերիկյան զորքերին սպասարկում է ԱՄՆ-ի զինված ուժերի ռադիո և հեռուստատեսային ծառայությունը, որն ունի ռադիոհաղորդման ավելի քան 350 և հեռուստատեսային 90 կայաններ: Այդ խոշորագույն ռադիո և հեռուստատեսային սիստեմը նախատեսված է ոչ միայն ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրության անձնակազմի «ուղեղները լվանալու» համար, այլև արտասահմանյան պետությունների բնակչության շրջանում պահպանելու «սառը պատերազմի» և ռազմական պսիխոզի մթնոլորտը:

Զինվորական թղթակիցների հատուկ խըմբեր զբաղված են կինո և հեռուստատեսային ժապավենների պատրաստմամբ, որոնց թեմատիկան, որպես կանոն, հակակոմունիզմն է, միլիտարիզմի և ամերիկյան ապրելակերպի մյուս «բարիքների» փառաբանումը: Միայն 1968 թվականին Պենտագոնի նկարահանող խմբերը, օրինակ, 118 կինոֆիլմ են բերել Վիետնամից: Դրանցից, սակայն, և ոչ մեկը օբյեկտիվորեն լուսաբանելու փորձ չի արել: Ֆիլմերի բոլոր թեմաներն ըստ Մերիլենդի համալսարանի հետազոտող-միջազգայնագետ Դ. Շիրերի վկայության, իրենցից ներկայացնում են Հնդկաչինում ամերիկյան զինվորների ու սպաների, իբր «ազնիվ առաքելության» ցինիկ և կեղծ պրոպագանդա:

Պենտագոնը թողարկում է նաև այնպիսի կինոժապավեններ, որոնք առաջին հայացքից ընդհանուր ոչինչ չունեն ռազմական գործերի հետ: Կոմունիզմի նկատմամբ դիտողների հոգում կույր ատելություն արթնացնելու կոչված ֆիլմերից է, օրինակ, **Ազատ ժողովուրդը,** որի սցենարը գրված է չարանենգ հակակոմունիզմի ոգով, և սոցիալիստական երկրների կյանքի ցինիկ զրպարտություն է: Այդպիսիք են նաև **Ընտրությունը կատարված է, Ճանապարհ դեպի աղբյուրը** և թխած այլ ֆիլմեր:

Պենտագոնի ռազմա-պրոպագանդիստական ծառայությունները ոչ միայն սեփական կինոժապավեններ են ստեղծում, այլև օգնում են այն մասնավոր կոմպանիաներին, որոնց ֆիլմերը հետաքրքրություն են ներկայացնում պաշտպանության մինիստրության համար: 1969 թվականի ամռանը կոնգրեսմեն Ռոզենտալը հրապարակավ դատապարտեց Պենտագոնի աջակցությունը դերասան Ջ. Ուեյնին և նրա կոմպանիային՝ ուլտրամիլիտարիստական **Կանաչ բերետներ** ֆիլմը նկարահանելիս, որը նվիրված է Վիետնամում ԱՄՆ-ի հատուկ զորքերի «սխրագործություններին»: «Ֆիլմի բովանդակության հիմքում ընկած՝ վիետնամական պատերազմի ռոմանտիկացումն ու փառաբանումը,— հայտարարել է Ռոզենտալը,— լուրջ խնդիրներ են հարուցում ուղղակի պրոպագանդիստական նպատակներով հարկատուների միջոցների օգտագործման ասպարեզում պաշտպանության մինիստրության դերի վերաբերյալ: Հոլիվուդի և Պենտագոնի դաշինքը, ասես, ցույց տվեց այդ երկու հիմնարկություններին բնորոշ վատթարագույնը:

Պենտագոնի ռադիո-հեռուստատեսային ծառայությանն անվճար տրվում են ամերիկյան մասնավոր Բի-բի-էս, Էն-բի-սի, Էյ-բի-սի կորպորացիաների արտադրանքները: Պենտագոնն օգտվում է նաև ՅՈՒՍԻԱ-ին պատկանող «Ամերիկայի ձայն» ռադիոկայանից: Հասարակայնության հետ կապի վարչության՝ Պենտագոնի ենթակայության ամսագրային և գրքի բաժինները հրատարակում են հատուկ ռազմական և ռազմա-պրոպագանդիստական գրականություն: ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրության ինֆորմացիայի բաժինը կազմակերպում է պրես-կոնֆերանսներ, թողարկում և տարածում է ավելի քան 125 անուն բրոշյուրներ, հանդեսներ, գրքեր, թերթեր՝ մոտ 10 միլիոն տպաքանակով:

Ամերիկյան թերթերի ու ժուռնալների՝ Պենտագոնի գործունեությունը վերջինիս համար «բարենպաստ» լուսաբանող «ռեպորտյորներին» խրախուսելու նպատակով պատկառելի հոնորարներով հրավիրում են նրանց աշխատակցելու ռազմական ժուռնալներին: Մինչդեռ այն ժուռնալիստները, որոնք աշխատում են իրադարձությունները, մասնավորապես Վիետնամի պատերազմը, օբյեկտիվ լուսաբանել, ենթարկվում են Պենտագոնի հատուկ «անվտանգության ծառայության» հսկողությանը: Նմանօրինակ միջոցներով Պենտագոնի հատուկ ծառայության գործադրած սպառնալիքն ավելի ու ավելի հաճախ է մղում մասսայական ինֆորմացիայի քաղաքացիական միջոցներին՝ դիմելու անմիջականորեն ռազմական գերատեսչությունների կամ դրան մոտ կանգնած «ուլտրահայրենասերների» համբավ ունեցող ժուռնալիստների տեղեկություններին:

Պենտագոնի հատուկ ծառայությունների ակտիվ գաղափարական և հոգեբանական մշակմանն է ենթարկվում արտասահմանյան պետությունների երիտասարդ սերունդը: Երիտասարդության մշակումը կենսագործվում

է պաշտպանության մինիստրության, այսպես կոչված, «դպրոցական ծրագրի» միջոցով, որը կազմվեց երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից շատ չանցած: Ներկայումս Պենտագոնի «դպրոցական ծրագիրը» տարածված է երեք մայրցամաքների 28 երկրներում, որտեղ մինիստրության նշանակած ավելի քան 8 հազար դասատուներ ուսուցանում են ամերիկյան զինծառայողներին, ինչպես և տեղական բնակչության ավելի քան մեկ միլիոն երեխաների:

Պենտագոնյան պրոպագանդայի վնասակարությունն ու վտանգավորությունը բազմիցս նշել է Ու. Ֆուլբրայտը, որի ելույթները լայն արձագանք են գտել ԱՄՆ-ում և արտասահմանում: Այդ՝ «պետության մեջ պետություն» վտանգավոր ազդեցության մասին ավելի ու ավելի բացահայտ են խոսում ամերիկյան հասարակական-քաղաքական և ակադեմիական շրջաններում: 1969 թվականի մարտին Վաշինգտոնում կայացավ մի կոնֆերանս, որը քննարկեց ԱՄՆ-ի ազգային նպատակների և ռազմական բյուջեի հարցը: Կոնֆերանսին, որը խիստ քննադատեց Պենտագոնի գործունեությունը, մասնակցում էին կոնգրեսի 45 անդամներ և 19 գիտնականներ ու մասնագետներ: Սակայն ռազմական գերատեսչության ղեկավարները ուշադրություն չեն դարձնում Միացյալ Նահանգների հասարակայնության քննադատությանը: Չարաշահելով «կոմունիստական սպառնալիքը», արդարացնելով շովինիզմն ու խավարամոլությունը, Պենտագոնի զինվորականությունը և ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը ամերիկյան ապրելակերպը հարմարեցնում են «կայազորային պետության» շաբլոնին:

ԱՄՆ-ի գաղափարական էքսպանսիայի իրագործման կարևորագույն միջոց է պետական դեպարտամենտի ճյուղավորված ապարատը, որը վերջին տարիներին առավել լայնորեն է օգտագործվում արտաքին քաղաքական պրոպագանդայի ասպարեզում:

ԱՄՆ-ի պետական քարտուղարի և արտաքին քաղաքականության մյուս ղեկավարների ճառերն ու հայտարարությունները, ինչպես և իրադարձությունների առիթներով օտարերկրյա պետությունների ղեկավարներին հղվող ուղերձների նպատակն է անհրաժեշտ ազդեցություն թողնել այդ պետությունների հասարակական կարծիքի վրա: Պետական դեպարտամենտի սիստեմատիկաբար կազմակերպած պրես-կոնֆերանսներում ԱՄՆ-ի դիվանագիտական գերատեսչության պատասխանատու աստիճանավորները թղթակիցներին տեղեկացնում են ամերիկյան արտաքին քաղաքականության տարբեր ասպեկտներին: Այդ պրես-կոնֆերանսներում թղթակիցներին հաղորդվող ինֆորմացիաների բովանդակությունն ու որակը հաճախ բավական խիստ քննադատվում են հենց ԱՄՆ-ում: Այսպես, պրեզիդենտի նախկին հատուկ օգնական Ծլեզինգերի վկայությամբ, Վաշինգտոնի թղթակիցները հաճախ զգում են, որ դեպարտամենտը «փորձում է նրանց օգտագործել որպես հոգեբանական պատերազմի գործիք»:

Հատկանշական է, որ պետական դեպարտամենտի գաղափարական կամ «հոգեբանական» գործողությունները ամենևին չեն հանգում սոսկ պրես-կոնֆերանսների կամ «բրիֆինգների»՝ հրահանգչական խորհրդակցությունների նրա պատասխանատու աշխատողների համար: Դրանք արտահայտվում են նաև այն պրակտիկ գործողություններում, որոնք, որպես կանոն, ՅՈՒՍԻԱ-ի հետ համատեղ կազմակերպվում են կուլտուրական ու կրթական փոխանակությունների ասպարեզում: Նման փոխանակությունները, լինելով արտաքին քաղաքական պրոպագանդայի կարևոր ձև, ծառայել և ծառայում են Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականության գլոբալ նպատակներին: «Կուլտուրան հանուն կուլտուրայի չի կարող տեղ գտնել Միացյալ Նահանգների... ինֆորմացիոն ծրագրում... կուլտուրական փոխանակությունները պրոպագանդային գործիքներից են»,— ուղղակի ասված էր պետական դեպարտամենտի բյուջեն տնօրինող ներկայացուցիչների պալատի՝ հատկացումների ենթահանձնաժողովի զեկուցումներից մեկում:

Կապերն Արևելյան Եվրոպայի երկրների հետ «պարգև» չեն կոմունիստական կառավարությանը, ընդգծել է ՄԱԿ-ի ԱՄՆ-ի նախկին ներկայացուցիչ և դեմոկրատական կուսակցությունից Նյու-Յորքի նահանգապետի թեկնածու Գոլդբերգը: Նրա կարծիքով դրանք միջոց են, որոնց օգնությամբ Արևելյան Եվրոպան առնչվում է Արևմուտքի գաղափարներին և նվազեցնում կախումը Սովետական Միությունից: Ուստի, բնավ պատահական չէր, որ Նիքսոնի ադմինիստրացիան կուլտուրական և կրթական փոխանակությունների գծով պետական քարտուղարի օգնականի պոստում նշանակեց Ռիչարդսոնին— «Ազատ Եվրոպայի» հակակոմունիստական և հակասովետական պրոպագանդայի հիմնական կենտրոններից մեկի նախկին ղեկավարին:

Աշխարհի ազատասեր ժողովուրդների դեմ ԱՄՆ-ի իմպերիալիզմի վատ քողարկված քաղաքական դիվերսիա է նաև ամերիկյան տխրահռչակ օգնությունը օտարերկրյա պետություններին, որ կազմակերպում է պետական դեպարտամենտի հատուկ վարչությունը՝ Միջազգային զարգացման գործակալությունը (ՄԶԳ): Ամերիկյան օգնության գաղափարական ու քաղաքական իմաստը բացահայտեց, մասնավորապես, պրոֆ. Լ. Բլեկը, որը երկար տարիներ ծառայել է պետական դեպարտամենտում, ՄԶԳ-ում, առևտրի մինիստրությունում և ԿՀՎ-ում: Այդ օգնության ամենագլխավոր ֆունկցիան նա ուղղակի անվանեց «կոմունիզմի տարածման դիմակայում»: Հենց այդ նկատառումներն էլ, գրել է Բլեկը իր **«Օտարերկրյա պետություններին օգնելու ստրատեգիան»** աշխատությունում, դերակշռող են այս կամ այն պետությանն «Օգնություն ցույց տալու մասին որոշումներ ընդունելիս»:

ՄԶԳ-ի գծով փոխանակման ծրագրերին համապատասխան՝ զարգացող երկրներից Միացյալ Նահանգներ ժամանող մասնագետներին ո՛չ միայն և ո՛չ այնքան տեխնիկական գիտելիքներ են ուսուցանում, որքան նրանց ներշնչում են կուրորեն երկրպագել ամերիկյան ապրելակերպի «արժեքներին»: Ամերիկյան մասնագետներն, իրենց հերթին, օտար երկրներ մեկնելուց առաջ հատուկ կուրսեր են անցնում, հրահանգավորվում ԱՄՆ-ի դեպարտամենտի գաղափարական և քաղաքական դիրքորոշումներին համապատասխան:

Զարգացող երկրներում գաղափարական էքսպանսիայի անմիջական գործիք է նաև «Աշխարհի կորպուսը», որը վարչականորեն մտնում է պետական դեպարտամենտի սիստեմի մեջ: Փորձը ցույց է տալիս, որ կորպուսի՝ այդ երկրներում հաստատված «կամավորականների» գործունեությունը դրանց կառավարությունների կողմից, հաճախ գնահատվում է որպես «քայքայիչ» և, հետևաբար, «փոխադարձ ըմբռնումն ամրապնդելու» հետ ոչ մի առնչություն չունեցող քայլ, որի մասին ազդարարվում է այդ կազմակերպության կանոնադրությունում:

Ընդհարել մեկը մյուսին, ջլատել իմպերիալիզմի հակառակորդների շարքերը, գժտություն մտցնել սոցիալիստական երկրների փոխհարաբերություններում, թուլացնել աշխատավորների գիտակցությունը, արատավորել սոցիալիզմը— այսպիսին է ԱՄՆ-ի գաղափարական էքսպանսիայի հիմնական նպատակը, որ իրագործում են ամերիկյան արտաքին քաղաքական պրոպագանդայի ստրատեգներն ու տակտիկները: Բուրժուական պրոպագանդան, բորբոքելով ազգայնական ու շովինիստական տրամադրություններ, անպարարելով ամեն տեսակ հակասոցիալիստական գաղափարներ ու հոսանքներ, ուռճացնելով իր գաղափարական հակառակորդների ամենաչնչին թերություններն ու վրիպումները, փորձում է պառակտել խաղաղության ու սոցիալիզմի համար ժողովուրդների պայքարի միասնական ճակատը:

Չի կարելի թերագնահատել իմպերիալիստական պրոպագանդայի ճիգերը: «Հաղթանակ տանել իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում,— ընդգծել է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— հասնել մեր շարժման և հակաիմպերիալիստական բոլոր ուժերի միասնության անհնար է՝ առանց ամենաակտիվ հարձակման բուրժուական գաղափարախոսության դեմ»: Հենց այդպիսի դասակարգային դիրք են գրավում սովետական կոմունիստները, որոնք անհաշտ պայքար են մղում աշխատավորներին թշնամի գաղափարախոսությունների դեմ, մերկացնում շահագործողների հակաժողովրդական, ռեակցիոն գաղափարներն ու բարոյականությունը:

Ուժերի հարաբերակցությունն աշխարհում անշեղ փոփոխվում է հօգուտ սոցիալիզմի: Որքան էլ հնարամտորեն փորձեն գործել կապիտալիզմի գաղափարախոսները, նրանք անկարող են շրջել պատմության ընթացքը:

Անկասելի է կոմունիստական վեհ ու պայծառ գաղափարների ազդեցությունը աշխարհի հասարակական-քաղաքական զարգացման վրա:

«Международная жизнь»,
№ 1, 1971 год.



ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ
ամբիոն

## ՀԱՅ ՌԱԶՄԻԿՆԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆԸ

### (1941 թ. օգոստոս — 1944 թ. դեկտեմբեր)

Սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի տարեգրության փայլուն էջերից է Լենինգրադի իննհարյուրօրյա հերոսամարտը: Լինելով երկրի քաղաքական, տնտեսական, գիտության, արվեստի խոշոր կենտրոններից մեկը, Լենինգրադը հիտլերականների զավթողական պլաններում առանձնահատուկ տեղ էր գրավում: Արդեն 1941 թ. օգոստոսին ֆաշիստական հրամանատարությունը Լենինգրադի դեմ նետեց ռազմական մեծ ուժեր, նպատակ ուներ արագ գրավել քաղաքը, իսկ այնուհետև «Հյուսիս» և «Կենտրոն» բանակային խմբավորումների միացյալ ուժերով հարվածել Մոսկվային և, ինչպես նախատեսված էր «բարբարոսի» պլանով, արագ պարտության մատնել Սովետական Միությանը:

Կոմունիստական կուսակցության կոչով Լենինգրադի բնակչությունը, բանակի հետ միասին, ոտքի ելավ պաշտպանելու հարազատ քաղաքը: Կարճ ժամանակում քաղաքը օղակվեց պաշտպանական հզոր ամրություններով, փողոցներում բարձրացան բարիկադներ: Կուսակցության Լենինգրադի քաղաքային ու մարզային կոմիտեների ղեկավարությամբ, ստեղծվեցին տասը աշխարհազորային դիվիզիա, 14 հրետանային գումարտակ, 7 պարտիզանական գունդ և այլ ստորաբաժանումներ (տե՛ս «Вопросы истории КПСС», М., 1959, стр. 104):

Լենինգրադի պաշտպանության ծանր օրերին, ռուս ժողովրդի հետ ուս-ուսի, հերոսաբար մարտնչում էին ուկրաինացին ու բելոռուսը, ղազախն ու ուզբեկը, լատիշն ու հայը, վրացին ու ադրբեջանցին և այլ ազգությունների ներկայացուցիչներ:

Հայ ժողովրդի զավակները հեղափոխության օրրանի համար կռվելը համարում էին փառքի ու պատվի գործ: Ահա ինչ են գրել նրանք իրենց հարազատներին. «Թանկագին ծնողներ, քույրեր, եղբայրներ, կանայք, մենք Լենինգրադի ճակատում գտնվող հայ կարմիրբանակայիններս ու հրամանատարներս, որ աճել ու սնվել ենք ծաղկուն Հայաստանում, գտնվելով Հայրենիքի համար պատերազմող բանակի շարքերում, եղբայրական ռուս մեծ ազգի և մնացած ազգերի հետ միասին խոսք ենք տալիս ձեզ ավելի ուժեղացնել մեր պայքարը մարդկային կերպարանքը կորցրած ֆաշիստական բանակի դեմ ու բնաջնջել նրան երկրի երեսից: Թանկագին ծնողներ, քույրեր, եղբայրներ ու կանայք, մենք խոստանում ենք անշեղորեն կատարել ձեր բոլոր ցուցումները և լինել հավատարիմ սոցիալիստական ժողովրդին, որը շուտով կտեսնի իր փողոցներում մեր ժողովրդի սքանչելի հաղթանակի օրը»[1]: Նամակը ստորագրել էին 14 հայ ռազմիկներ:

Հայ մարտիկները պատվով ու փառքով կատարեցին իրենց խոստումը: Նրանք բարձր գիտակցությամբ ու նվիրվածությամբ էին մարտնչում թշնամու դեմ: Համառ մարտերի ընթացքում, երբ կատաղի կռիվ էր ընթանում յուրաքանչյուր դոտի, դզոտի ու տան համար, բազմաթիվ հայ ռազմիկներ դրսևորեցին հերոսության, անձնազոհության և համարձակության մասսայական օրինակներ: 1941 թվականի սեպտեմբերի 7—10-ը ուժեղ մարտեր ծավալվեցին Ռոպշայից հարավ-արևելք Մեծ Գորկա և Փոքր Գորկա բնակավայրերի շրջանում: Այստեղ պաշտպանական մարտեր էին մղում 118-րդ հրաձգային դիվիզիան, որը հերոսաբար ետ էր մղում թշնամու գերակշռող ուժերի անընդհատ գրոհները:

1 *ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի Հայրենական պատերազմի պատմության կաբինետի արխիվ, ֆ. 265, գ. 1, թ. 5:*



Անհաջողություններից զազազած հակառակորդը գրոհեց նույն դիվիզիայի 463-րդ գնդի շտաբի վրա: Գնդի հրամանատար, կապիտան Ազովցևը շտաբը պաշտպանող հատուկ ստորաբաժանումից առանձնացրեց երկու ջոկատ ու պարետային դասակի հրամանատար, լեյտենանտ Գուրգեն Գրիգորյանի գլխավորությամբ ուղարկեց թշնամու ուժերի դեմ: Շտաբից ոչ հեռու ջոկատը դիրքավորվեց և ուժեղ կրակ բացեց հարձակվող հիտլերականների վրա: Թշնամու 300 հոգուց բաղկացած ստորաբաժանումը երեք ժամ անընդհատ գրոհում էր, բայց չէր կարողանում կոտրել սովետական ռազմիկների փոքրաթիվ ջոկատի դիմադրությունը: Գրիգորյանը ձեռքի գնդացրով անձամբ ոչնչացրեց հիսուն հիտլերական[1]: Ծանր կորուստների գնով հակառակորդն ի վերջո ներխուժեց գնդի շտաբի շենքը: Դռների մոտ Գրիգորյանը սրախողխող արեց երկու հիտլերականի և ձեռքի գնդացրից ուժեղ կրակ բացեց շենքը ներխուժած ֆաշիստների վրա: Այդ ժամանակ էլ թշնամու գնդակից խոցված զոհվեց կոմերիտական լեյտենանտ Գուրգեն Գրիգորյանը: Այս սխրագործության համար նա հետմահու պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով[2]:

Մարտերի ընթացքում անձնազոհաբար կռվեցին աշխարհազորային հայ ռազմիկները: Մեծ հեղինակություն էր վայելում ճանաչված մարտիկ, դասակի հրամանատար Աշոտ Մուսայանը: Նրա մարտական սխրագործությունների մասին գրեց «На защиту Родины» թերթը. «Լեյտենանտ Մուսայանի դասակի մարտիկները— լենինգրադցի էլեկտրիկներ, փականագործներ, ուսանողներ, ծառայողներ են: Մի քանի օրվա ընթացքում նրանք ամուր կապվեցին իրենց հրամանատարի՝ եղբայրական արևոտ Հայաստանի որդու հետ: Նրանք հավատում են նրան և պատրաստ են նրա հետ միասին մարտի գնալ ամենադժվար ու վտանգավոր տեղամասը»:

Ծանր թնդանոթներով Լենինգրադը ռմբակոծող թշնամու դեմ մղված պայքարում բազմաթիվ մարտական սխրագործություններ կատարեցին 47-րդ կորպուսային հրետանու գնդի հայ ռազմիկները: Գնդում մեծ հեղինակություն էին վայելում հատկապես հրետանու հաշվարկի հրամանատարներ Մելիսակ Հովհաննիսյանը և Ռուբեն Եղիազարյանը: Հովհաննիսյանի հրետանու հաշվարկը երեք ժամ անընդհատ կրակ տեղաց թշնամու մարտկոցի վրա և նրան ստիպեց դադարեցնել քաղաքի ռմբակոծությունը: Ռուբեն Եղիազարյանի հրետանու հաշվարկի վրա թշնամին արձակեց 300 արկ, բայց չկարողացավ նրան ստիպել դադարեցնել կրակը[3]: Գնդում ծառայող հայ ռազմիկներից իրենց լավ դրսևորեցին նաև Յուլիկ Մետոյանը, Նավասարդ Հովհաննիսյանը, Պապիկ Ղազարյանը և Վարազդատ Ղազարյանը: Նրանք բոլորն էլ արժանացան կառավարական պարգևների[4]:

Լենինգրադյան ճակատամարտում աճեցին և հրամանատարական պատասխանատու պաշտոնների առաջ քաշվեցին տասնյակ հայ հրամանատարներ ու քաղաշխատողներ:

Լենինգրադի հերոսական պաշտպանության տարեգրության մեջ փառավոր էջ գրեց ՍՍՀՄ նավատորմի ծովակալ Հովհաննես Իսակովը: Լինելով հյուսիս-արևմտյան, իսկ այնուհետև Լենինգրադյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի տեղակալը, պատերազմի առաջին օրից մինչև 1941 թվականի սեպտեմբերի վերջը, նա ղեկավարում էր բալթյան ծովային թատերաբեմում տեղի ունեցող բոլոր ռազմական գործողությունները: Հ. Իսակովի անմիջական ղեկավարությամբ կատարվեց Կարմրադրոշ բալթյան նավատորմի գլխավոր բազայի նավերի տեղափոխումը Տալինից Լենինգրադ: Այդ օրերին նրան հաճախակի կարելի էր տեսնել Լենինգրադի նավամատույցներում, ռազմանավերի վրա, ծովային առափնյա հրետանավորների և պաշտպանական ամրություններում, ռազմանավերի թնդանոթները տեղադրող բանվորների շրջանում:

Մարտերի ժամանակ զորավարական ունակություններով փայլեց Լենինգրադի պաշտպանության առավել ակտիվ մասնակիցներից մեկը՝ 42-րդ բանակի ռազմական խորհրդի անդամ, գեներալ մայոր Բենիամին Գալստյանը: Լինելով հիանալի քաղաշխատող և հմուտ ռազմագետ, նա վաստակել էր «Պուլկովոյի բարձունքի Նախիմով» պատվավոր անունը և նվաճել զինվորների սերն ու համակրանքը: 1942 թվականի դեկտեմբերին Պուլկովոյի բարձունքում, արկի ուղղակի հարվածից, բլինդաժում, զոհվեց Բենիամին Գալստյանը: Նա թաղված է Լենինգրադի Ալեքսանդր-Նևսկի գերեզմանատան պանթեոնում: «Ընկեր, հանիր գլխարկդ: Այստեղ թաղված է հայ ժողովրդի նշանավոր զավակ, Լենինգրադի հերոսական պաշտպան, գեներալ-մայոր Բենիամին Գալստյանը»: Այսպես է գրված քաջարի զորավարի տապանաքարին:

Լենինգրադի մատույցներում թշնամու պաշտ-

1 *ՍՍՀՄ ՊՄԱ, ֆ. 344, ց. 5592, գ. 33, թթ. 271, 273, ֆ. 1323, ց. 1, գ. 20, թ. 64:*

2 *Տե՛ս նույն տեղը, ֆ. 33, ց. 682524, գ. 35, թթ. 27, 28:*

3 *ՍՍՀՄ ՊՄԱ, ֆ. XIV, Գվարդիական հրետ. գունդ, ց. 456578, գ. 2, ց. 45:*

4 *Տե՛ս նույն տեղը, ց. 270119, գ. 2, թթ. 3, 307, 319, 395:*

պանական ամրությունները ոչնչացնելու, նրա կենդանի ուժին ու տեխնիկային ծանր կորուստներ պատճառելու գործում մարտական փառք նվաճեց 18-րդ հրետանային դիվիզիայի 15-րդ բրիգադի հրամանատար, գնդապետ Սամվել Հարությունյանը: Լենինգրադյան ռազմաճակատում իրենց խիզախությամբ ու հնարամտությամբ աչքի ընկան հրետանու հրամանատարներ Սերգեյ Նարինյանը, Նիկոլայ Հովհաննիսյանը, Արտավազդ Սագոյանը, Գևորգ Բաղդասարյանը, Վռամ Հարությունյանը, Տիգրան Գյուլբուդաղյանը և շատ ուրիշներ:

Դաժան ու ծանր կռիվներում մարտական զենքի օգտագործման փայլուն օրինակներ ցույց տվին հայ տանկիստները, օդաչուները, ծովայինները, հրետանավորները, սակրավորները, հետախույզները, կապի աշխատողները, որոնք, օրեցօր բարձրացնելով ու կատարելագործելով ռազմական արվեստը, կարճ ժամանակում տիրապետեցին ռազմական բարդ տեխնիկային, դարձան իրենց գործի փորձված վարպետները:

Ռազմական տեխնիկայի տիրապետման ու հերոսական սխրանքի փայլուն օրինակ է սերժանտ Ալեքսանդր Խաչատրյանի քաջագործությունը: Նա մեն-մենակ մնալով թշնամու դոտի մոտ, խուճապի չմատնվեց, դիպուկ կրակով խփեց երկու տանկ ու ոչնչացրեց հիսուն հիտլերական[1]:

84-րդ առանձին տանկային բրիգադի Տ—26 տանկի հրամանատար Երվանդ Ավետիսյանը չհեռացավ արկի պայթյունից շարքից դուրս եկած տանկից և երեք օր շարունակ մնալով թշնամու կրակի տակ, վերանորոգեց այն, դուրս բերեց ռազմադաշտից, փրկելով Տ—50 տանկի վիրավորված անձնակազմին[2]:

ՇՉ—310 սուզանավի մարտական մասի հրամանատար Գևորգ Ծահինյանը արձակած առաջին տորպեդոյով խորտակեց թշնամու 10000 տոննա ջրատարողությամբ փոխադրանավը[3]:

«Հոկտեմբերյան հեղափոխություն» գծանավի զենիթային մարտկոցը, հրամանատար Հակոբ Հովակիմյան, 1941 թվականին խփեց թշնամու չորս ռմբակոծիչ: Հովակիմյանը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով[4]:

Լենինգրադի պաշտպանության օրերին մարտական բազմաթիվ փառապանծ գործեր կատարեցին հայ օդաչուներ Նելսոն Ստեփանյանը, Լազար Չափչախովը, Մամիկոն Դավթյանը, Նիկիտա Սաղաթելովը, Գեղամ Սողոմոնի Պետրոսյանը, Գեղամ Ենոքի Պետրոսյանը, Սիմոն Ափինյանը, Նիկոլայ Սարգսյանը, Ալեքսանդր Խաչատուրովը, Նալբանդյանը, նավատորմայիններ Վահան Ակոպովը, Մուշեղ Առաջանյանը, Դավիթ Մկրտչյանը և ուրիշներ:

Էսկադրիլիան, որի հրամանատարն էր Չափչախովը, կատարեց 1800 մարտական թռիչք, ոչնչացրեց 60 ինքնաթիռ: Անձամբ ինքը կատարեց 268 մարտական թռիչք, օդային մարտում ոչնչացրեց 11 ինքնաթիռ, իսկ 19-ը՝ խմբակային մարտում:

Չափչախովը զոհվեց 1942 թվականի ապրիլի 18-ին մարտական պարտականությունների կատարման ժամանակ: Ետմահու Լազար Չափչախովին շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում[5]:

Բալթյան ծովային ռազմաբեմում թշնամու համար ահ ու սարսափ էր Նելսոն Ստեփանյանի անունը: Նա իր գրոհիչ ինքնաթիռով Լենինգրադի մատույցներում ռմբային ծանր հարվածներ հասցրեց թշնամու տանկային ու մոտոմեխանիզացված զորամասերին: Խորտակեց թշնամու մի շարք փոխադրանավեր, ոչնչացրեց բազմաթիվ տանկեր, թնդանոթներ, գնդացիրներ, ավտոմեքենաներ, էշելոններ և այլն:

Մարտական առաջադրանքները փայլուն կատարելու համար մինչև 1942 թ. վերջը նա պարգևատրվեց երկու կարմիր դրոշի, Լենինի շքանշաններով, ապա նրան շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Լենինգրադի ռազմաճակատում շատերն էին ճանաչում գիշերային թռիչքի հմուտ օդաչու Գեղամ Ենոքի Պետրոսյանին, որը 1942 թ. հունվար-փետրվար ամիսներին Մգայի, Տոսնոյի, Գատչինայի, Կրասնի Բորի շրջաններում ոչնչացրեց թշնամու բազմաթիվ պաշտպանական ամրություններ ու կրակակետեր: Նա կատարեց 119 մարտական թռիչք, որից 92-ը՝ գիշերը, ապա Լենինգրադյան ռազմաճակատի օդային ուժերի շտաբի 10 հատուկ առաջադրանքը և ստացավ «գերազանց» գնահատական: Գ. Պետրոսյանը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով[6]:

Ծովային ռմբակոծիչ ավիացիայի օդաչու Նիկիտա Սառաթելովն իր ականակիր ինքնաթիռով ականապատեց Տալինի և Հելսինկիի ծովային մատույցները, խորտակեց թշնամու մեկ փոխադրանավ ու մեկ տանկեր՝ յուրաքանչյուրը 6000—7000 տ. ջրատարողությամբ, ջրասույզ արեց «Ռաումա» լողացող փարոսը՝ 15000 տ. ջրատարողությամբ: Նա պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով:

Պաշարման ծանր օրերին, Լենինգրադում մեծ աշխատանք կատարեցին հայ գիտնականները, ինժեներները, բժիշկները, արվեստագետները:

ՍՍՀՄ էլեկտրաարդյունաբերության ժողկոմի տեղակալ Ոսկան Ոսկանյանը չհեռացավ պաշարված քաղաքից, և իր ձեռքը վերցնելով էլեկտրաարդյունաբերության ղեկավարությունը, կազմակերպեց արտադրության անհրաժեշտ տեսակների մատակարարումը ռազմաճակատին:

Քիմիա-տեխնոլոգիական ինստիտուտի դոցենտ Ա. Ի. Տատուսյանցի կողմից արկերի լիցքավորման տեխնոլոգիայի պրոցեսի կատարելագործման շնորհիվ հարյուրավոր տոննա խիստ կարիք զգացվող նյութերի խնայողություն կատարվեց: Տեխնոլոգիական նոր պրոցեսին տիրապետելու համար Ա. Տատուսյանցը սովորեցրեց 100 մարդու:

Առողջապահության բնագավառում հսկայական աշխատանք կատարեցին Լենինգրադի գլխավոր ներոպաթոլոգ, պրոֆեսոր Ստեփան Կարճիկյանը և լենինգրադյան ռազմաճակատի բուժաշխատողների վերաորակավորման կուրսերի պետ, կորպուսային բժիշկ Արտուր Կյուշարյանցը:

Լենինգրադի հերոս պաշտպանների շարքերում էին մեծանուն արվեստագետ Վահրամ Փափազյանը և շնորհալի դերասանուհի Արփիկ Գաբրիելյանը: Նրանց հաճախ կարելի էր տեսնել գործարաններում, նավերի վրա, կարմիր բանակի առանձին ստորաբաժանումներում, որտեղ նրանք հայրենասիրական թեմաներով ելույթներ էին ունենում բանվորների, զինվորների ու նավաստիների համար:

Հերոս քաղաքի ակտիվ պաշտպաններից էր ականավոր գիտնական, Էրմիտաժի դիրեկտոր, ակադեմիկոս Հովսեփ Օրբելին, որի անմիջական ղեկավարությամբ կատարվեց Էրմիտաժի թանկարժեք ցուցանմուշների տեղափոխումը երկրի խորքը: Չնայած նա խիստ զբաղված էր, բայց հաճախակի լինում էր «Հոկտեմբերյան հեղափոխություն», «Կիրով», «Պոլյարնայա զվեզդա», «Ավրորա» և շատ ուրիշ խոշոր նավերում, կարդում դասախոսություններ ու զեկուցումներ:

1943 թվականի հունվարի 12-ին սկսվեց Լենինգրադի բլոկադայի ճեղքման ահեղ ճակատամարտը: Լենինգրադյան և Վոլխովյան ռազմաճակատի զորքերը, համառ մարտերով հաղթահարելով թշնամու պաշտպանողական ամրությունները, մոտենում էին միմյանց:

Հարձակման անցած զորամասերի առջևից էր ընթանում 123-րդ առանձին բրիգադի առաջին առանձին գումարտակը: Մարտի վճռական պահին վիրավորվեց գումարտակի հրամանատարը: Քաղաքական գծով նրա տեղակալ, մայոր Հայկ Մելքոնյանը առանց վարանելու հրամանատարությունը վերցրեց իր ձեռքը և շարունակեց հարձակումը: Համառ ու արյունալի մարտեր սկսվեցին № 1 բանվորական ավանի համար: Թշնամին, կառչած ցեմենտ-բետոնե պաշտպանական ամրություններից, ականանետային ու գնդացրային կրակով թույլ չէր տալիս գումարտակին մոտենալու ավանին: Հաջորդ օրը հարձակումը վերսկսվեց: Գումարտակը գրոհի տարավ Հ. Մելքոնյանը: Թշնամու դզոտի ուժեղ կրակը հարձակվող ռազմիկների շղթաները գամեց գետնին: Պահը ճակատագրական էր: Մելքոնյանը, առանց ժամանակ կորցնելու, սողալով մոտեցավ թշնամու կրակակետին և նռնակներով լռեցրեց այն: Գումարտակը նորից գրոհի նետվեց: Սկսվեց սվինամարտը: Ռազմաճակատային թերթի թղթակիցներ մայոր Միխայլովը և կապիտան Վասիլևսկին **Ճեղքում** գրքում այսպես են նկարագրել երկու ռազմաճակատների հանդիպման պահը. «Մելքոնյանը վազում է դեպի ավան, նա այնքան մարտիկներ չուներ, որքան խիզախություն: Ֆրիցները չդիմացան, խուճապահար վազեցին դեպի անտառ, բայց մերոնք հասան նրանց և ոչնչացրին:

Գերմանացիները տանուլ էին տվել: Մելքոնյանը և կապավոր Անիսիմովը դանդաղաքայլ անտառ էին գնում, նրանք հանդիպեցին սպիտակ խալաթավոր դահուկավորների: Մերոնք էին: Մի քանի րոպե անց Մելքոնյանը երջանկացած գրկում է մայոր Մելնիկովին:

Պաշարումը ճեղքումից հետո ազատագրված շրջանում սկսվեցին երկաթգծի և Նևա գետի վրա կամրջի կառուցման աշխատանքները, որը ղեկավարում էր կամրջաշինարարական 3-րդ շարասյան գլխավոր ինժեներ Նիկոլայ Նարինյանը: Նա այդ շատ կարևոր ու պատասխանատու առաջադրանքը կատարեց բարձր որակով և ժամանակին հանձնեց շահագործման: Հայրենիքին մատուցած մեծ ծառայությունների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1943 թ. նոյեմբերի 5-ի հրամանագրով Նարինյանին շնորհվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: 1943 թ. փետրվարի 7-ին նոր կառուցված երկաթուղով Լենինգրադ ժամանեց պարենամթերքով բեռնված առաջին գնացքը: Այսպիսով, ավարտվեց Լենինգրադի պաշարումը:

Հայ ժողովրդի զավակները Լենինգրադի ռազմաճակատում չտեսնված խիզախություն և հերոսություն կատարեցին, որոնք երբեք չեն մոռացվի:

Մ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

[1] Տե՛ս ՍՍՀՄ ՊՄԱ, ֆ. 221, ց. 1336, գ. 297, թ. 11:

[2] Նույն տեղը, ֆ. 217, ց. 1234, գ. 321, 183:

[3] ՀՍՍՀ ԳԱ ՀՊՊԿ արխիվ, ֆ. 253, գ. 35բ, թ. 5:

[4] Տե՛ս ՍՍՀՄ ռազմա-ծովային կենտրոնական արխիվ, ֆ. 88, գ. 460, թ. 225:

[5] ՀՍՍՀ ԳԱ, ՀՊՊԿ, ֆ. 125, գ. 3, թթ. 8—11:

[6] Տե՛ս ՍՍՀՄ ՊՄԱ, ֆ. 217, ց. 1234, գ. 329, թ. 74:

ցուցանիշի միջոցով. դա համախառն եկամըտի այն մասն է, որն անհրաժեշտ է կուտակել համախառն եկամտի 1 տոկոս աճ ստանալու նպատակով։ Համախառն եկամտի աճման նախատեսվող տեմպերի և արտադրական կուտակումների նորմայի կապը որոշվում է համախառն եկամտի աճի նախատեսվող տեմպի տոկոսը արտադրական կուտակման գործակցի վրա բաժանելու միջոցով։ Այսպես, եթե համախառն արտադրանքի միջին տարեկան աճի տեմպերը կազմել են 30, իսկ կուտակման նորման 15 տոկոս, ապա արտադրական կուտակման գործակիցը հավասար է 0,5 (15:30)-ի։

Կուտակման և սպառման ֆոնդերի ավելացման համար տարբեր ժամանակ կարող ենք ընդունել տարբեր հարաբերակցություն, պահպանելով մի պարտադիր պայման՝ արտադրության հետագա զարգացումը։

Վերջին տարիներս աշխատանքի երաշխավորված վարձատրության անցնելու կապակցությամբ զգալի թվով տնտեսություններ հազիվ ապահովեցին մինիմում վարձատրության մակարդակը և պակասեցրին կուտակման ֆոնդերին կատարվող մասհանումների չափը։ Կուտակման նկատմամբ վարձատրության ֆոնդի առաջանցիկ տեմպերը խիստ անհրաժեշտություն էր կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման և դրա հիման վրա արտադրության հետագա զարգացման համար։

Սակայն, քիչ չեն դեպքերը, երբ աշխատանքի բարձր վարձատրության մակարդակ ունենալով հանդերձ, որոշ տնտեսություններ միակողմանիորեն ավելացնում են միայն սպառման ֆոնդերը՝ անտեսելով կուտակման ֆոնդերին կատարվող մասհանումները։ Այդ է պատճառը, որ 1967 թ. անբաժանելի ֆոնդերին հատկացումներ չեն կատարել ՍՍՀՄ-ում 8000, իսկ ՀՍՍՀ-ում 237 կոլտնտեսություն, 1968 թ. համապատասխանաբար՝ 4.000 և 241։

Համախառն եկամուտների բաշխման վերաբերյալ կոլտնտեսության կանոնադրության մեջ որոշակիորեն նշված է, որ կոլտնտեսությունները համախառն եկամուտների բաշխման ժամանակ անհրաժեշտ համամասնություն պետք է պահպանեն կուտակման և սպառման միջև, սակայն կանոնադրության մեջ մտածված կերպով որոշակի հարաբերակցություն չի առաջարկվում, քանի որ առանձին գոտու, շրջանի, նույնիսկ կոլտնտեսության համար օպտիմալ հանդիսացող հարաբերակցությունը, աշխատանքի արտադրողականության զգալի տարբերությունների հետևանքով, չի կարելի երաշխավորել մյուսների համար։ Մինչդեռ, անհրաժեշտ արդյունքի հիմնական մասը կազմող աշխատանքի վարձատրությունը (աշխատուժի վերարտադրության տեսանկյունից) պահանջվում է պահպանել որոշակի մակարդակի վրա, իսկ դա հաճախ գերազանցում է նոր աշխատանքով ստեղծված համախառն եկամուտը։ Ուստի, իրավացի չեն այն տնտեսագետները, որոնք մեկ ընդհանուր տոկոսային հարաբերակցություն են առաջարկում կուտակման և սպառման միջև՝ անտեսելով աշխատանքի արտադրողականության ձեռք բերած մակարդակը։ Այս բացը վերացնելու համար նպատակահարմար է ըսպառման և կուտակման ֆոնդերի հարաբերակցությունը սահմանել ելնելով աշխատանքի արտադրողականության ձեռք բերած կոնկրետ մակարդակից։ Նպատակահարմար է, որ կուտակման և սպառման ֆոնդերը գոյանան ոչ թե հաջորդաբար, այլ զուգահեռ։

Այս խնդիրը լուծելու համար ճիշտ կլիներ համախառն եկամտի բաշխման ժամանակ սկըզբից առանձնացնել աշխատանքի վարձատրության չհարկվող մինիմումին հավասար գումարը (տարեկան միջին աշխատողի հաշվով $60 \times 12 = 720$), եթե տնտեսության միջոցները չեն բավարարում այդ մակարդակն ապահովելու համար, ապա պետք է փնտրել պատճառը։ Եթե միջոցների անբավարարությունն առաջացել է իր՝ տնտեսության մեղքով (հողը և մյուս արտադրամիջոցները վատ օգտագործելու, աշխատանքները ժամանակին չկատարելու և այլ պատճառների հետևանքով), ապա, մեր կարծիքով, մինչև այդ մակարդակն ապահովելու համար պահանջվող գումարները չպետք է երաշխավորվեն բանկային վարկի հաշվին, քանի որ այդպիսի տնտեսություններում ստեղծվում են խնամակալական տրամադրություններ, և հասարակության հարստության հիմքը հանդիսացող հողի և մյուս արտադրամիջոցների արդյունավետ օգտագործումը մնում է ստվերում և հետին պլանն է մղվում։ Եթե միջոցների անբավարարությունն առաջանում է ոչ տնտեսության մեղքով (օրինակ, հասարակությանն անհրաժեշտ, բայց տվյալ պայմաններում դեռևս թանկ նստող որոշ մթերքների արտադրության պլանավորման դեպքում), ապա տնտեսությունները պետք է ստանան անհրաժեշտ երկարատև վարկեր՝ այդ տարբերությունները լրացնելու համար, որը կնպաստի համախառն եկամտի ավելի արագ աճին։

Չհարկվող մինիմումն առանձնացնելուց հետո անհրաժեշտ է առանձնացնել միայն արտադրական նպատակների համար պահանջվող կուտակումները, առանց որի հնարավոր չէ հաջորդ տարվա արտադրական ֆինանսական պլանի կատարումը։ Շրջանառու արտադրաֆոնդերի ավելացումը պետք է կատարվի՝ ելնելով արտադրության ընդլայնման ծավալից և անհրաժեշտ նորմատիվների մեծությունից։ Իսկ հիմնական արտադրաֆոնդերում կատարվող կուտակումների մեծությունը որոշելու համար պետք է ելնել արտադրանքի ֆոնդատարությունից, պլանավորվող աճի տեմպերից և հիմնական արտադրաֆոնդերի բացարձակ մեծությունից։

Սակայն աշխատանքի վարձատրության մակարդակը ամսական 60 ռ. սահմաններում չպետք է սահմանափակվի, քանի որ վերջինս վարձատրության ոչ թե օպտիմալ չափն է, այլ սոսկ դրա մինիմում սահմանը, այդ պատճառով համախառն եկամտի մնացած մասից աշխատանքի վարձատրությունը պետք է հասցնել տվյալ գոտու (շրջանի) սովետական տնտեսությունների բանվորների վարձատրության միջին մակարդակին, իսկ եկամտահարկը նպատակահարմար է գանձել ո՛չ թե զուտ եկամտից, այլ առանձին աշխատողների աշխատավարձից՝ ելնելով սովխոզներում գոյություն ունեցող հարկման դրույթներից։ Այն դեպքում, երբ համախառն եկամտի մնացած մասը չի բավարարում այդ մակարդակին հասնելու և դրան զուգընթաց որոշ գումարներ էլ անհրաժեշտ են սպառման հասարակական ֆոնդերի ստեղծման համար, ապա պետք է ելնել դրանց օպտիմալ հարաբերակցությունից կամ դրանց որևէ մեկի առաջնահերթ լինելու նպատակահարմարությունից։

Եթե կոլտնտեսությունում այդ բոլոր հատկացումներից հետո մնում է զուտ եկամուտ, ապա այն նպատակահարմար է տրամադրել ըսպառման հասարակական ֆոնդերին, ինչպես նաև ոչ արտադրական՝ հիմնական ֆոնդերի ավելացմանը։ Դրա հիմնական մասը պետք է հատկացնել լրացուցիչ վարձատրության ֆոնդին։ Համախառն եկամտի բաշխման գոյություն ունեցող և առաջարկվող ձևերի տարբերության մասին վկայում են ստորև բերված տվյալները։

Համախառն եկամտի բաշխումը Արտաշատի շրջանի Այգեզարդի կոլտնտեսությունում 1967 թ.

| Ցուցանիշները | Բաշխման ներկա ձևով | | Առաջարկվող ձևով | |
|---|---|---|---|---|
| | հազար ռուբ. | % | հազար ռուբ. | % |
| Համախառն եկամուտը | 903,2 | 100 | 903,2 | 100 |
| Տարեկան միջին աշխատողների թիվը | 498 | — | 498 | — |
| Աշխատանքի վարձատրությունը (առաջարկվող ձևում մինչև 720 ռ.) | 814,2 | 90,1 | 358,5 | — |
| Հատկացում սոց. ապահովագրության ֆոնդին | 42,0 | 4,4 | 42,0 | 4,4 |
| Զուտ եկամուտ | 34,6 | 3,8 | — | — |
| Հատկացում անբաժանելի ֆոնդերին (արտադրական նպատակներով) | 17,3 | 1,9 | 46,5 | 5,2 |
| Եկամտահարկ | 14,7 | 1,6 | — | — |
| Աշխատանքի վարձատրության տարբերությունը սովխոզի բանվորներից (979 ռ.) | -- | — | 128,9 | — |
| Ընդամենը աշխատանքի վարձատրությունը | 814,2 | 90,1 | 487,4 | 54 |
| Մնում է զուտ եկամուտ | 16,0 | 1,8 | 327,3 | 36,3 |

Կոլտնտեսություններում տարեկան միջին աշխատողների հաշվով ամսական 60 ռ. գումարը հանելուց հետո առաջարկվող ձևում մնում է պայմանական զուտ եկամուտ 358,5 հազար ռուբլի, որից հաշվարկվում է արտադրաֆոնդերը լրացնելու համար անհրաժեշտ հատկացումներ՝ 46,5 հազար ռուբլի (համախառն արտադրանքի 10 տոկոս աճի համար), որից հետո հաշվարկվում են սոցիալական ապահովագրության համար կատարվող հատկացումները։

Զուտ եկամտի մնացած մասից լրացվում է աշխատանքի վարձատրության ֆոնդը մինչև սովխոզի բանվորի վարձատրության մակարդակը։ 1966—67 թթ. Արարատի շրջանի սովխոզի բանվորի աշխատավարձը կազմել է 979 ռ., հետևաբար այդ տարբերությունը կազմում է (979—720) 259 ռ., որն ամբողջ տնտեսությունում կկազմի ($498 \times 259$) 128,9 հազար ռուբլի։

Այսպիսով, աշխատանքի ընդհանուր վարձատրությունը կկազմի (358,5+128,9) 487,4 հազար ռուբլի։ Մնացած 327,3 հազար ռուբլի զուտ եկամուտը կարող է օգտագործվել ոչ արտադրական և մյուս սպառման հասարակական ֆոնդերի լրացման համար։

Առաջարկվող սխեմայի դեպքում բացառվում է կուտակման և սպառման ֆոնդերի ձևավորման գործում որևէ կամայականություն և դրանց որևէ մեկի անհարկի ուռճացում։ Իհարկե, այս

տիտեմը քարացած չէ, այն կարող է, արտադրության զարգացման շահերից ելնելով, որոշ չափով փոփոխվել: Այսպես, եթե տնտեսությունն ունի բավականաչափ չօգտագործված կապիտալ ներդրման միջոցներ, իսկ աշխատանքի վարձատրության մակարդակը ետ է մնում սովխոզների միջինից, ապա հնարավոր է, առաջին հերթին, հոգ տանել վարձատրության ֆոնդի լրացման մասին, իսկ կապիտալ ներդրումներ կատարել ամորտիզացիոն հատկացումների, կապիտալ ներդրումների մնացած միջոցների ու վարկերի հաշվին:

Ակամայից թվում է, որ աշխատանքի վարձատրության ֆոնդը պակասում է, բայց դա միայն թվում է, քանի որ մնացած 327,3 հազար ռուբլու հիմնական մասը նորից կարող է օգտագործվել վարձատրության համար, սակայն առավելապես լրացուցիչ վարձատրության կարգով:

Կոլտնտեսություններում կուտակումների վրա, բացի համախառն եկամտի մեծությունից և դրա բաշխման համամասնություններից, ազդում է նաև զուտ եկամտից կուտակման ու սպառման համար առանձնացվող միջոցների համամասնությունը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որքան բարձր է տնտեսությունների արտադրության եկամտաբերության մակարդակը, այնքան զուտ եկամտի մեջ մեծ է կուտակման մասի տեսակարար կշիռը:

Վերոհիշյալ գործոններից բացի, կուտակման վրա զգալի ազդեցություն է թողնում այդ նպատակով առանձնացված միջոցների ռացիոնալ օգտագործումը: Որպեսզի կուտակվի, այդ միջոցները պետք է վերածվեն իրենց իրական ձևին՝ մտնեն արտադրական սպառման մեջ:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այս գործում կան զգալի թերություններ: Օրինակ, միայն մասղաշից հիմնական հոտ փոխադրելու համար 1967 թ. էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի կոլտնտեսություններում ծախսվել են 1279,8 հազար ռուբլի կապիտալ ներդրման միջոցներ: Սակայն քանի որ հիմնական միջոցներում անասունները մուտք են արվում ո՛չ թե ինքնարժեքով, այլ մսամթերման պետական գնման գներով, ապա մուտք է եղել 1206,1 հազար ռուբլի կամ կապիտալ ներդրումներից այդ նպատակին չի ծառայել 73,7 հազարը: Այդպիսի թերություններ կան այլ բնագավառներում: Կուտակումների կարողությունների մեծությունն զգալիորեն պայմանավորված է նաև կոլտնտեսություններին վաճառվող արտադրամիջոցների արժեքով և կոլտնտեսություններին արտադրամիջոցների մատակարարման հնարավորություններով:

Կ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Գ. Ս. ՍԱՐԳՍՅԱՆ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03315 Պատվեր 66 Թղթի չափսը $70\times108^1/_{16}$, Տիրաժ 13000 Գինը՝ 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 9/II 1971 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հիշողություններ Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին: *Հինգ հատորով: Հատոր չորրորդ (1920—1924). Մ., Քաղհրատ, 1970, 479 էջ: Հատոր հինգերորդ—* Հիշողություններ արտասահմանյան ժամանակակիցներից: *Մ., Քաղհրատ, 1970, 558 էջ:*

ՎԱՎԻԼՈՎ Ս. Ի.— Լենինը և արդի ֆիզիկան: *Մ.,* «Наука» *հրատ., 1970, 71 էջ:*

Վ. Ի. Լենինի դիվանագիտական գործունեությունը: *Մ.,* «Международные отношения» *հրատ., 1970, 136 էջ: Օգնություն ժողովրդական համալսարանների ունկնդիրներին:*

ԲԵՐԻԿԵՏՈՎ Խ. Գ.— Լենինը և Կովկասը: *Նալչիկ, «Էլբրուս» հրատ., 1970, 254 էջ:*

Կոմինտերնի պատմությունից: *Մ.,* «Мысль» *հրատ., 1970, 292 էջ:*

Հայրենական մեծ պատերազմը: *Գիտա-մասսայական համառոտ ակնարկ: Մ., Քաղհրատ, 1970, 638 էջ (պատկերազարդ):*

Միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումները *(XVIII դարի 60—80-ական թթ.—1939 թ.): Մասն առաջին: Ուսումնական ձեռնարկ ՍՄԿԿ ԿԿ առընթեր հեռակա բարձր. կուս. դպրոցների և քառամյա բարձր. կուս. դպրոցների ունկնդիրների համար: Մ.,* «Мысль» *հրատ., 1970, 333 էջ:*

ՍԱՄՍՈՆՈՎ Ռ. Մ.— Սոցիալական հոգեբանությունը և գաղափարախոսությունը *(Համոզմունքի վերածվող մի քանի գաղափարների սոցիալ-հոգեբանական մեխանիզմները): «Հայաստան» հրատ., 1970, 220 էջ:*

ՍԼԵՊՈՎ Լ. Ա.— Լենինյան կուսակցությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի կուսակցություն է: *Մ., «Քաղհրատ», 1970, 294 էջ:*

ԲՈՐԻՍՈՎ Պ. Մ.— Կարո՞ղ է արդյոք մարդը փոփոխել կլիման: *Գիտա-մասսայական մատենաշար: Մ.,* «Наука» *հրատ., 1970, 192 էջ:*

ԿԱՊԵԼԻՆՍԿԻ ՅՈՒ. Ն.— ՍՍՀՄ առևտուրը կապիտալիստական երկրների հետ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: *Մ.,* «Международные отношения» *հրատ., 1970, 159 էջ:*

ԳՈԼՈՒԲԿՈՎ Դ. Ն.— Բարի արև: *Պատմվածք նկարիչ Մարտիրոս Սարյանի մասին: Մ.,* «Детская литература» *հրատ., 1970, 134 էջ:*

ԱՅՎԱԶՅԱՆ Ս. Մ.— Գեոֆիզիկայի բաց հատվածները: *«Հայաստան» հրատ., 1970, 127 էջ:*

ՄԱԼԽԱՍՅԱՆ Է. Գ.— Հայաստանը հանգած հրաբուխների երկիր: *«Գիտելիք» ընկ. հրատ., 1970, 27 էջ:*

ԳՈՅԱՆ Գ. Հ.— Ո՞րն է ազգային թատրոնը: *ՍՍՀՄ ժողովուրդների թատերական մշակույթի զարգացման հարցեր: «Հայաստան» հրատ., 1970, 291 էջ:*

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ— Մատյան ողբերգության: *Սաղկաքաղ: Թարգմ. Վ. Գևորգյանի: «Հայաստան» հրատ., 1970, 127 էջ:*

ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս. Բ.— Իմ էջը: «Художественная литература» *հրատ., 1970, 271 էջ:*

Լեզվի կուլտուրայի արդիական խնդիրները: *(Հոդվածների ժողովածու): Մ.,* «Наука» *հրատ., 1970, 496 էջ:*

ՂՈՒԿԱՍՅԱՆ Ջ. Գ.— Գրականության կուսակցականության լենինյան ուսմունքը և հայ գրականությունը: *Ե., ԳԱ հրատ., 1970, 343 էջ:*

*Լուսաբանված են գրականության կուսակցականության մարքսիստական ըմբռնման հարցերը, ցույց է տրված լենինյան գեղագիտական ժառանգության, մասնավորապես,* Վ. Ի. Լենինի Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն *հոդվածի դրույթների նշանակությունը մարքսիստական գեղագիտության համար:*

ԳԻՆԸ 25 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՈՒՆԱՎՈՐ ՍՏԵՐԵՈՏԻՊ ՌԵՆՏԳԵՆ

*Լեհաստանի ռազմա-բժշկական ակադեմիայում մշակվել է ռենտգենյան ճառագայթային գունավոր արտացոլման ցիտարկման և նկարահանման տեխնիկան։*

*Ստերեոէֆեկտի ստացման համար անհրաժեշտ է երկու նկարահանում. մեկը՝ կանաչ, մյուսը՝ կարմիր ժապավենի վրա։*

*Այնուհետև, եթե երկու լուսանկարները՝ անկյունային դիրքով, իրար դիմաց տեղադրենք ապարատում՝ «Նեգատոսկոպում», որը գտնվում է լուսանկարչատուփերում, ապա երկու ռենտգենյան պատկերները կարտացոլվեն լուսանկարչատուփերի միջև տեղակայված կիսաթափանցիկ ապակյա սկավառակի վրա։ Դրա շնորհիվ կստացվի երեք անգամ մեծ տարածական լուսապատկեր, որն օգնում է վիրաբույժին՝ ճշգրիտ որոշելու հետազոտվող օբյեկտի խորությունը։*

## ԿԱՆԽՈՒՄ Է ՈՒՂԵՂԻ ՀՅՈՒՍՎԱԾՔՆԵՐԻ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

*Թթվածնի անբավարարության հետևանքով ուղեղի հյուսվածքների քայքայումը կանխելու համար վիրաբույժներն իջեցնում են հիվանդի գլխի ջերմաստիճանը։ Այդ նպատակով գործադրվող նախկին եղանակը պրիմիտիվ էր, հնացած. հիվանդի գլուխը պատում էին սառցափրփուրով, որն ուներ մի շարք թերություններ։*

*Այժմ գործադրվում է էլեկտրոնային սառնարանը։ Դա մի սաղավարտ է՝ կրկնակի պատերով, որոնց միջև տեղադրված է ջերմաէլեկտրական մարտկոց։*

*Սաղավարտի արտաքին պատի և մեմբրանի միջև եղած սառը հեղուկի մեջ կան պաղ բյուրեղներ։ Մեմբրանի առաձգականությունը և սառնություն հաղորդող հեղուկն ապարատը հարմարավետ են դարձնում թե՛ մեծահասակների և թե՛ փոքրերի համար։*

## ՇԻՖԵՐ ԱՊԱԿՈՒՑ

*Վերջերս Գուսեի Ջերժինսկու անվան գործարանը թողարկեց ապակյա շիֆերի փորձնական մասնաքանակը։ Այս նոր շինանյութը ասբեստից և ցեմենտից ստացվող գորշ շիֆերից տարբերվում է իր վառ կանաչ, հաճելի գույնով։*

## ՌՈԲՈՏ-ՋՐԱՍՈՒԶԱԿԸ

*Ֆրանսիական ինժեներներն ստեղծել են ռոբոտ-ջրասուզակ՝ ծովի հատակում կատարվող գիտահետազոտական աշխատանքների համար։ Այն կառավարվում է նավի հրամանատարական կետից։*

*Ռոբոտը կարող է սուզվել ծովը մինչև 500 մետր խորությամբ, լուսանկարել, հաղորդել շրջապատի առարկաների հեռուստապատկերը և բարձրացնել մոտ 70 կիլոգրամ ծանրություն։*

## ՇԻՆԱՐԱՐ ՄԵՔԵՆԱ

*Արևմտա-գերմանական «Ռիխարդ Զիպել» ֆիրման ստեղծել է շենքերի փորձնական մեքենա «ավտոմատ» կառուցման համար։ Դրա օգնությամբ, ինչպես վկայում են մեքենայի կոնստրուկտորները, 24 ժամվա ընթացքում կարելի է կառուցել շենքի կմախքը։*

*Շինարարությունը կատարվում է հետևյալ սկզբունքով. կենտրոնում գտնվող մեխանիզմը երկարում է սինթետիկ փրփուր մատակարարող «ձեռքը»։ Շարժվելով շրջակայքում, մեխանիզմը լցնում է շաղախը պատի նախապես պատրաստված ջրատարի, կոյուղու և էլեկտրացանցի օգնությամբ։ Սինթետիկ փրփուրի կարծրանալուց հետո կոնստրուկցիայի հիմնական տարրերում կարելի է «հատել» պատուհանները և դռները։ Այժմ այդ ֆիրման նման եղանակով սիլոսի աշտարակներ է կառուցում Համբուրգի գյուղատնտեսական ֆիրմաներից մեկի համար։*

## ԾԵՐԱՑՈՂ ՈՒՂԵՂԸ

*Զմարզված ուղեղը համեմատաբար ավելի վաղ է ծերանում, քան մշտապես ծանրաբեռնված ուղեղը։ Որքան շուտ են սկսվում հոգևոր «մարզումները» և որքան երկարատև են լինում, այնքան նվազում է ուղեղի բջիջների ծերացման վտանգը։ Նման հետևության են հանգել Վիեննայի համալսարանի մանկավարժության ինստիտուտի աշխատակիցները, որոնք երկար ժամանակ զբաղվել են այդ պրոբլեմով։ Նրանք գտնում են, որ ծեր հասակում թուլանում է միայն ընկալման արագությունը, բայց ոչ յուրացման ունակությունը և ոչ էլ բանականությունը։*